## Մեր հեղինակներին

«Լենինյան ուղիով» ամսագրի խմբագրությունը խնդրում է հոդվածներ ուղարկելիս ճշտորեն պահպանել հետևյալ կանոնները. տեսական բնույթի հոդվածները՝ 18 մեքենագրական էջից ոչ ավելի, պրակտիկ աշխատանքը և առաջավոր փորձը լուսաբանող հոդվածները՝ 8—10, նամակներն ու թղթակցությունները՝ 4—6, գրախոսականները և մամուլի տեսությունները՝ 6—8 էջ։

Անդրկովկասի ու Հայաստանի հեղափոխական շարժման թեմաներով գրված և Հայաստանում մարքսիզմ-լենինիզմի տարածմանը նվիրված հոդվածները պետք է ունենան ռուսերեն ամփոփում՝ 8 տողի չափով։

Հոդվածները պետք է մեքենագրված լինեն երկու ինտերվալով, երկու օրինակից, հեղինակի կողմից ստորագրված, նշելով հեղինակի լրիվ անունը, հայրանունը և ազգանունը, հասցեն, աշխատանքի վայրն ու հեռախոսի համարը։ Խմբագրությանը հանձնված հոդվածներից մեկը պետք է լինի մեքենագրվածի առաջին օրինակը։ Հոդվածում անհրաժեշտ է ցույց տալ մեջբերումների և թվական տվյալների աղբյուրները։

Մարքսիզմ-լենինիզմի կլասիկների, կուսակցության և սովետական պետության ղեկավարների, միջազգային բանվորական ու կոմունիստական շարժման ականավոր գործիչների աշխատություններից, պաշտոնական փաստաթղթերի ժողովածուներից վերցված քաղվածքները, վկայակոչումները պետք է լինեն երկերի հատորների կամ աշխատությունների հայերեն, իսկ եթե այդպիսիք չկան՝ ռուսերեն վերջին հրատարակությունից։

Տեսական և գիտական բնույթի հոդվածների վերջում պարտադիր է նշել օգտագործված աղբյուրների համառոտ ցանկը։

Սույն պահանջները խախտողների հոդվածները չեն տպագրվի։ Ներկայացված հոդվածն անհետևանք կմնա, եթե այն ամբողջովին կամ հատվածներով հրապարակված լինի մամուլի և ինֆորմացիայի որևէ օրգանում։

Խմբագրությանն ուղարկված հոդվածները չեն վերադարձվում։


# ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ

10

ՀՈԿՏԵՄԲԵՐ, 1982
ՀՐԱՏԱՐԱԿՎՈՒՄ Է 1922 Թ.

ИЗДАЕТСЯ С 1922 г.
Выходит одни раз в месяц
на армянском языке

ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ ԿԵՆՏԿՈՄԻ ՏԵՍԱԿԱՆ-ՔԱՂԱՔԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

«ЛЕНИНЯН УГИОВ» («По ленинскому пути») — теоретический
и политический журнал ЦК КП Армении


## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ




ԵՐԵՎԱՆ ● ՀԿԿ ԿԵՆՏԿՈՄԻ ՀՐԱՏԱՐԱԿՉՈՒԹՅՈՒՆ

СОДЕРЖАНИЕ





# ԸՆԿԵՐ Լ. Ի. ԲՐԵԺՆԵՎԻ ՃԱՌԸ

## ԱԴՐԲԵՋԱՆԱԿԱՆ ՍՍՀ-ԻՆ ԼԵՆԻՆԻ ՇՔԱՆՇԱՆԻ ՀԱՆՁՆՄԱՆԸ ՆՎԻՐՎԱԾ ՀԱՆԴԻՍԱՎՈՐ ՆԻՍՏՈՒՄ

### 1982 թվականի սեպտեմբերի 26-ին

Թանկագի՛ն ընկեր Ալիև:

Թանկագի՛ն ընկերներ:

Այսօր ես պետք է հանրապետությանը հանձնեմ հայրենիքի բարձր պարգևը՝ Լենինի շքանշանը: Ինչպես հայտնի է, Ադրբեջանը այդ պարգևին է արժանացել արդյունաբերության և գյուղատնտեսության արտադրանքի արտադրության տասներորդ հնգամյակի առաջադրանքների կատարման գործում ձեռք բերած մեծ նվաճումների համար: **(Ծափահարություններ):**

Այժմ Ադրբեջանական ՍՍՀ դրոշի վրա Հոկտեմբերյան հեղափոխության և Ժողովուրդների բարեկամության շքանշանների հետ կշողշողան Լենինի երեք շքանշանները: **(Ծափահարություններ):** Դա ադրբեջանական ժողովրդի աշխատանքային հերոսության, լենինյան անմահ գործին նրա հավատարմության վառ վկայությունն է: **(Երկարատև ծափահարություններ):**

Ադրբեջանի փառավոր շատ գործերից առանձնապես կկամենայի նշել նրա հարաճուն ավանդը երկրի էկոնոմիկայում: Հանրապետությունն ամեն տարի կատարում և գերակատարում է տնտեսական ու սոցիալական զարգացման պետական պլանները և սոցիալիստական բարձր պարտավորությունները, ավելացնում հանրային արտադրության ծավալները: Դա, ինչպես գիտեք, բարձր գնահատվեց ՍՄԿԿ XXVI համագումարում: **(Ծափահարություններ):**

Արդյունաբերության և գյուղատնտեսության բնագավառում անցյալ հնգամյակը կատարվեց չորս տարի և երկուսուկես ամսում: Այդ ճյուղերի գծով ժամկետից շուտ կատարվեց 1981 թվականի պլանը: Ժամանակին շահագործման հանձնվեցին էլեկտրաէներգետիկայի, նավթավերամշակման, մեքենաշինական, թեթև և սննդի արդյունաբերության կարևոր օբյեկտները: Ձեզ մոտ գործերը հաջող են նաև ընթացիկ տարում՝ 1982 թվականին: **(Ծափահարություններ):**

Հանրապետության աշխատավորները շատ բան են անում երկրի պարենային ծրագրի կատարման համար: Նրանք անցյալ տարի պետությանը հանձնեցին ավելի քան մեկ միլիոն տոննա բամբակ, ավելի քան մեկ միլիոն 600 հազար տոննա խաղող, 640 հազար տոննա բանջարեղեն: **(Ծափահարություններ):**

Մեծ գոհունակությամբ կուզենայի նշել, որ Ադրբեջանը կրկին միութենական հանրապետություններից առաջինը կատարեց պետությանը հացահատիկ վաճառելու սոցիալիստական պարտավորությունները: **(Ծափահարություններ):** Ընդունեցեք, թանկագին ընկերնե՛ր, կուսակցության Կենտրո-

նական կոմիտեի և կառավարության սրտագին շնորհակալությունը աշխատանքային մեծ հաղթանակի համար: **(Երկարատև ծափահարություններ):**

Ո՞րն է այդ հաջողությունների բանալին: Ամենից առաջ այն, որ Ադրբեջանի կոմկուսի Կենտրոնական կոմիտեն, նրա բյուրոն՝ մեր հարգելի ընկեր Հեյդար Ալիևիչ Ալիևի գլխավորությամբ, սկզբունքորեն, հետևողականորեն և եռանդուն կերպով կենսագործում է կուսակցության գիծը: **(Ծափահարություններ):** Այն, որ հանրապետության կուսակցական, սովետական, արհմիութենական, կոմերիտական կազմակերպությունները, տնտեսական մարմինները գործում են ներդաշնակորեն և նպատակասլաց, ինչպես ասում են, միաբան: **(Ծափահարություններ):**

Նրանք կարողացան աշխատավորներին պայքարի հանել բոլոր ճյուղերում և բոլոր ցուցանիշներով պլանների կատարման համար, կադրերին դաստիարակում են հանձնարարված գործի նկատմամբ բարձր պատասխանատվության ոգով: **(Ծափահարություններ):** Էկոնոմիկայի զարգացման խնդիրները լուծվում են արտադրության արդյունավետության հետագա բարձրացման ամուր հիմքի վրա, ի հաշիվ գիտատեխնիկական առաջընթացի արագացման, տնտեսավարման ոճի ու մեթոդների բարելավման: **(Ծափահարություններ):**

Դա ճիշտ, գործնական մոտեցում է, կուսակցական հմուտ ղեկավարություն, աշխատանքի նկատմամբ ստեղծագործական վերաբերմունք, քննադատության և ինքնաքննադատության զարգացում: Ձեր փորձը մի անգամ ևս հաստատում է, թե որքան կարևոր են կատարման վերահսկողությունն ու ստուգումը, կարգապահությունն ու կազմակերպվածությունը, աշխատավորական կոլեկտիվների նախաձեռնության վրա հենվելը, կադրային աշխատանքի մշտական կատարելագործումը, բարձր պահանջկոտությունը:

Մենք գոհունակությամբ նշում ենք, որ հանրապետությունում տիրում է աշխատանքային լավ տրամադրություն, բարոյաքաղաքական առողջ մթնոլորտ, ինտերնացիոնալիզմի և ժողովուրդների եղբայրության ոգի: **(Երկարատև ծափահարություններ):**

Չորս տարի առաջ, ելույթ ունենալով Բաքվում կայացած հանդիսությունների ժամանակ, ես մի շարք դիտողություններ և ցանկություններ արտահայտեցի: Հիշում եմ, այն ժամանակ խոսվեց արտադրանքի որակի, սպասարկման ոլորտում եղած թերությունների, աշխատանքային ռեսուրսները ավելի լավ օգտագործելու մասին: Այսօր կարող եմ գոհունակությամբ նշել, որ հանրապետական կուսակցական կազմակերպությունը պատշաճ հետևություններ է արել քննադատությունից, շտկել է դրությունը մի շարք տեղամասերում, թեև դեռ ոչ բոլոր հարցերն են լուծված:

Քննադատությանը գործով պատասխանելը կուսակցական բարձր պատասխանատվության, կոմունիստների կողմից կուսակցության և ժողովրդի հանդեպ ունեցած իրենց պարտքի ճիշտ ըմբռնման դրսևորումն է: **(Ծափահարություններ):**

Օգտվելով նոր հանդիպման առիթից, կկամենայի, ընկերնե՛ր, ձեր ուշադրությունը հրավիրել ևս մի քանի հարցերի վրա, որոնք հարկավոր է ավելի եռանդուն կերպով լուծել:

Ադրբեջանը նավթի՝ երկրում հնագույն մատակարարն է: Նա նավթի հանույթի հսկայական փորձ է կուտակել, որն այժմ օգտագործվում է նաև այլ վայրերում: Այսօր ևս հանրապետությունը տալիս է տարեկան ավելի քան 14 միլիոն տոննա նավթ: Ընդ որում դրա երկու երրորդը արդյունահանվում է Կասպից ծովի հատակից:

Սակայն վերջին տարիներս նկատվել է նավթի հանույթի նվազեցման միտում: Իհարկե, աշխատանքի պայմանները զգալիորեն բարդացել են: Հարկ է լինում թափանցել մեծ խորություններ, գնալ դեպի ծովի խորքերը: Դա պահանջում է տեխնիկական ու կազմակերպական նոր լուծումներ: Եվ, կարծում եմ, որ դրանք մատչելի են Ադրբեջանի նավթագործներին, որոնք նո-



րարարության փառավոր ավանդույթներ ունեն: **(Ծափահարություններ):** Կարելի է և պետք է լուծել ոչ միայն նավթի հանույթի կայունացման, այլև այդ հանույթի ավելացման խնդիրները: **(Ծափահարություններ):**

Այժմ ավարտման մոտ է երկրի էներգետիկ ծրագրի մշակումը: Նոր ջանքեր կպահանջվեն բոլոր հանրապետությունների, այդ թվում նաև Ադրբեջանի, էներգետիկան ամրապնդելու գործում: Դա ընդգրկում է նավթի ու գազի արդյունահանության և նավթավերամշակման արդյունաբերության տեխնիկական վերազինումը, էներգետիկ նոր կարողությունների գործարկումը, էներգառեսուրսների խնայողության խստագույն ռեժիմը: Այս կապակցությամբ հատկապես կարևոր է Ադրբեջանական և Ծամխորի էլեկտրակայանների, ինչպես նաև նավթի ծովային հանույթի խորջրյա հիմնախարիսխների գործարանի կառուցումը:

Ամբողջությամբ վերցրած, ձեր հանրապետության կուսակցական կազմակերպություններն ուժեղացրել են վերահսկողությունը ժողովրդատնտեսական պլանների կատարման նկատմամբ: Բայց ահա բնակարանային շինարարության մեջ այդ վերահսկողությունը դեռ բավականաչափ արդյունավետ չէ: Բնակարանները, դպրոցները, մանկապարտեզները, սոցիալական նշանակության մյուս օբյեկտները հաճախ ժամանակին չեն գործարկվում: Բավականաչափ բարձր չէ նաև այդ օբյեկտների կառուցման որակը: Դա, ընկերնե՛ր, բանի նման չէ: Մարդկանց կարիքները մեզ մոտ միշտ պետք է առաջին պլանի վրա լինեն: **(Երկարատև ծափահարություններ):**

Անհրաժեշտ է նաև ամենախիստ մոտեցումը ցուցաբերել բնակելի տարածության բաշխման նկատմամբ: Այս հարցերի վերաբերյալ ՍՄԿԿ Կենտկոմում շատ գանգատներ են ստացվում, այդ թվում նաև Ադրբեջանից: Եվ ճիշտ է վարվել կուսակցության Բաքվի քաղկոմը, սկզբունքային կուսակցական գնահատական տալով ազատված բնակարանների բնակեցման սահմանված կարգի խախտումների դեպքերին: **(Ծափահարություններ):**

Պակաս կարևոր չէ նաև այսպիսի հարց: Հանրապետությունում բուսաբուծության արտադրանքի ամենամյա աճի պայմաններում մսի, կաթի, ձվի և մյուս սննդամթերքների արտադրությունը մեծացնելու հնարավորությունները դեռևս անբավարար են օգտագործվում: Ռեզերվներն են՝ անասնապահության արմատական բարելավումը, տոհմային աշխատանքի, կերարտադրության կազմակերպումը: Ադրբեջանի գյուղատնտեսության աշխատողները կարող են էապես ավելացնել կարտոֆիլի արտադրությունը, որպեսզի դրանով լիովին բավարարեն բնակչության պահանջմունքները:

Այս տարին Անդրկովկասի և ողջ երկրի համար հեշտ տարի չէր: Գյուղի աշխատավորները, մեր ողջ ժողովուրդը լարված պայքար են մղում բերքի համար: Կարևոր է պահպանել աճեցված հացահատիկի, բանջարեղենի, մրգերի, կարտոֆիլի յուրաքանչյուր կիլոգրամը, դաշտերի ամբողջ արտադրանքը հասցնել սպառողին: Դրա մասին պետք է հոգան կուսակցական, սովետական, տնտեսական բոլոր կազմակերպությունները: **(Երկարատև ծափահարություններ):**

Գտնվելով այստեղ, Բաքվում, ես չեմ կարող մի քանի խոսք չասել մարդկանց առողջության ամրապնդման համար Կասպիականի ծովափի, ինչպես նաև Ադրբեջանի այլ շրջանների շատ հարուստ հնարավորությունների մասին: Բարեբեր Կասպից ծովը, հարավային արևը, Ադրբեջանի լեռներն ու հովիտները պետք է կանչեն մարդկանց՝ հանգստանալու և բուժվելու:

Ինձ հայտնի է, որ հանրապետության կոմկուսի Կենտկոմը նախաձեռնություն է հանդես բերել այդ հնարավորությունների ուսումնասիրման գործում: Հարկ կլիներ այդ գործին պատշաճ թափ հաղորդել, մտածել ընդհանուր միութենական ևս մի հարավային կուրորտային գոտի ստեղծելու մասին: Հարկ կլիներ, որ այդ գործին միանար թե՛ ՀԱՄԿԽ-ն, թե՛ ՍՍՀՄ առողջապահության մինիստրությունը: **(Երկարատև ծափահարություններ):**

Ընկերնե՛ր:

Մենք առիթ ենք ունեցել արդեն բազմիցս խոսելու արտադրական, պետական, կուսակցական կարգապահության կարևոր նշանակության մասին:

Այսօր կկամենայի հատկապես ասել բարոյական կարգապահության մասին: Մանավանդ որ հենց Ադրբեջանում վերջին ժամանակներս քիչ բան չի արվել սոցիալիստական բարոյականության հակոտնյաների դեմ պայքարելու, մարդկանց դաստիարակությունը բարելավելու ասպարեզում, կուտակվել է լավ փորձ: **(Ծափահարություններ):**

Սոցիալիստական հասարակության բարոյական հիմքերը խարսխվում են մարդու նկատմամբ հոգատարության ու վստահության վրա: Սակայն գաղտնիք չէ, որ դեռ հանդիպում են մարդիկ, որոնք այդ վստահությունն օգտագործում են ի վնաս հասարակության, թույլ են տալիս անձնական անհամեստություն և նույնիսկ կանգնում պետությանը խաբելու՝ աչքակապության, կաշառակերության, սոցիալիստական սեփականության հափշտակման ուղու վրա:

Մեր բարոյականությունը, մեր սովետական օրենքները ոտնահարողների նկատմամբ անհանդուրժողությամբ պետք է տոգորված լինի ողջ հասարակական կյանքը: Հասարակական բարոյականության և իրավունքի նորմերի պահպանումը պետք է լինի ամեն մի սովետական մարդու բնական պահանջմունքը, ներքին անառարկելի օրենք: Դա է դաստիարակչական աշխատանքի գլխավոր խնդիրներից մեկը: Այստեղ գործունեության կարևոր ասպարեզ ունեն կուսակցական և սովետական կազմակերպությունները, արհմիությունները, կոմերիտմիությունը, մամուլը, հեռուստատեսությունը և ռադիոն: **(Ծափահարություններ):**

Դաստիարակչական մեծ ուժ ունի արվեստը, այդ թվում կինոն և թատրոնը: Սակայն այդ ուժը դեռ բնավ էլ լիակատար չափով չի օգտագործվում: Ադրբեջանում, ի դեպ, կան հասարակական կյանքի մեջ կինոարվեստի, թատրոնի, գրականության այդպիսի մարտական «ներխուժման» լավ օրինակներ: **(Ծափահարություններ):** Կարևոր է բոլոր ուղղություններով ակտիվ պայքար մղել այն ամենի դեմ, ինչը խանգարում է մեր առաջընթացին: **(Ծափահարություններ):**

Ընկերնե՛ր, այժմ կուսակցության մեջ սկսվել է հերթական հաշվետու-ընտրական կամպանիան: Կկամենայի ցանկանալ, որ թե՛ ձեր հանրապետությունում, թե՛ ամբողջ երկրում այն անցնի գործարարության և կոնկրետության, ձեռք բերված արդյունքների քննադատական գնահատման, մեր առջև ծառացած մեծ խնդիրների լուծման համար կուսակցության և ժողովրդի ուժերի մոբիլիզացման նշանաբանով: **(Ծափահարություններ):**

Եթե հաշվետու-ընտրական կամպանիան անցնի այդ ոգով,— իսկ ես վստահ եմ, որ այդպես էլ կլինի,— ապա այն նոր ազդակ կտա հնգամյակի առաջադրանքների կատարման, ՍՍՀՄ կազմավորման 60-ամյակի արժանավայել դիմավորման համար մղվող պայքարին: **(Երկարատև ծափահարություններ):**

Ընկերնե՛ր: Արդյունաբերական և գյուղատնտեսական արտադրանքի արտադրության մեծացման բնագավառում Ադրբեջանի, ինչպես և մեր երկրի մյուս բոլոր հանրապետությունների աշխատավորների հաջողությունները լավ ավանդ են ժողովրդի կյանքի անշեղ բարելավման՝ կուսակցության պլանների, մեր կոմունիստական շինարարության պլանների իրականացման գործում: **(Ծափահարություններ):** Դա միևնույն ժամանակ միջազգային ասպարեզում մեր հայրենիքի կշռի լուրջ ամրապնդում է, աջակցություն միջուկային հրդեհի սպառնալիքից մարդկությանն ազատագրելու մեր պայքարին, աշխարհի կայուն խաղաղության համար մղվող պայքարին: **(Երկարատև ծափահարություններ):**

Վերջին ժամանակներս ես արդեն բազմիցս առիթ եմ ունեցել արտահայտվելու արտաքին քաղաքականության հարցերի շուրջը: **Վերջին անգամ՝** Հնդկաստանի պրեմիեր մինիստր տիկին Ինդիրա Գանդիի Մոսկվայում գտնվելու կապակցությամբ: Ուստի այժմ ես կանդրադառնամ միայն մի քանի առանձին մոմենտների:



Ամենից առաջ ուզում եմ ասել, որ Մոսկվայում տեղի ունեցած սովետա-հնդկական բարձր մակարդակի բանակցությունները մեր մեջ անկեղծ գոհունակության զգացում են առաջացնում: Դրանք վերստին հավաստեցին, որ ՍՍՀՄ-ի և Հնդկաստանի բարեկամությունն ու համագործակցությունը հենվում են ամուր հիմքի վրա և լավ հեռանկարներ ունեն: **(Ծափահարություններ):** Նոր քայլեր արվեցին այդ համագործակցության զարգացման ասպարեզում:

Երկու կողմերը հնարավորություն ունեցան վերստին նշելու միջազգային դրության արմատական հարցերում, հատկապես խաղաղության պահպանման, նոր համաշխարհային պատերազմի կանխման հարցերում իրենց հայացքների զուգադիպությունը կամ մոտիկությունը:

Հնդկաստանի պրեմիեր մինիստրի հետ վարված բանակցություններում մենք դարձյալ արտահայտեցինք մեր դրական գնահատականը չմիանալու շարժման՝ որպես միջազգային իրադրության առողջացման օգտին կարևոր գործոնի, և այդ շարժման մեջ Հնդկաստանի դերի վերաբերյալ:

Սովետական Միությունն առհասարակ հանդես է գալիս հօգուտ այն բանի, որ միջազգային գործերում բարձրացվի այն պետությունների դերը, որոնք ազատագրվել են գաղութային կամ կիսագաղութային լծից, կանգնել անկախության և պրոգրեսի ուղու վրա: Մենք համոզված ենք, որ այդ երկրների քաղաքականությունը բարերար ներգործություն կարող է ունենալ աշխարհի իրադրության վրա: **(Ծափահարություններ):**

Ուստի բնական է, որ Սովետական Միությունը, ինչպես և մյուս սոցիալիստական երկրները, ակտիվ կողմնակից է Ասիայի, Աֆրիկայի, Լատինական Ամերիկայի երկրների խաղաղ համագործակցության, միասնության ու համախմբվածության ամրապնդման, նրանց այնպիսի կազմակերպությունների հեղինակության և արդյունավետության ամրապնդման, ինչպիսիք են աֆրիկյան միասնության կազմակերպությունը, արաբական երկրների լիգան և այլն: **(Ծափահարություններ):**

Միևնույն ժամանակ իմպերիալիզմը իր նեոգաղութատիրական քաղաքականությամբ հանդիսանում է ազատագրված երկրների միասնության բացահայտ հակառակորդը: Պատահական չէ, որ իմպերիալիստներն ամեն ինչ անում են, որպեսզի խորացնեն պառակտումը արաբական երկրների շարքերում, թուլացնեն աֆրիկյան միասնության կազմակերպության հեղինակությունն ու ազդեցությունը, ձգտում են ամերիկյան պետությունների կազմակերպությունն օգտագործել հօգուտ Արևմտյան տերությունների գաղութատիրական նկրտումների, ինչպես դա վերջերս ակնառու կերպով ցույց տվին Հարավային Ատլանտիկայում տեղի ունեցած իրադարձությունները:

Դուք գիտեք, ընկերնե՛ր, որ Սովետական Միությունը երկար տարիներ և նույնիսկ տասնամյակներ շարունակ ձգտում է հասնել միջազգային լարվածության թուլացման: Մեզ համար լարվածության թուլացումը շատ լայն հասկացություն է: Դա, ամենից առաջ, պետությունների ու նրանց ղեկավարների ընդհանուր միտումն է ոչ թե դեպի ռազմական պատրաստությունները և թշնամանքը ուրիշ պետությունների նկատմամբ, այլ խաղաղ համագործակցությունը նրանց հետ: Լարվածության թուլացումը նշանակում է նորմալ հաղորդակցում երկրների միջև, ժողովուրդների միջև, միջազգային իրավունքի նորմաների բարեխիղճ կատարում, յուրաքանչյուր երկրի սուվերենության հարգում և միմյանց ներքին գործերին միջամտության բացառում: Դա, վերջապես, նշանակում է պրակտիկ գործերով մշտապես ձգտել նպաստել աշխարհը համակած՝ սպառազինությունների մրցավազքի սանձահարմանը, ձգտել ամրապնդել անվտանգությունը՝ արդարացի և երկուստեք հիմունքներով փոխադարձ վստահության ատիճանական խորացման հիման վրա:

Այսպես ենք մենք հասկանում լարվածության թուլացումը, լարվածության այսպիսի թուլացման ենք մենք ձգտում: **Փաստորեն** խոսքը վերաբերում է մարդկության խաղաղ ապագայի ապահովմանը: **(Երկարատև ծափահարություններ):**

Մենք բնավ չենք կարծում, թե լարվածության թուլացումը կարող է և պետք է լինի ինչ-որ առանձին աշխարհագրական գոտու, աշխարհի մեկ շրջանի մենաշնորհը: Այլ բան է, որ մի շարք պատմական պատճառների բերումով մի քանի ռեգիոններում այն արդեն ավելի խոր արմատներ է գցել, քան այլ ռեգիոններում՝ օրինակ, Եվրոպայում: Բայց, դրա ամրապնդման հնարավորություններ կան ամենուրեք: Եվ դրանք անհրաժեշտ է ակտիվորեն օգտագործել:

Ամերիկայի Միացյալ Նահանգների հետ հարաբերությունները կարգավորելու, ինչպես ստրատեգիական, նույնպես և միջին հեռավորության միջուկային զենքի սահմանափակման ու կրճատման հարցերում արդարացի, փոխադարձաբար ընդունելի համաձայնությունների հասնելու մեր փորձերի մասին ես այստեղ չեմ խոսի, դուք դրանց մասին լավ գիտեք:

Եթե խոսելու լինենք Ասիայի մասին, ապա այստեղ մենք շատ կարևոր գործ կհամարեինք ՍՍՀՄ-ի և Չինական ժողովրդական հանրապետության հարաբերությունների նորմալացումը, դրանց ստահճանական բարվոքումը, ես կասեի, ողջամտության, փոխադարձ հարգանքի և փոխադարձ շահավետության հիման վրա: Ի լրումն բարեկամության ու համագործակցության այն հարաբերությունների, որպիսիք արդեն գոյություն ունեն մեր և մի շարք ասիական պետությունների միջև, դա լավ ավանդ կլիներ Ասիայի, ինչպես և ողջ աշխարհի խաղաղության և կայունության հիմքերի ամրապնդման գործում: **(Ծափահարություններ):**

Եվրոպայում լարվածության թուլացման պրոցեսի ամրապնդման ուղղությամբ առավել տեղին, մերձավորագույն քայլը, մեր կարծիքով, կլիներ 35 պետությունների Մադրիդի հանդիպման հաջող ավարտումը և զինաթափման եվրոպական կոնֆերանսի համար ուղի հարթելը:

Ի դեպ, այստեղ հարկ է նշել այն կոնստրուկտիվ, խաղաղասիրական դերը, որ Մադրիդում խաղում են Եվրոպայի չեզոք և չմիացած երկրները: Կամենում եմ նրանց հետագա հաջողություններ մաղթել այդ գործում: **(Ծափահարություններ):**

Եվրոպայում լարվածության թուլացման պրոցեսի հետագա ամրապնդումը եվրոպացիներին հնարավորություն կընձեռի ավելի հաջողությամբ վայելելու դրա պտուղները, համատեղ ջանքերով լուծելու ժողովուրդների պրակտիկ կյանքի՝ ամբողջ մայրցամաքի համար ընդհանուր շատ պրոբլեմներ: Այդպիսի համագործակցության ձևերը որոշ բնագավառներում արդեն սկսում են կազմավորվել: Գալիք սերունդների հանդեպ մեր սերնդի պարտքն է աններողաբար առաջ գնալ այդ ուղիով: **(Երկարատև ծափահարություններ):**

Ամբողջությամբ վերցրած լարվածության թուլացումը ժողովուրդների պատմական նվաճումն է: Ոչ մի դեպքում չի կարելի թույլ տալ, որ այն հօգուտ իմպերիալիզմի խմբակցության նեղմիտ, եսամոլ քաղաքագետները: Այն հարկավոր է պահպանել, զարգացնել ու խորացնել: Եվ դա կլինի մարդկային քանականության հաղթանակը վտանգավոր, խելացնոր ագրեսիվության նկատմամբ: **(Ծափահարություններ):** Մենք հավատում ենք այդպիսի հաղթանակին, որովհետև հավատում ենք մարդու բանականությանը և, եթե կուզեք, ժողովուրդների ինքնապահպանման բնազդին: **(Ծափահարություններ):**

Սրանք են այն ազնիվ նպատակները, որոնց ենթարկված են մեր երկրի արտաքին քաղաքականությունը, ՍՄԿԿ-ի միջազգային գործունեությունը: **(Ծափահարություններ):** Եվ այստեղ մեր դաշնակիցներն են բոլոր խաղաղասեր երկրները, համաշխարհային ասպարեզում բոլոր ողջամիտ, ռեալիստական գործիչները, ամբողջ աշխարհի բազմամիլիոն մասսաները: **(Երկարատև ծափահարություններ):**

Մեզ համար միշտ ուղեցույց աստղ կլինեն մեծ Լենինի խոսքերն այն մասին, որ սովետական պետությունը «ցանկանում է հաշտ ու խաղաղ ապրել բոլոր ժողովուրդների հետ և իր բոլոր ուժերն ուղղել ներքին շինարարությանը» **(Երկարատև ծափահարություններ):**

Թանկագի՛ն ընկերներ:



Թույլ տվեք վերջում Սովետական Ադրբեջանի աշխատավորներին նոր հաջողություններ մաղթել կուսակցության և պետության կողմից նախատեսված տնտեսական ու սոցիալական զարգացման պլանների կատարման գործում: **(Բուռն, երկարատև ծափահարություններ):**

Վստահ եմ, որ այսուհետ ևս դուք արժանի կլինեք ձեր փառավոր ավանդույթներին և նոր լավ գործերով կդիմավորեք առաջիկա նշանավոր տարեթիվը՝ Սովետական Սոցիալիստական Հանրապետությունների Միության 60-ամյակը: **(Երկարատև ծափահարություններ):**

Թող կեցցե՛ և դեպի նոր հաջողություններ ընթանա Սովետական Ադրբեջանը: **(Բուռն ծափահարություններ):**

Կեցցե՛ մեր մեծ, հզոր հայրենիքը՝ Սովետական Սոցիալիստական Հանրապետությունների Միությունը: **(Բուռն ծափահարություններ):**

Փա՛ռք Լենինի կուսակցությանը՝ Սովետական Միության կոմունիստական կուսակցությանը: **(Բուռն ծափահարություններ):**

Թող ամուր լինի մեր մոլորակի խաղաղությունը և բեղմնավոր՝ ժողովուրդների համագործակցությունը: **(Բուռն, երկարատև ծափահարություններ, բոլորը ոտքի են կանգնում: Դահլիճում լսվում են բացականչություններ՝ «ՍՄԿԿ-ին՝ փառք», «Սովետական ժողովրդին՝ փառք», «Կուսակցությունն ու ժողովուրդը միաբան են»):**

Այժմ թույլ տվեք հանձնել այն շքանշանը, որով պարգևատրված է ձեր հանրապետությունը:

---

# ԻՆՖՈՐՄԱՑԻՈՆ ՀԱՂՈՐԴԱԳՐՈՒԹՅՈՒՆ

## ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄԿՈՒՍԻ ԿԵՆՏՐՈՆԱԿԱՆ ԿՈՄԻՏԵԻ ՊԼԵՆՈՒՄԻ ՄԱՍԻՆ

1982 թվականի հոկտեմբերի 6-ին տեղի ունեցավ Հայաստանի կոմունիստական կուսակցության Կենտրոնական կոմիտեի պլենումը։

Պլենումը քննարկեց «ՍՄԿԿ Կենտկոմի 1982 թվականի մայիսյան պլենումի որոշումների, գյուղատնտեսության հարցերի վերաբերյալ ընկեր Լ. Ի. Բրեժնևի ցուցումների ու հանձնարարականների լույսի ներքո հացահատիկի ու կերի արտադրության հետագա ավելացման, դրանց արդյունավետ օգտագործման ուղղությամբ հանրապետության կուսակցական կազմակերպությունների խնդիրների մասին» հարցը։

Այդ հարցի առթիվ զեկուցումով հանդես եկավ Հայաստանի կոմկուսի Կենտկոմի առաջին քարտուղար ընկ. **Կ. Ս. Դեմիրճյանը**։

Զեկուցման քննարկմանը մասնակցեցին կուսակցության Ախուրյանի շրջկոմի առաջին քարտուղար ընկ. **Մ. Լ. Մկրտչյանը,** կուսակցության Կամոյի շրջկոմի առաջին քարտուղար ընկ. **Դ. Դ. Հարությունյանը,** Սիսիանի շրջանի Բռնակոթ գյուղի կոլտնտեսության մեքենայացված օղակի օղակավար ընկ. **Ա. Տ. Խաչատրյանը,** Հայաստանի անասնաբուծության և կերարտադրության գիտահետազոտական ինստիտուտի կերակրման բաժնի վարիչ ընկ. **Գ. Պ. Զաքարյանը,** կուսակցության Ղուկասյանի շրջկոմի առաջին քարտուղար ընկ. **Ծ. Հ. Ալեքսանյանը,** Մարտունու Զոլագյուղի սովխոզի մեղվաբուծական բրիգադի բրիգադավար ընկ. **Ա. Ա. Զաքարյանը,** ժողովրդական դեպուտատների Աբովյանի շրջանային սովետի գործկոմի նախագահ ընկ. **Գ. Գ. Մանուկյանը,** երկրագործության գիտահետազոտական ինստիտուտի գենետիկայի և սելեկցիայի բաժնի վարիչ ընկ. **Ս. Գ. Բարսեղյանը**։

Պլենումը քննարկեց նաև «Տնտեսական և սոցիալական զարգացման պլանների և ՍՍՀՄ կազմավորման 60-ամյակի պատվին ստանձնած սոցիալիստական պարտավորությունների կատարման ուղղությամբ կուսակցության Էջմիածնի շրջկոմի կազմակերպչական ու քաղաքական աշխատանքի մասին» հարցը։

Զեկուցումով հանդես եկավ ՀԿԿ Էջմիածնի շրջկոմի առաջին քարտուղար ընկ. **Ս. Մ. Մխիթարյանը**։

Զեկուցման առթիվ ծավալված մտքերի փոխանակությանը մասնակցեցին կուսակցության Երևանի քաղկոմի քարտուղար ընկ. **Ս. Հ. Ստեփանյանը,** կուսակցության Աշտարակի շրջկոմի առաջին քարտուղար ընկ. **Մ. Հ. Խաչատրյանը,** Լենինական կայարանի լոկոմոտիվային դեպոյի էլեկտրաքարշի մեքենավար ընկ. **Ա. Մ. Մովսիսյանը,** Կիրովականի լուսատեխնիկական գործարանի հավաքման արտադրամասի բրիգադավար ընկ. **Ի. Հ. Հակոբյանը,** կուսակցության Մեղրու շրջկոմի առաջին քարտուղար ընկ. **Թ. Ա. Դիլանյանը,** Հայկական ՍՍՀ սննդի արդյունաբերության մինիստր ընկ. **Ա. Հ. Դանիելյանը,** Նոյեմբերյանի շրջանի Այրումի պահածոյի գործարանի վերամշակիչ բանվորուհի ընկ. **Լ. Ա. Թամազյանը,** Հոկտեմբերյանի շրջանի Նաիրիի սովխոզի դիրեկտոր ընկ. **Ն. Գ. Առաքելյանը**։

Քննարկված հարցերի վերաբերյալ պլենումն ընդունեց համապատասխան որոշումներ։

Վերջում պլենումում մեծ ճառով հանդես եկավ Հայաստանի կոմկուսի Կենտկոմի առաջին քարտուղար ընկ. **Կ. Ս. Դեմիրճյանը**։

Պլենումը քննարկեց կազմակերպական հարց։ Պլենումը Հայաստանի կոմկուսի Կենտկոմի գյուղատնտեսության բաժնի վարիչ հաստատեց ընկ. **Ն. Կ. Այվազյանին**։

Դրանով Հայաստանի կոմկուսի Կենտրոնական կոմիտեի պլենումը ավարտեց աշխատանքը։

---

# ՔԱՂԱՔԱԿԱՆ, ԿԱԶՄԱԿԵՐՊՉԱԿԱՆ ԵՎ ՏՆՏԵՍԱԿԱՆ ԱՇԽԱՏԱՆՔԸ ՆՈՐ ՊԱՀԱՆՋՆԵՐԻ ՄԱԿԱՐԴԱԿԻՆ*

## Ընկեր Կ. Ս. ԴԵՄԻՐՃՅԱՆԻ զեկուցումը Հայաստանի կոմկուսի Կենտկոմի պլենումում

Ընկերնե՛ր։

Սովետական մարդիկ խորին գոհունակությամբ ընդունեցին ՍՄԿԿ Կենտկոմի 1982 թվականի մայիսյան պլենումի որոշումները ՍՍՀՄ պարենային ծրագրի և դրա իրականացման ուղիների ու միջոցների վերաբերյալ։

Հայաստանի կոմկուսի Կենտկոմի 1982 թվականի հունիսյան պլենումը, հանրապետության կուսակցական կազմակերպությունները և աշխատավորական կոլեկտիվները քննության առան ՍՄԿԿ Կենտկոմի մայիսյան պլենումի արդյունքները և սահմանեցին մեր կոնկրետ խնդիրները պարենային պրոբլեմի լուծման կարևորագույն գործում։

Հանրապետության պարենային ծրագրի գլխավոր խնդիրներից մեկը անասնապահական մթերքների արտադրության ծավալների հետևողական ավելացումն է և այդ հիման վրա հանրապետության բնակչությանը մսամթերքներ ու կաթնամթերքներ մատակարարելու գործի բարելավումը։ Հիշյալ պրոբլեմի լուծման խնդրում առանձնակի տեղ են գրավում հացահատիկի և կերի արտադրության ավելացման և դրանց արդյունավետ օգտագործման հարցերը։

Ներկա պլենումի քննարկմանը դնելով հիշյալ հարցերը, Հայաստանի կոմկուսի Կենտկոմի բյուրոն նկատի ունի՝ կուսակցական, սովետական, գյուղատնտեսական մարմինների, սկզբնական կուսակցական կազմակերպությունների, տնտեսությունների ղեկավարների ու մասնագետների ուշադրությունը մի անգամ ևս բևեռել հացահատիկային տնտեսության և կերարտադրության զարգացման հրատապ հարցերի լուծման վրա, եղած թերությունների ու վրիպումների վերացման, այդ ճյուղերում ներդրված և հատկացվող միջոցների օգտագործման արդյունավետության բարձրացման, հացահատիկի և կերի արտադրության հնգամյա առաջադրանքի հաջող կատարման համար աշխատավորներին առավել մոբիլիզացնելու անհրաժեշտության վրա։

ՍՍՀՄ պարենային ծրագրում խնդիր է դրված մոտակա տարիներս ապահովել երկրի հարաճուն պահանջմունքները բարձրորակ պարենի և ֆուրաժային հացահատիկի ասպարեզում, ստեղծել հացահատիկի պետական անհրաժեշտ ռեզերվներ և արտահանության ռեսուրսներ։ Պարզ է, որ համաժողովրդական այդ գործի մեջ իր ավանդը պետք է մուծի նաև մեր հանրապետությունը։

Վերջին տարիներս մեզ մոտ որոշ աշխատանք է կատարվել հացահատիկի արտադրությունն ու մթերումներն ավելացնելու նպատակով։

1981 թվականին հացահատիկային կուլտուրաների համախառն բերքը կազմեց 319,2 հազար տոննա, որը 23,7 հազար տոննայով ավելի էր, քան 1975 թվականին։ Ընդ որում, այդ աճը տեղի ունեցավ ցանքատարածություն-

* Տպագրվում է հապավումներով։



ների կրճատման պայմաններում, հացահատիկային կուլտուրաների բերքատվության բարձրացման հիման վրա։

Տասներորդ հնգամյակում հացահատիկային կուլտուրաների միջին բերքատվությունը, իններորդ հնգամյակի համեմատությամբ, աճեց հեկտարից 2,6 ցենտներով և կազմեց 18,2 ցենտներ, իսկ 1981 թվականին՝ հեկտարից 22,1 ցենտներ։

Չնայած հիշյալ տեղաշարժերին, մենք այսօրստիպված ենք արձանագրել, որ հացահատիկային կուլտուրաների արտադրության ասպարեզում դեռևս կան չլուծված շատ պրոբլեմներ ու թերություններ։ Այսօր մենք պետք է խոստովանենք, որ մի շարք շրջանների և կոլտնտեսությունների ու սովխոզների հացահատիկային տնտեսությունը բարձիթողի վիճակում է, կոպիտ կերպով խախտվում է հացահատիկային կուլտուրաների մշակության տեխնոլոգիան։

Նման շրջաններում ու տնտեսություններում հացահատիկային կուլտուրաների բերքատվության ցուցանիշները ցածր են և ոչ մի քննադատության չեն դիմանում։

Շատ տնտեսությունների և մի շարք շրջանների ղեկավարներն ու մասնագետները հացահատիկային կուլտուրաների ցածր բերքատվությունը մշտապես բացատրում են բնակլիմայական վատ պայմաններով, տարերային աղետներով և այլ մտացածին պատճառներով, բայց լռության են մատնում կամ մոռանում գլխավոր պատճառները՝ ագրոտեխնիկայի ցածր մակարդակը, հացահատիկային տնտեսության բարձիթողի վիճակը, տեխնոլոգիական և աշխատանքային ցածր կարգապահությունը, անտնտեսվարությունը և հանձնարարված գործի համար անպատասխանատվությունը։

Մինչդեռ հանրապետությունում կան շատ տնտեսություններ, որոնք լրիվին իրականացնում են ագրոտեխնիկայի ամբողջ կոմպլեքսը, արտադրության մեջ ակտիվորեն ներդնում գիտության նվաճումները և հացահատիկային կուլտուրաների մշակության առաջավոր տեխնոլոգիան, տնտեսավարի, կազմակերպված են կատարում գործը և այս ամենն էլ ապահովում է բարձր բերքատվություն։

1981 թվականին Ախուրյանի շրջանի Հովունիի կոլտնտեսությունը հեկտարից ստացավ 64 ցենտներ հացահատիկ, Հացիկի սովխոզ-տեխնիկումը՝ 51,2, Կամոյի անվան կոլտնտեսությունը՝ 41, Արարատի շրջանի Փոքր Վեդու կոլտնտեսությունը՝ 64,7, Էջմիածնի շրջանի Ամբերդի կոլտնտեսությունը՝ 64, Արաքսի կոլտնտեսությունը՝ 55, Վարդենիսի շրջանի Նորակերտի սովխոզը՝ 43, Մեծ Մազրայի կոլտնտեսությունը՝ 42, Անիի շրջանի Ջրակապի կոլտնտեսությունը՝ 40,1 ցենտներ։

Ինչպես տեսնում եք, հանրապետության բոլոր գոտիներում տնտեսություններ կան, որոնք ստանում են 35 ցենտներից, էլ չենք ասում՝ 40 ցենտներից բարձր բերք։

Բայց, ամբողջությամբ վերցրած, ինչպես այդ մասին արդեն նշվեց Հայաստանի կոմկուսի Կենտկոմի 1982 թվականի հունիսյան պլենումում, հացահատիկի արտադրության նկատմամբ մեզանում ստեղծվել է մոտավորապես նույնպիսի սխալ վերաբերմունք, ինչպես ոչ հեռու անցյալում հանրապետության գյուղատնտեսության զարգացման նկատմամբ՝ իբր մեր հացահատիկային ցանքատարածությունը փոքր է և դրանից վերցնելու բան չկա։ Դա սխալ է ու վնասակար։ Մենք պետք է արմատապես փոխենք մեր վերաբերմունքը հացահատիկի արտադրության նկատմամբ։

Նախ։ Երբեք չպետք է մոռանալ, որ հացահատիկային կուլտուրաները գրավում են հանրապետության մշակելի հողատարածության մեկ երրորդը։ Եվ հանրապետության սակավահողության պայմաններում մենք ոչ մի իրավունք չունենք այդքան անարդյունավետ օգտագործելու այդ հողատարածությունը։

Երկրորդ։ Հողագործության բարձր կուլտուրայի ապահովման, գիտության և առաջավոր փորձի նվաճումների կիրառման, հացահատիկի արտադրության ինտենսիվացման ճանապարհով կարելի է մեծապես ավելացնել հացահատիկային կուլտուրաների բերքատվությունը՝ հանրապետությունում այն հասցնե-

չով հեկտարից միջին հաշվով 30—35 ցենտների, իսկ հացահատիկի համախառն բերքը՝ 450—500 հազար տոննայի։

Ինչպե՞ս հասնել այդ բանին։

Հացահատիկի արտադրության ավելացման, հացահատիկային կուլտուրաների բերքատվության բարձրացման գլխավոր ուղղությունը հացահատիկային տնտեսության հետևողական ինտենսիվացումն է և արդյունավետության բարձրացումը։ Իսկ դա ենթադրում է բարձրացնել հողի բերրիությունը, կատարելագործել ցանքատարածությունների կառուցվածքը, յուրացնել գիտականորեն հիմնավորված ցանքաշրջանառություններ, արդյունավետ կիրառել հանքային և օրգանական պարարտանյութերն ու հերբիցիդները, լայնորեն արմատավորել գիտատեխնիկական առաջընթացի նվաճումները։

Հացահատիկային կուլտուրաների կայուն ու երաշխավորված բարձր բերքի ստացումը, մի բան, որը հենց մեզ մոտ պակասում է, անհնար է առանց հացահատիկի արտադրության արդյունքների ծրագրավորման։ Մեզ մոտ շատ տնտեսություններում ցանում են և դրանով գործն ավարտված համարում։

Երկրի առաջավոր տնտեսությունների պրակտիկան համոզիչ ցույց է տվել արտադրության արդյունքների ծրագրավորման արդյունավետությունը բարձր ու կայուն բերքի ստացման գործում։ Օղակների, բրիգադների ու ֆերմաների տեխնոլոգիական քարտեզների մեջ առավել լիովին են հաշվի առնվում հողակլիմայական պայմանները, բույսերի այս կամ այն սորտի հնարավորությունները, եղած նյութական և աշխատանքային ռեսուրսները։ Այդ առաջավոր մեթոդի կիրառումը հնարավորություն է ընձեռում ստանալու բերքատվության 25—30 տոկոս հավելում։

Տարօրինակ է, որ նյութական և աշխատանքային լրացուցիչ ծախսումներ չպահանջող այդ մեթոդը չի կիրառվում մեր հանրապետությունում, իսկ դա, իր հերթին, խոչընդոտում է հացահատիկային կուլտուրաների ինտենսիվ սորտերի պոտենցիալ հնարավորությունների լիակատար օգտագործմանը, հանգեցնում հացահատիկի բերքի թերստացման։

Գյուղատնտեսության մինիստրությունը, նրա գիտահետազոտական ինստիտուտները, կուսակցության շրջկոմները, ժողովրդական դեպուտատների շրջանային սովետների գործկոմները պետք է հանրապետության բոլոր տնտեսություններում ներդնեն բերքատվության ծրագրավորման մեթոդը։

Հացահատիկային կուլտուրաների բերքատվության բարձրացման անհրաժեշտ պայմաններից մեկը ցանքաշրջանառությունների ճիշտ կիրառումն է և ցանքերի տնտեսապես հիմնավորված կառուցվածքների ներդրումը։ Այդ կարևոր գործում մեզ մոտ շատ թերություններ կան, իսկ առանձին տնտեսություններում այդ պահանջները լիովին անտեսվում են։

Անցյալ տարիների պրակտիկան ցույց է տալիս, որ աշնանացան ցորենի ցանքերին հիմնական վնասը հասցնում է ցանքի ժամկետների ձգձգումը, քանի որ այս դեպքում բույսի արմատային սիստեմը թույլ է զարգանում և չի կուտակվում նորմալ ձմեռման համար անհրաժեշտ սննդանյութերի պաշար։ Դրա հետևանքով հանրապետությունում ամեն տարի ցրտահարվում են աշնանացան հացահատիկի 10—15 հազար հեկտար ցանքեր, իսկ առանձին տարիներին՝ 20—25 հազար հեկտար, այն դեպքում, երբ այդ կուլտուրաներով զբաղեցված ընդհանուր ցանքատարածությունը մոտ 95 հազար հեկտար է։

Ցանքի ժամկետները ձգձգելու պատճառով մենք հեկտարից մոտավորապես 5—6 ցենտներ հացահատիկ պակաս ենք հավաքում։ Այս ամենը, մի կողմից, հասցնում է հացահատիկի մեծ կորուստների, իսկ, մյուս կողմից՝ վերացանման հետ անչված նյութական և աշխատանքային մեծ ծախսումների։ Բայց չէ՞ որ դա կարելի է և պետք է կանխել։ Դրա համար հարկավոր են ոչ թե լրացուցիչ ծախսումներ, այլ միայն կազմակերպվածություն, պետական ու տեխնոլոգիական բարձր կարգապահություն։ Աշնանացան ցորենի ցանքի ժամկետների ձգձգումը պայմանավորված է նաև սերմացուի անհրաժեշտ փոխանցվող պաշարների բացակայությամբ։

Անհրաժեշտ է, որ գյուղատնտեսության և մթերումների մինիստրությունները բոլոր միջոցները ձեռնարկեն տնտեսություններին սերմացու մատակա-



րարելու այնպիսի ժամկետներում, որոնք ապահովեն ցանքի աշխատանքների ժամանակին կատարումը։

Խնդիրն այն է, որ հացահատիկային կուլտուրաների ցանքը կատարվի ագրոտեխնիկական լավագույն ժամկետներում, ելնելով յուրաքանչյուր գոտու, յուրաքանչյուր շրջանի և տնտեսության տեղական հողակլիմայական պայմաններից։

Պլենումն այսօր մի անգամ ևս կուսակցության շրջկոմներից, շրջգործկոմներից, կուսակցական կազմակերպություններից, գյուղատնտեսական մինիստրությունների, տնտեսությունների ղեկավարներից պետք է պահանջի, որ հացահատիկի ողջ ցանքատարածությունում ցանվի բարձր վերարտադրության և ցանքային ստանդարտի առաջին կարգի սերմացու։

Հացահատիկային կուլտուրաները խիստ պահանջկոտ են հողի մշակության նկատմամբ։ Ուստի հացահատիկային կուլտուրաների բերքատվության բարձրացման գործում էական դեր է խաղում հողի մշակության սիստեմը՝ վարը, հողի նախացանքային մշակությունը, ցրտահերկը և այլն։

Ինքնըստինքյան հասկանալի է, որ հիշյալ աշխատանքների անորակ կատարման դեպքում՝ նույնիսկ սորտային սերմացու, հանքային պարարտանյութեր և ոռոգում կիրառելու պայմաններում չի կարելի ցանկացած արդյունքի հասնել։ Այս ճշմարտությունը ամենքին է հայտնի։ Հարց է ծագում՝ իսկ ինչո՞ւ այս կարևոր միջոցառումները հանրապետության շատ շրջաններում ու տնտեսություններում ամենացածր մակարդակով են անցկացվում։ Չի պահպանվում վարի խորությունը, ձգձգվում է ցրտահերկի ժամկետը, հերկը ամենուրեք կատարվում է առանց հանքային պարարտանյութեր տալու։

Այս ամենը տնտեսությունների ղեկավարների ու մասնագետների անպատասխանատվության և հսկողության բացակայության հետևանքն է։

Առաջնահերթ նշանակություն ունեցող այս բոլոր աշխատանքները թողնված են միայն տրակտորիստի խղճին։ Այսօր ոչ ոք չի հսկում վարի խորությունն ու որակը, սերմերի և հանքային պարարտանյութերի հողածածկման շերտի խորությունը։ Բայց չէ՛ որ տնտեսություններում մենք ուսյալ գյուղատնտեսների մի ամբողջ բանակ ունենք։

Մի կողմ են քաշվել նաև շրջանային գյուղատնտեսական վարչությունները, որոնց ֆունկցիաների մեջ ուղղակի մտնում է այդ կարևոր գործի կազմակերպումը։

Ժամանակն է վերջ տալու այդ դրությանը։ Այստեղ մանրուքներ չեն կարող լինել։ Չէ՛ որ ամեն մի վրիպում, ամենափոքր սխալմունքը բացասաբար են ազդում վերջնական արդյունքի վրա։ Հողի ոչ մի հեկտար չպետք է ցանվի առանց ճիշտ մշակության, յուրաքանչյուր հեկտար պետք է պարարտացվի և առավելագույն փոխհատուցում տա։ Այդ գործը պետք է անդուլ վերահսկվի։ Ժողովրդական վերահսկիչներն այստեղ շատ անելիքներ ունեն։

Ընկերնե՛ր։

Հացահատիկային կուլտուրաների բերքատվության բարձրացման և հացահատիկի արտադրության ծախսերի նվազեցման գործում բացառիկ կարևոր նշանակություն ունեն պարարտանյութերը, հատկապես հանքային պարարտանյութերի արդյունավետ կիրառումը։ Ծախսված պարարտանյութերի յուրաքանչյուր ցենտների դիմաց կարելի է ապահովել ավելի քան հինգ ցենտներ բերքի հավելում։

Վերջին տարիներս հանրապետությունում որոշակի աշխատանք է կատարվել այդ ասպարեզում։ Սակայն ամենուրեք չէ, որ պարարտանյութերի օգտագործմանը բավարար ուշադրություն է նվիրվում։

Պարարտանյութերի օգտագործման և կոլտնտեսությունների ու պետական տնտեսությունների ագրոքիմիական սպասարկման կազմակերպման գործում դեռևս մեծ թերություններ կան, որոնք նվազեցնում են հացահատիկային տնտեսության մեջ դրանց կիրառման արդյունավետությունը։ Տրվող պարարտանյութերի քանակի հարաճուն ավելացման հետ մեկտեղ շատ տնտեսություններում չի ապահովվում բերքի նորմատիվ հավելումը։ Այս մասին մենք խոսեցինք Կենտկոմի հունիսյան պլենումում։

Գուգարքի, Շամշադինի, Ամասիայի, Եղեգնաձորի, Մեղրու, Ղուկասյանի, Մարտունու և մի շարք այլ շրջաններում հացահատիկային կուլտուրաների մեկ հեկտարի դիմաց տրվում է սահմանված նորմաներից 2,5—3 անգամ պակաս պարարտանյութ։ Խախտվում են հանքային պարարտանյութերի փոխադրման ու պահպանման սահմանված կանոնները։ Հանրապետության շատ կոլտնտեսություններում ու պետական տնտեսություններում լինում են պարարտանյութերի մեծ կորուստներ և նույնիսկ փչացում։

Հացահատիկային տնտեսության մեջ հույժ անբավարար են օգտագործվում օրգանական պարարտանյութերը, իսկ շատ տեղերում դրանք առհասարակ չեն օգտագործվում։ Մեր պլենումներում գյուղատնտեսության մինիստրությունը քննադատվել է օրգանական պարարտանյութերի կուտակման և օգտագործման վատ կազմակերպման համար։ Այդ արժեքավոր պարարտանյութը հանրապետությունում շատ վատ է օգտագործվում՝ եղածի 40—45 տոկոսի չափով։ Ամեն տարի կորչում է բոլոր կուլտուրաներից բարձր բերք ստանալու, հողի բերրիությունը վերականգնելու և հողի էրոզիայի դեմ պայքարելու համար խիստ անհրաժեշտ ավելի քան 2—2,5 միլիոն տոննա օրգանական պարարտանյութ։

Ամենուրեք չէ, որ կազմվել ու կիրառվում են ագրոքիմիական քարտեզներ, շատ տնտեսություններում դրանց կիրառումը ձևական բնույթ է կրում, իսկ դա նշանակում է, որ հանքային պարարտանյութը կուրորեն են օգտագործում։ Պարարտանյութերը ագրոքիմիական ծառայությունների հանձնարարականների կոպիտ խախտումներով են տրվում Թալինի, Կրասնոսելսկի, Եղեգնաձորի, Ազիզբեկովի և այլ շրջանների մի շարք տնտեսություններում։ Եվ այս ամենը այն պայմաններում, երբ հանրապետությունում ստեղծվել ու գործում է գյուղատնտեսության մինիստրության «Հայգյուղքիմիա» հանրապետական արտադրական-գիտական միավորում, որի շրջանային օղակում աշխատում են շուրջ 400 բարձրորակ մասնագետ-ագրոքիմիկոսներ։

Կենտկոմը միջոցներ է ձեռնարկել, որպեսզի հացահատիկի ցանքատարածությանը տրվող հանքային պարարտանյութերի մատակարարումները խիստ ավելացվեն։

Գյուղատնտեսության, պտուղբանջարեղենի տնտեսության, սննդարդյունաբերության մինիստրությունները, անտառային տնտեսության պետական կոմիտեն, կուսակցության շրջկոմները, ժողովրդական դեպուտատների շրջանային սովետների գործադիր կոմիտեները պետք է կոնկրետ միջոցներ ձեռնարկեն հանքային և օրգանական պարարտանյութերի օգտագործման նորմաներն ու տեխնոլոգիաները կատարելագործելու և խստիվ կիրառելու, այդ աշխատանքների մեքենայացման մակարդակը բարձրացնելու հիման վրա արդյունավետությունը շեշտակի մեծացնելու համար։

Ժամանակն է, որպեսզի գյուղատնտեսության մինիստրությունը և նրա տեղական մարմինները սահմանեն տնտեսություններին հանքային պարարտանյութեր տրամադրելու կարգ՝ ըստ նորմատիվի բերքի ստացումն ապահովելու սկզբունքով։

Հացահատիկային կուլտուրաների բարձր բերքատվության ստացումն ապահովող կարևոր պայմաններից մեկը դաշտերի աղտոտվածության, գյուղատնտեսական կուլտուրաների հիվանդությունների և վնասատուների դեմ մղվող պայքարում քիմիական և բիոլոգիական մեթոդների կիրառումն է։ Մոլախոտերից, վնասատուներից և հիվանդություններից առաջացող կորուստները կազմում են հնարավոր բերքի 12—15 տոկոսը։ Դրանց դեմ ծավալվող պայքարի համար ծախսվող յուրաքանչյուր ռուբլին փոխհատուցվում է 5—6 ռուբլու զուտ եկամտով։ Մինչդեռ այս ակնհայտ ճշմարտությունը նույնպես անտեսվում է։

1982 թվականին 1981 թվականի համեմատությամբ հերբիցիդներով մշակվող ցանքատարածությունը նվազել է 7.000 հեկտարով։ Չէ՞ որ դա ուղղակի խայտառակություն է։

Տնտեսությունների մեծ մասում մոլախոտերի, հացահատիկային կուլտուրաների հիվանդությունների և վնասատուների դեմ պայքարը ձևական



բնույթ է կրում։ Հազվադեպ կարելի է հանդիպել հացահատիկի մաքուր դաշտի։ Իսկ դա նշանակում է, որ հացահատիկի փոխարեն մենք սնուցում ենք մոլախոտը, որն ինտենսիվ կերպով աճում է, կլանում խոնավությունը, պատճառ դառնում հասկավոր կուլտուրաների պառկելուն, կասեցնում է դրանց զարգացումը և ժամանակին հասունացումը, խիստ դժվարացնում հացահատիկային կուլտուրաների բերքահավաքը, վերամշակումը, հասցնում մեծ կորուստների և լրացուցիչ ծախսումների։ Ժամանակն է վերջ տալու այդ անտընտեսվարությանը։

Հացահատիկային կուլտուրաների ցանքի ոչ մի հեկտար չպետք է մնա առանց հերբիցիդներով ու բույսերի պաշտպանության համապատասխան միջոցներով պատշաճորեն մշակվելու։ Գյուղատնտեսության մինիստրությունը և նրա ծառայությունները պետք է հատուկ ուշադրություն նվիրեն այդ հարցին։

Ընկերնե՛ր։ Հացահատիկային կուլտուրաների բերքատվության բարձրացումը մեծապես պայմանավորված է սերմնաբուծության և սորտերի սելեկցիայի զարգացման մակարդակով։ Տեղական պայմաններին հարմարեցված բարձրարդյունավետ սորտերը լավ են դիմանում եղանակի անբարենպաստ պայմաններին և կայուն բերք են ապահովում։ Վերջին տարիներս գյուղատնտեսության մինիստրությունը, նրա գիտահետազոտական ինստիտուտները և տեղական գյուղատնտեսական մարմինները որոշակի աշխատանք են կատարել հացահատիկային կուլտուրաների սերմնաբուծությունը բարելավելու նպատակով։

Շատ տնտեսություններում և շրջաններում ցածր բերքատու սորտերը փոխարինվել են նոր, ավելի բարձր բերքատու սորտերով։ Հանրապետության սելեկցիոներներն ստացել են աշնանացան գարու «Արարատ—7» և աշնանացան ցորենի «Կանգուն» նոր սորտերը, որոնք բարձր բերքատու են և լավ են հարմարեցված տեղական պայմաններին։

Սակայն հացահատիկային կուլտուրաների սերմնաբուծության մեջ էական թերություններ կան։ Շատ տնտեսություններ չեն կատարում բարձրորակ սորտային սերմացու արտադրելու և պետությանը վաճառելու պլանները։ Դանդաղ տեմպերով են կիրառվում սերմացուի արտադրության մասնագիտացման ու համակենտրոնացման միջոցառումները, անբավարար են իրականացվում սերմնաբուծական տնտեսությունների կազմակերպումը և հագեցումը անհրաժեշտ սարքավորումներով ու միջոցներով։ Սերմնաբուծության նյութատեխնիկական անբավարար բազայի պատճառով չեն ապահովվում սերմացուի ժամանակին մշակումն ու ճիշտ պահպանությունը։ Այս ամենը հանգեցնում է ցածր բերքի։

Սորտերի սելեկցիայի և սերմնաբուծության զարգացման գործում ետ մնալը բացատրվում է նրանով, որ գյուղատնտեսության մինիստրության «Հայսորտսերմարդ» մասնագիտացված միավորումը, մի շարք շրջանների սովետական ու գյուղատնտեսական մարմինների, սերմնաբուծական տնտեսությունների ղեկավարներ ու մասնագետներ անբավարար են ղեկավարում աշխատանքի այդ կարևոր բնագավառը։

Հանրապետության Մինիստրների խորհուրդը պետք է մշակի սելեկցիոն-սերմնաբուծական աշխատանքի արմատական բարելավման միջոցառումներ՝ ապահովելու համար հացահատիկային տնտեսության ինտենսիվացման պահանջներին համապատասխանող հացահատիկային կուլտուրաների բարձրարդյունավետ նոր սորտերի և բարձր վերարտադրությունների տեսակավոր սերմացուի առավել արագ ստեղծումը և արտադրության մեջ դրանց ներդրումը՝ տնտեսությունների պահանջմունքները լիովին բավարարող քանակություններով։

Մեր հանրապետության պայմաններում հատիկաֆուրաժի պրոբլեմի լուծման գործում փոքր դեր չի պատկանում եգիպտացորենին, ոլոռին, սոյային, սորգոյին և մյուս կուլտուրաներին։

Անդրկովկասի առաջավոր տնտեսությունների փորձը ցույց է տալիս ինդուստրիալ տեխնոլոգիայի հիման վրա եգիպտացորենի մշակության զգալի առավելությունները, որը հնարավորություն է ընձեռում յուրաքանչյուր հեկտարից ստանալու եգիպտացորենի 100—110 ցենտներ հատիկ։ Դա 2—3 ան-

կամ ավելի է հասկավոր կուլտուրաների բերքատվությունից: Մինչդեռ մեր հանրապետությունում այդ կարևոր կուլտուրայով չափազանց վատ են զբաղվում:

Պետպլանը, գյուղատնտեսության, պտուղբանջարեղենի տնտեսության, մթերումների մինիստրությունները, գյուղտեխպետկոմը, կուսակցության շրջկոմները, ժողովրդական դեպուտատների շրջանային սովետների գործկոմները պետք է միջոցներ ձեռնարկեն ապահովելու եգիպտացորենի, լոբազգի կուլտուրաների, սորգոյի և այլ հատիկային կուլտուրաների մշակության արմատավորումը և ցանքերի ընդարձակումը: Այդ գործում իրենց ներդրումը պետք է կատարեն հանրապետության գիտնականներն ու գյուղատնտեսության մասնագետները: Եվս մի հարցի մասին: Խոսքը վերաբերում է հաճարի, սիսեռի, ոսպի, լոբու, կտավատի, կանեփի և այլ կուլտուրաների ցանքերի ընդլայնմանը:

Ձեզ հայտնի է, որ մեր հանրապետության տարածքում այդ կուլտուրաների մշակությամբ զբաղվել են վաղնջական ժամանակներից: Դրանք մեծ տեղ են գրավել բնակչության սննդաբաժնում, աչքի են ընկել բարձր կալորիականությամբ, սննդարարությամբ և բուժիչ հատկություններով: Բայց վերջին տարիներս թե՛ հաճարը, թե՛ սիսեռը, թե՛ ոսպը սկսել են հետզհետե անհետանալ: Դրա պատճառը, մի կողմից, այդ կուլտուրաների ցածր բերքատվությունն է և դրանց մշակության մեծ աշխատատարությունը, պետական ցածր գնման գները, իսկ մյուս կողմից՝ մեր գյուղատնտեսական մարմինների անպատասխանատվությունը: Ցավոք, այդ կուլտուրաների աճեցման հարցերով դադարել են զբաղվելուց ոչ միայն արտադրության աշխատողները, այլև հանրապետության գիտնականները:

Անհրաժեշտ է, որ պետպլանը, գյուղատնտեսության, մթերումների մինիստրությունները, կուսակցության շրջկոմներն ու ժողովրդական դեպուտատների շրջանային սովետների գործկոմները, ելնելով յուրաքանչյուր շրջանի և տնտեսության տեղական պայմաններից, վերականգնեն այդ արժեքավոր, ավանդական, նվազ տարածված կուլտուրաները, միջոցներ ձեռնարկեն բարելավելու դրանց սերմնաբուծությունը, ագրոտեխնիկան, վերամշակումը և մշակության մյուս տեխնոլոգիական պրոցեսները, որպեսզի մոտակա տարիներս բավարարվի հանրապետության բնակչության պահանջմունքը դրանց նկատմամբ: Մինիստրների խորհուրդը այս գործը պետք է հատուկ հսկողության տակ առնի:

Ընկերնե՛ր: Պակաս կարևոր նշանակություն չունեն հացահատիկի աճեցված բերքի ժամանակին ու անկորուստ հավաքումը, փոխադրումը, վերամշակումը, պահպանումն ու օգտագործումը: Այս ասպարեզում մեզ մոտ, անշուշտ, տեղաշարժեր կան: Մշակվել են աճեցված բերքի կորուստները կանխելու միջոցառումներ, որոնք փուլ առ փուլ ներդրվում են արտադրության մեջ: Սակայն համապատասխան գյուղատնտեսական մինիստրությունների ու գերատեսչությունների, կուսակցության մի շարք շրջկոմների ու ժողովրդական դեպուտատների շրջանային սովետների գործկոմների, շատ տնտեսությունների դեռևս չի հաջողվել արմատապես բարելավել այդ աշխատանքների կազմակերպումը, հուսալի պատնեշ կանգնեցնել բերքի կորուստների դեմ:

Մեծ թերություն է հացահատիկային կուլտուրաների բերքահավաքի ժամկետների չհիմնավորված ձգձգումը: Հանրապետության կոլտնտեսություններն ու պետական տնտեսությունները, որոնք ապահովված են ժամանակակից հզոր կոմբայնների մեծ համակազմով, հացահատիկային կուլտուրաների բերքահավաքը ավարտում են ճիշտ նույն ժամկետներում, ինչ որ սրանից 25—30 տարի առաջ, երբ այդ աշխատանքների զգալի բաժինը կատարվում էր ձեռքով: Բայց չէ որ դա հասցնում է հացահատիկի մեծ կորուստների: Հացահատիկային կուլտուրաների բերքահավաքը ընդամենը մեկ օրով ուշացնելու պատճառով առաջացող կորուստները կազմում են հեկտարից 0,5-ից մինչև 3 ցենտներ, հինգ օրով ուշացնելու դեպքում՝ 2-ից մինչև 6 ցենտներ, 10 օրով ուշացնելու դեպքում՝ 3-ից մինչև 10 ցենտներ: Ահա թե որտեղ են թաքնված մեր ռեզերվները: Այստեղ ժամանակի գործոնը բարձր բերքի գործոն է:



Սակայն ամենուրեք չէ, որ հաշվի են առնում այդ և պատշաճ միջոցներ ձեռնարկում չարդարացված կորուստները կանխելու համար: Վերցնենք, օրինակ, Ապարանի շրջանը: Այդ շրջանում հացահատիկային կուլտուրաների տարածությունը կազմում է 2.800 հեկտար, շրջանի տնտեսություններում կա 31 կոմբայն: Հաշվարկները ցույց են տալիս, որ բերքահավաքը կարելի կլինի ավարտել 10—12 օրում: Մինչդեռ փաստորեն այն տևում է 45—50 օր: Պատահական չէ, որ այդ շրջանում հացահատիկային կուլտուրաների բերքատվությունը տասներորդ հնգամյակում միջին հաշվով կազմել է հեկտարից միայն 11,6 ցենտներ: Արդյոք տնտեսությունների և շրջանի ղեկավարները իրավունք ունե՞ն թույլ տալու հացահատիկի այսպիսի հսկայական կորուստներ: Ինչո՞ւ է կուսակցության շրջկոմը հաշտվում դրա հետ: Համանման դրություն գոյություն ունի նաև հանրապետության ուրիշ շատ շրջաններում:

Ելքը մեկն է: Հաշվի առնելով ուղղաձիգ մեծ զոնալությունը, դաշտերի մանր կոնտուրները, մենք պետք է շտապ միջոցներ ձեռնարկենք հատիկահավաք տեխնիկայի համակենտրոնացման համար և ապահովենք եղած կոմբայնային համակազմի բարձրարդյունավետ օգտագործումը, ինչպես շրջանների, այնպես էլ հանրապետության մասշտաբով դրանց մանևրման հաշվին:

Քիչ թերություններ չկան նաև կոմբայնային բերքահավաքի բուն կազմակերպման գործում: Հաճախ կոմբայնները պատշաճ վիճակում չեն գտնվում, չի ստուգվում բերքահավաքի և կալսման որակը: Շատ հացահատիկ է կորչում նաև կոմբայնից կալ փոխադրելիս: Կալերի մեծամասնությունը հողածածկ ունի: Տնտեսություններում չկան հացահատիկի տիպային պահեստներ, հացահատիկը երկար ժամանակ մնում է բաց երկնքի տակ, որի պատճառով լինում է քաշի ու որակի կորուստ:

Մթերումների մինիստրությունը բավարար ուշադրություն չի նվիրում հացահատիկային և հատիկալոբազգի կուլտուրաների ժամանակին ընդունման, մշակության, պահպանման և իրացման գործին: Ժամանակն է վերջ տալու նման անտնտեսվարությանը: Հացահատիկի կորստի ամեն մի փաստ պետք է հատուկ քննարկման առարկա դառնա, և մեղավորները պետք է խիստ պատասխանատվության ենթարկվեն: Հարկավոր է լայն շարժում ծավալել բերքը լրիվ, մինչև վերջին հասկը հավաքելու և այն հուսալիորեն պահպանելու համար:

Ինչպես տեսնում եք, ընկերնե՛ր, հանրապետության հացահատիկային տնտեսության մեջ լուրջ թերություններ կան, հիմնականում կազմակերպական ու տեխնոլոգիական կարգի թերություններ, որոնց հետևանքով մենք պակաս ենք հավաքում հնարավոր բերքի ուղիղ կեսը:

Հացահատիկային տնտեսության հետագա զարգացման շահերը հրամայաբար պահանջում են, որ պետպլանը, գյուղատնտեսության, պտուղբանջարեղենի տնտեսության, մթերումների մինիստրությունները, կուսակցության շրջկոմները և ժողովրդական դեպուտատների շրջանային սովետների գործկոմները գիտնականների, տնտեսությունների ղեկավարների ու մասնագետների լայն մասնակցությամբ, հաշվի առնելով յուրաքանչյուր տնտեսության և շրջանի կոնկրետ պայմանները, մշակեն և իրականացնեն հացահատիկային կուլտուրաների արտադրության հետագա ինտենսիվացման գործնական միջոցառումներ, որոնք ապահովեն հացահատիկի համախառն բերքի հաստատուն աճ և հանրապետությունում մոտակա տարիներին տարեկան 450—500 հազար տոննայի արտադրություն: Դա մեծ օժանդակություն կլինի անասնապահության զարգացմանը: Ահա այն խնդիրը, որ այսօր ծառացած է հանրապետության հողագործների առջև:

Դրա հետ մեկտեղ, մենք պետք է իրականացնենք հացահատիկի ըստ ամենայնի խնայողության միջոցառումներ, բարձրացնենք դրա օգտագործման արդյունավետությունը, հասնենք այն բանին, որ ամեն մի ընտանիք, ամեն մի տնտեսություն հոգածո վերաբերմունք ցուցաբերի մեր այդ ամենամեծ հարստության նկատմամբ:

Իսկ հիմա անասնակերի մասին:

Կերային կուլտուրաների մշակությունը ամենուրեք պետք է վերցնել հատուկ հսկողության տակ, բոլոր միջոցները ձեռնարկել այդ կուլտուրաներով զբաղեցված տարածություններից որքան կարելի է բարձր բերք ստանալու համար։ Եվ այստեղ, ինչպես ավելեց հացահատիկային կուլտուրաների առնչությամբ, հարկավոր է հասնել ստացվող բերքի ծրագրավորման և արագացնել կերային կուլտուրաների մշակության առաջավոր տեխնոլոգիաների ներդրումը։

Կուսակցության շրջկոմները, ժողովրդական դեպուտատների շրջանային սովետների գործկոմները, սովետական և գյուղատնտեսական մարմինները, տնտեսությունների ղեկավարներն ու մասնագետները պետք է բոլոր միջոցները ձեռնարկեն, որպեսզի ամենուրեք յուրաքանչյուր հեկտարից ապահովեն 2,5—3 հազար, իսկ յուրաքանչյուր ոռոգելի հեկտարից՝ 5—7 հազար կերամիավորի ստացումը։

Չի կարելի մոռանալ, որ այսօր կերային կուլտուրաները գրավում են գյուղատնտեսական կուլտուրաների ընդհանուր ցանքատարածության ավելի քան 55 տոկոսը։ Իսկ դա պահանջում է, որ գյուղատնտեսության, պտուղ-բանջարեղենի տնտեսության մինիստրությունները, կուսակցության շրջկոմները, շրջանային սովետական և գյուղատնտեսական մարմիններն ավելի ակտիվ և ավելի հետևողականորեն իրականացնեն կերարտադրության մասնագիտացման ու համակենտրոնացման, ցանքատարածությունների կառուցվածքի կատարելագործման, դաշտային կերարտադրության բարձրացման, կերարտադրությունը որպես ինքնուրույն ճյուղ առանձնացնելու ասպարեզում մշակված ծրագրերը։

Մենք պետք է ունենանք ցանքատարածությունների այնպիսի կառուցվածք, որը նպաստի կոշտ և հյութալի կերերի արտադրության խիստ ավելացմանը՝ դրանցով անասունների պահանջմունքները լիովին ապահովելու նպատակով։ Գյուղատնտեսության մինիստրությունը, նրա տեղական մարմինները, տնտեսությունների ղեկավարներն ու մասնագետները պետք է գործնական միջոցառումներ մշակեն, որպեսզի արդեն եկող տարի յուրաքանչյուր շրջան, յուրաքանչյուր տնտեսություն ունենա ցանքատարածությունների գիտականորեն հիմնավորված կառուցվածք՝ կերային կուլտուրաների բարձրբերքատու սորտերի որոշակի տեսականիով։

Այդ աշխատանքը կատարելիս անհրաժեշտ է հաշվի առնել, որ կերի որակի ու արդյունավետության բարձրացման հիմքը դրանում բուսական սպիտակուցի պարունակության հետագա բարձրացումն է։ Այսօր մենք այնպիսի փաստի առաջ ենք կանգնած, երբ կերամիավորը պարունակում է 60—70 գրամից ոչ ավելի մարսելի պրոթեին, մինչդեռ այն պետք է պարունակի առնվազն 110—115 գրամ։ Այս ամենը հանգեցնում է մեծ քանակությամբ կերի անարտադրողական ծախսման։ Կերի արտադրության ներկա ծավալի պայմաններում դրանց լիարժեքությունը անհրաժեշտ մակարդակի հասցնելու շնորհիվ կարելի կլիներ անասնապահական մթերքների արտադրությունն ավելացնել առնվազն 30—35 տոկոսով։ Լավ մտածե՛ք, ընկերնե՛ր, այս թվերի մասին։

Մեր հանրապետության պայմաններում սպիտակուցային պրոբլեմի լուծման գործում գլխավոր ուշադրությունը պետք է նվիրվի բազմամյա խոտաբույսերին, հատիկալոբազգի կուլտուրաներին, միկրոբիոլոգիական սինթեզի արգասիքներին, գինեգործության, մսեղենի-կաթնեղենի արդյունաբերության և հասարակական սննդի մնացուկների, ինչպես նաև սինթետիկ սպիտակուցի՝ կարբամիդի օգտագործմանը։

Գյուղատնտեսության մինիստրությունը, կուսակցության մի շարք շրջկոմներ և ժողովրդական դեպուտատների շրջանային սովետների գործկոմներ որոշակի աշխատանք են կատարել բազմամյա խոտաբույսերի ցանքատարածությունների ավելացման ուղղությամբ։ Սակայն բազմամյա խոտաբույսերի ցանքատարածությունների ընդլայնման և դրանց բերքատվության ավելացման հնարավորությունները բացահայտորեն անբավարար են օգտագործվում։

Հայաստանի կոմկուսի Կենտկոմի 1981 թվականի հուլիսյան պլենումում խնդիր դրվեց առվույտի ցանքատարածությունները մոտակա տարիներս



հասցնել 35—40 հազար հեկտարի, իսկ կորնգանինը՝ 145—150 հազար հեկտարի։ Ինչի՞ց էինք մենք ելնում՝ առաջադրելով այսպիսի խնդիր։ Նախ, առվույտը, կորնգանը և երեքնուկը անփոխարինելի են կերային սպիտակուցի դեֆիցիտը համալրելու գործում։ Նորմալ ագրոտեխնիկայի և լավագույն բերքատվության պայմաններում առվույտի մեկ հեկտարից կարելի է ստանալ երկու տոննա բուսական սպիտակուց։ Երկրորդ, բազմամյա խոտաբույսերի ցանքերի ընդլայնումը նպաստում է հողում ազոտի կուտակմանը։

Բազմամյա խոտաբույսերի և հատկապես առվույտի ցանքատարածությունների ընդլայնումը կասեցնող գործոնը սերմացուի պակասն է։ Այդ կուլտուրաների սերմնաբուծությունը, կարելի է ասել, բարձիթողի վիճակում է։ Դրա ապացույց է այն, որ հանրապետությունում կորնգանի սերմացուի բերքատվությունը 1981 թվականին կազմել է հեկտարից 3,9 ցենտներ, իսկ առվույտինը՝ 2,7 ցենտներ։ Հարց է ծագում՝ կարելի՞ է արդյոք այսպիսի սերմնաբուծությամբ ապահովել բազմամյա խոտաբույսերի ցանքատարածությունների ընդլայնումը հանրապետությունում։ Իհարկե, ո՛չ։

Ելքը մեկն է. գյուղատնտեսության մինիստրությունը, նրա գիտահետազոտական ինստիտուտները և գյուղատնտեսական մարմինները պետք է հայրենական և արտասահմանյան փորձի հիման վրա բազմամյա խոտաբույսերի սերմնաբուծությունը փոխադրեն արդյունաբերական տեխնոլոգիայի, ընդլայնեն սերմնաբուծական տնտեսությունների ցանցը, նրանց նյութապես շահագրգռեն, ապահովեն ամեն անհրաժեշտ բանով։ Անհրաժեշտ է այդ գործը կազմակերպել այն հաշվով, որպեսզի լիովին բավարարվի հանրապետության պահանջմունքը բազմամյա խոտաբույսերի սերմացուի նկատմամբ։

Անդուլ ուշադրություն պետք է նվիրվի սիլոսացու, նաև հատիկալոբազգի կուլտուրաներին։ Վերջին տարիներս հանրապետությունում որոշ աշխատանք է կատարվել այդ կուլտուրաների տարածությունների ընդարձակման գործում։ Լավ փորձ է կուտակվել Կալինինոյի, Ստեփանավանի, Ղուկասյանի, Սիսիանի և այլ շրջանների տնտեսություններում, որտեղ ամեն տարի ստանում են հատիկալոբազգի խոտախառնուրդների բարձր բերք։

Դրա հետ մեկտեղ, անհրաժեշտ է նշել, որ արժեքավոր լոբազգի կուլտուրաների տեսականու մեծ կազմից առ այսօր հանրապետությունում մշակվում է միայն ոլոռը՝ այն էլ բերովի սերմացուի բազայի վրա։ Սպիտակուցի մեծ պարունակություն ունեցող այնպիսի արժեքավոր կուլտուրաներ, ինչպիսիք են սոյան, գլուլը, լյուպինը և այլն, ըստ էության, մոռացության են տրվել։

Գյուղատնտեսության մինիստրությունը, ժողովրդական դեպուտատների շրջանային սովետների գործկոմները պետք է հնգամյակի արդեն մնացած տարիների պլաններում սահմանեն համապատասխան առաջադրանքներ, այն հաշվով, որ հատիկալոբազգի կուլտուրաներից պատրաստվող կերերի արտադրությունը 1985 թվականին հասցվի 450 հազար տոննայի։

Սպիտակուցի պրոբլեմի հաջող լուծման համար մենք պետք է լայնորեն օգտագործենք միկրոբիոլոգիական արդյունաբերության ռեզերվները։ Հանրապետությունում մեծ հնարավորություններ կան լիզինի, սպիտակուցավիտամինային մյուս հավելուրդների արտադրության ավելացման համար։ Գյուղատնտեսության, մթերումների մինիստրությունները, «Լիզին» հայկական արտադրամիավորումը չեն ապահովում Հայաստանի կոմկուսի Կենտկոմի 1981 թվականի հուլիսյան պլենումի պահանջների կատարումը միկրոբիոլոգիական սինթեզի ճանապարհով կերերի արտադրությունն ավելացնելու և հանրապետության անասնապահության մեջ դրանք լայնորեն կիրառելու վերաբերյալ։

Մսեղենի ու կաթնեղենի արդյունաբերության, սննդարդյունաբերության, պտուղբանջարեղենի տնտեսության մինիստրությունները, ժողովրդական դեպուտատների քաղաքային սովետների գործկոմները, առևտրի մինիստրությունը և Հայկոոպը չեն ապահովում խաղողի մզուքի, կաթնաշիճուկի, խորդենու մնացուկների, մսոսկրային ալյուրի, հասարակական սննդի մնացուկների և սպիտակուցի մեծ պարունակություն ունեցող մյուս թափոնների լրիվ օգտագործումը։

Շրջանների մեծամասնությունում չեն կազմակերպվել կերի որակը որոշող լաբորատորիաներ, մի շարք տեղերում դրանք ձևականորեն են գործում։ Մենք պետք է արմատապես բարելավենք կերի որակի վերահսկման աշխատանքը։ Անհրաժեշտ է, որ գյուղատնտեսության մինիստրությունը բոլոր շրջաններում կազմակերպի կերի որակի վերահսկման լաբորատորիաներ, դրանք հագեցնի սարքավորումներով, կոմպլեկտավորի բարձրորակ մասնագետներով։

Կերի զգալի գերածախսի և դրա անարդյունավետ օգտագործման գլխավոր պատճառներից մեկը կերի արտադրամասերի և կերախոհանոցների անբավարար աշխատանքն է, հանրապետության անասնապահական շատ ֆերմաներում կերի պատրաստման վատ կազմակերպումը։ Հանրապետության 758 տնտեսություններից միայն 291-ում են կառուցվել կերի արտադրամասեր և կերախոհանոցներ։

Հանրապետության շատ տնտեսություններում նսեմացվել կամ լրիվ անտեսվել է կերի արտադրամասերի դերը, չեն կազմվում և չեն ընդունվում հիմնավորված, բոլոր բաղադրիչներով համակշռված կերաբաժիններ։ Կերի շատ արտադրամասեր լավագույն դեպքում ապահովում են միայն կոշտ կերի մեխանիկական մանրացումը։

Անհրաժեշտ է հանրապետության բոլոր տնտեսություններում մոտակա երկու տարում կառուցել կերի տիպային արտադրամասեր, դրանցից յուրաքանչյուրում ապահովել տնտեսություններում եղած կերի վերամշակման այնպիսի տեխնոլոգիայի կիրառումը, որը հնարավորություն կընձեռի արտադրելու հաշվեկշռված կերախառնուրդներ։

Կերի պատրաստման հարցերին լուրջ վերաբերմունք են ցույց տալիս Էջմիածնի, Հրազդանի, Արտաշատի, Կալինինոյի, Սիսիանի, Ղուկասյանի շրջաններում, որտեղ սկսվել են կերի պատրաստումը արդյունաբերական հիմքի վրա փոխադրելու աշխատանքներ։ Այստեղ հարցերը լուծվում են կոմպլեքսայնորեն։ Արդեն արդյունքները վատ չեն։ Այդ շրջանների փորձը հարկ է տարածել։

Կերի արտադրամասերի և կերախոհանոցների աշխատանքը պետք է գտնվի կուսակցության շրջկոմների քարտուղարների, ժողովրդական դեպուտատների շրջանային սովետների գործկոմների նախագահների, գյուղատնտեսության մինիստրության և գյուղտեխպետկոմի ղեկավարության, տեղական բոլոր գյուղատնտեսական մարմինների ամենօրյա ուշադրության կենտրոնում։

Առհասարակ հարկ է շեշտել, որ կերարտադրության աշխատանքների իրականացման կոմպլեքսում վճռական դերը պատկանում է դրանց մեքենայացմանը։ Իսկ այդ բնագավառում նույնպես աղաղակող թերություններ և վրիպումներ կան։ Դեռևս ցածր է աշխատանքների կոմպլեքսային մեքենայացման մակարդակը կերարտադրության մեջ։ Տեխնիկական միտքը նվազ է նպատակամղված աշխատանքի արտադրողականության բարձրացման խնդիրների լուծմանը։ Գյուղտեխպետկոմի և համապատասխան գիտահետազոտական կազմակերպությունների անտարբեր վերաբերմունքի պատճառով հանրապետությունում դանդաղ և ոչ-լայն մասշտաբներով են արմատավորվում նոր տիպի մեքենաները, կերի արտադրության, մշակության և օգտագործման ամբողջ տեխնոլոգիական շղթայում։

Մեր հանրապետության ինդուստրիան կարող է և պետք է օգնի գյուղատնտեսության աշխատողներին՝ կերի արտադրության գործում ձեռքի աշխատանքի բաժինը կրճատելու համար։ Այստեղ իր խոսքը պետք է ասի նաև Մինիստրների խորհրդի նախագահության ագրոարդյունաբերական կոմպլեքսի հարցերի հանձնաժողովը։

Ընկերնե՛ր։

Հանրապետության կերարտադրության զարգացման կոմպլեքսային ծրագրում նախատեսված է մոտակա տարիներս բրիկետավորված և գրանուլացված կերերի արտադրությունը հասցնել 15 հազար տոննայի, իսկ վիտամինա-



յին խոտալյուրինը՝ 30 հազար տոննայի։ Մինչդեռ գյուղատնտեսության մինիստրության, գյուղտեխպետկոմի, մթերումների մինիստրության, կուսակցության համապատասխան շրջկոմների և ժողովրդական դեպուտատների շրջանային սովետների գործկոմների մեղքով այդ կարևոր աշխատանքը ձախողված է։

Վիտամինային խոտալյուրի արտադրության սահմանված պլաններն ամեն տարի չեն կատարվում։ 1982 թվականի սեպտեմբերի 27-ի դրությամբ տարեկան պլանով նախատեսված 20 հազար տոննայի փոխարեն արտադրվել է ընդամենը 7,4 հազար տոննա վիտամինային խոտալյուր, կամ պլանի 36,9 տոկոսը։ Ղուկասյանի շրջանից բացի, ոչ մի շրջան սահմանված պլանը չի կատարել։

Հանրապետությունում տեղադրված 72 ագրեգատների կարողությունները 6—7 անգամ գերազանցում են պլանային առաջադրանքը։ Ըստ երևույթին, գյուղատնտեսության մինիստրության, գյուղտեխպետկոմի, մթերումների մինիստրության և հիշյալ շրջանների ղեկավարները համապատասխան հետևություններ չեն արել Հայաստանի կոմկուսի Կենտկոմի 1981 թվականի հուլիսյան պլենումում իրենց հասցեին արված քննադատությունից։ Այդ կարևոր գործի նկատմամբ նման վերաբերմունքը անթույլատրելի է։

Մի հրատապ խնդրի մասին ևս։ Ինչպես հայտնի է, կերի և անասնապահական մթերքների արտադրության ավելացման կարևոր ռեզերվներ են բնական կերահանդակները։ Հայաստանի կոմկուսի Կենտկոմի 1975 թվականի հունվարյան պլենումից հետո որոշակի աշխատանք է կատարվել խոտհարքների և արոտավայրերի արդյունավետությունը բարձրացնելու, դրանց կուլտուր-տեխնիկական վիճակը բարելավելու ուղղությամբ։ Տասներորդ հնգամյակի տարիներին կատարվել է 11 հազար հեկտար խոտհարքների արմատական բարելավում և 185 հազար հեկտար խոտհարքների ու արոտավայրերի մակերեսային բարելավում։ Ջրարբիացվել են 69 հազար հեկտար արոտավայրեր։

Սակայն բնական կերահանդակների կուլտուր-տեխնիկական վիճակը շարունակում է մնալ անբավարար։ Կերահանդակների զանգվածների մեծամասնությունն օգտագործվում է անսիստեմ, քիչ են տրվում հանքային և օրգանական պարարտանյութեր, չկան ջրի աղբյուրներ և ճանապարհներ։ Չեն կիրառվում մարգագետինների և արոտավայրերի ռացիոնալ օգտագործման առաջավոր մեթոդները, չի կազմակերպված խոտհարք-արոտավայրային շրջանառություն և այլն։ Այս բոլոր հարցերի կոմպլեքսային լուծման համար գյուղատնտեսության մինիստրությունը պետք է արագացնի կերահանդակների գույքագրումը և ձեռնամուխ լինի դրանց օգտագործման ու բարելավման գլխավոր սխեմայի մշակմանը։ Այդ սխեմայի հիմքում պետք է դնել յուրաքանչյուր շրջանի, յուրաքանչյուր տնտեսության խոտհարքների և արոտավայրերի արդյունավետ օգտագործման կոնկրետ ծրագիրը։

Ավիացիայի կողմից աննշան աշխատանք է կատարվում մարգագետինների և արոտավայրերի պարարտացման ասպարեզում։ Եվ առհասարակ ավիացիան չափազանց քիչ է օգնում գյուղատնտեսական արտադրությանը։ Արդեն մի քանի տարի է, ինչ այդ խնդիրն առաջադրվում է ավիատորներին, սակայն նրանք այն չեն լուծում, պատճառաբանելով, թե ուղղաթիռներ այդ տիպի աշխատանքների համար չեն արտադրվում։ Պետք է այդ ընկերներին հարցնել՝ իսկ ինչպե՞ս է, որ հարևան հանրապետությունների դաշտերում ու այգիներում զգալի տարածությունների վրա բուժում և պարարտացում է կատարվում ավիացիայի օգնությամբ։ Այս բոլոր աշխատանքների իրականացումը պետք է գտնվի հանրապետության Մինիստրների խորհրդի նախագահության ագրոարդյունաբերական կոմպլեքսի հարցերի հանձնաժողովի ամենօրյա վերահսկողության ներքո։

Ընկերնե՛ր։

Անասնապահական մթերքների արտադրությունն ավելացնելու գործում

հսկայական դեր է պատկանում հանրապետության համակցված կերի արդյունաբերությանը։

Ներկայումս հանրապետության համակցված կերի ձեռնարկությունների տարեկան կարողությունը հասցված է 720 հազար տոննայի։ Դա դրական փաստ է։ Բայց այդ կարևոր ճյուղի աշխատանքում խոշոր թերություններ կան։ Թողարկվող համակցված կերերի մեծ մասը չի համակշռված ըստ պրոթեինի, միկրոտարրերի, վիտամինների և այլ բաղադրիչների։ Համակցված կերի ձեռնարկությունները հաճախ արտադրանքը թողարկում են սահմանված ստանդարտներից կատարված շեղումներով։ Դեռևս չի ապահովվում համակցված կերերի անհրաժեշտ տեսականին գյուղատնտեսական կենդանիների և թռչունների բոլոր տեսակների համար։

Մթերումների մինիստրությունը պետք է գործուն միջոցներ ձեռնարկի բարելավելու թողարկվող համակցված կերի տեսականին ու որակը։

Տասնմեկերորդ հնգամյակում համակցված կերերի արտադրությունը, տասներորդ հնգամյակի համեմատությամբ, կավելանա 1,4 անգամ։ Այդ խնդրի կատարման համար անհրաժեշտ է, որ հանրապետության պետպլանը և մթերումների մինիստրությունը անհետաձգելի միջոցներ ձեռնարկեն արագացնելու Երևանի և Ղափանի համակցված կերերի գործարանների նախագծումն ու կառուցումը, ամեն ինչ անեն, որպեսզի արդեն մինչև 1990 թվականը կրկնապատկեն հանրապետության համակցված կերի ձեռնարկությունների գոյություն ունեցող կարողությունները։

Գյուղատնտեսության մինիստրությունը պետք է ապահովի միջտնտեսային համակցված կերի ձեռնարկությունների ցանցի զարգացումը և կազմակերպի կոլտնտեսությունների և պետական տնտեսությունների ֆուրաժային հացահատիկի վերամշակումը։ Հանրապետության տնտեսություններն ամեն տարի անասնակերի համար ավելի քան 100 հազար տոննա ֆուրաժային հացահատիկ են օգտագործում, առանց նախնական վերամշակման, որը հանգեցնում է մեծ կորուստների։ Հաշվարկները ցույց են տալիս, որ անասնակերի նպատակով չվերամշակված ձևով ֆուրաժային հացահատիկ օգտագործելու դեպքում դրա կորուստները կազմում են մեկ տոննայից մինչև 300 կիլոգրամ։ Եթե հաշվի առնենք, որ մոտակա տարիներս կոլտնտեսությունների, պետական տնտեսությունների և պետական ռեսուրսների հաշվին անասնակերի նպատակով ֆուրաժային հացահատիկի հատկացումը կավելացվի, ապա դրա պարտադիր վերամշակման անհրաժեշտությունը ակնհայտ է դառնում։ Ոչ մի կիլոգրամ հացահատիկ չպետք է անասուններին տրվի առանց նախապես վերամշակելու և դարձնելու համակցված կեր։

Ընկերնե՛ր։

Կերարտադրության ինտենսիվացման խնդիրների լուծման գործում մեծ ավանդ են մուծում հանրապետության գիտությունների ակադեմիայի, գյուղատնտեսության մինիստրության գիտական կոլեկտիվները։ Նրանք զգալի աշխատանք են կատարել կերային կուլտուրաների բարձրբերքատու սորտերի սելեկցիայի և սերմնաբուծության, կերի արտադրության ու կուտակման նոր առաջավոր տեխնոլոգիաների ներդրման ուղղությամբ։ Անհրաժեշտ է, որ գյուղատնտեսական գիտությունը եղած փորձի ընդհանրացման հիման վրա գիտականորեն հիմնավորված հանձնարարականներ մշակի կերարտադրության հետագա ինտենսիվացման ասպարեզում։ Հարկավոր է մշակել և արմատավորել կերային կուլտուրաների մշակության ինդուստրիալ տեխնոլոգիաներ, ուժեղացնել նոր սորտերի ու հիբրիդների սելեկցիայի աշխատանքները, հատուկ ուշադրություն նվիրել եգիպտացորենի վաղահաս և միջահաս հիբրիդների, առվույտի, կորնգանի, շաբդարի, հլածուկի, մարգագետնաարոտավայրային խոտաբույսերի բարձրորակ սորտերի ստեղծմանը, ինչպես նաև բուսական սպիտակուցի ավելացման միջոցառումների կոմպլեքսի մշակմանը։

Այսօր մեր գիտահետազոտական կազմակերպությունների առջև նոր խնդիր է դրվում՝ մեծ ուժերով և ավելի լայնորեն զբաղվել կերային կուլտուրա-



ների սելեկցիայի և սերմնաբուծության հարցերով և, որ պակաս կարևոր չէ, դրանք ավելի հետևողականորեն ներդնել արտադրության մեջ։ Հենց այս վերջինն է պակասում մեր գիտահետազոտական շատ կազմակերպությունների։

Այսպես, երկրագործության գիտահետազոտական ինստիտուտն արդեն ստեղծել և առաջարկել է առվույտի և կորնգանի նոր սորտեր, որոնք նախորդների համեմատությամբ 15—20 տոկոսով ավելի բերք են տալիս։ Սակայն ամենուրեք դրանց տարածումը ձգձգվում է։ Իսկ ինչո՞ւ այս ինստիտուտը հարկ եղածին պես չի հետևում իր ստեղծած սորտերի տարածմանը։ Չէ՞ որ ինստիտուտի կոլեկտիվի նպատակը պետք է լինի վերջնական արդյունքը։

Կամ՝ անասնաբուծության և կերարտադրության գիտահետազոտական ինստիտուտը որոշակի քայլեր է արել «Ուզբեկական—100» եգիպտացորենի, արևածաղկի և այլ կերային կուլտուրաների նոր սելեկցիոն սորտերի ներդրման ուղղությամբ։ Ստացված արդյունքները վատ չեն։ Այդ մասին է խոսում նաև սիլոսազանգվածի ավելացումը։

Բայց պե՞տք է, արդյոք, դրանով գործը ավարտված համարել։ Չէ՞ որ վերջնականապես չի մշակվել այդ կուլտուրայի բերքահավաքի տեխնոլոգիան։ Առանձին տնտեսություններ արդեն հրաժարվում են «Ուզբեկական—100» սորտի մշակությունից, այն պատճառով, որ չունեն այդ կուլտուրայի մեքենայական բերքահավաքի համապատասխան տեխնիկա, մանավանդ որ դրա բույսերը չափից ավելի բարձր են։

Գյուղտեխպետկոմը և գյուղատնտեսության մինիստրությունը չգիտես ինչու չեն ներդնում համապատասխան բերքահավաք տեխնիկա։ Գյուղատնտեսության մեքենայացման և էլեկտրիֆիկացման գիտահետազոտական ինստիտուտը նույնպես մի կողմ է քաշվել այդ պրոբլեմից։ Բոլորը սպասում են, որ հարցերը պետք է ուրիշները լուծեն։

Հանրապետությունում հացահատիկի և կերերի արտադրության ավելացումը և դրանց արդյունավետ օգտագործումը պահանջում է մեծ հաստատակամություն ու հետևողականություն։ Մենք հացահատիկի և կերի արտադրության ավելացման աշխատանքը պետք է կատարենք համակարգված, կոմպլեքսային ձևով։ Դա պետք է դառնա յուրաքանչյուր տնտեսության, յուրաքանչյուր կոմունիստի, գյուղական յուրաքանչյուր աշխատավորի գործը, մեր բոլորի գործը։

Ընկերնե՛ր։ Մենք թևակոխել ենք կուսակցության ագրարային քաղաքականության իրականացման մի նոր փուլ։ Դա մեզանից պահանջում է աշխատել ավելի ստեղծագործաբար, սկզբնական կուսակցական կազմակերպությունների աշխատանքը համապատասխանեցնել կուսակցության նոր պահանջներին, կոնկրետ կերպով ձեռնամուխ լինել կոնկրետ խնդիրների լուծմանը, ճիշտ որոշել առաջնահերթ հարցերը, առավել նպատակահարմար, առավել արդյունավետ միջոցներ գտնել վերջնական արդյունքների հասնելու համար։ Մի խոսքով բարձր կուսակցական և պետական մոտեցում ցուցաբերել մեր առջև կանգնած խնդիրների լուծմանը։

Մենք ամենքս պետք է խորապես յուրացնենք այն, որ պարենային պրոբլեմի լուծումը մեր գլխավոր խնդիրներից մեկն է, եթե չասենք՝ ամենագլխավորը։ Այս գործում մենք իրավունք չունենք թույլ տալ անհոգություն, մանավանդ անպատասխանատվություն։ Թե՛ տակտիկական, թե՛ ստրատեգիական տեսակետից պարենային պրոբլեմը հրատապ է։

Անհրաժեշտ է խորապես ըմբռնել, որ պարենային ծրագրի ընդունումը ինքնաբերաբար չի վերացնում պարենային պրոբլեմի սրությունը։ Հարցը կարելի է լուծել միայն կուսակցական կազմակերպությունների, քաղաքի և գյուղի բոլոր աշխատավորների ակտիվ աշխատանքով։ Անհրաժեշտ է հասնել այն բանին, որ հանրապետության յուրաքանչյուր աշխատավորական կոլեկտիվ պարզ պատկերացնի այն ավանդը, որ նա պետք է մուծի պարենային ծրագրի իրականացման գործում և ակտիվ պայքարի նախատեսված առաջադրանքների կատարման համար։ Այստեղ հատուկ դեր է վիճակված մեր սկզբնական կու-

սակցական կազմակերպություններին, որոնք պետք է գլխավորեն կոլեկտիվների պայքարը պարենային ծրագրի կոնկրետ կենսագործման համար։

Պարենային մթերքների արտադրության ավելացման գործում մեր հնարավորությունները պետք է օգտագործել առավելագույն չափով և ավելի նպատակահարմար։

Առավելագույն չափով՝ նշանակում է, որ մեր հողի յուրաքանչյուր կտորը պետք է պտղաբերի, առավել նպատակահարմար՝ նշանակում է, որ մենք պետք է հողն այնպես օգտագործենք, որպեսզի լուծենք մեր գլխավոր խնդիրները։ Այդ խնդիրները մեզ մոտ սահմանվեցին Հայաստանի կոմկուսի վերջին համագումարում։

Մենք պետք է մշակենք գյուղատնտեսական հողատարածությունների օգտագործման խորապես կշռադատված, գիտականորեն հիմնավորված սխեմա, որը նպատակամղված լինի գլխավորապես բնակչության՝ պարենամթերքների, ինչպես նաև վերամշակող արդյունաբերության՝ հումքի պահանջմունքների բավարարմանը։

Այս առնչությամբ հարկ է մեր ղեկավար մարմինների ու կադրերի ուշադրությունը հրավիրել երկու կարևոր հանգամանքի վրա։ Առաջին. այն ամենն, ինչ մենք ծրագրում ենք, պետք է մանրակրկիտ կերպով կշռադատված, ռեալ և գիտականորեն հիմնավորված լինի։ Դա հատկապես վերաբերում է գյուղատնտեսության բնագավառում վարվող ինվեստիցիոն քաղաքականությանը և առաջնահերթ խնդիրների սահմանմանը։ Մենք չպետք է կազմենք մեծադղորդ, հավակնոտ պլաններ։ Երկրորդ. այն ամենը, ինչ նախատեսվում է, պետք է լիովին, կրկնում եմ, լիովին և նշված ժամկետներում իրագործվի։ Կարճ ասած՝ խոսքը վերաբերում է և՛ իրազեկությանը, և՛ որակյալ պլանների ու ծրագրերի մշակմանը, և՛ բարձր պատասխանատվությանն ու կատարողական կարգապահությանը։

Այժմ օրվա խնդիրների մասին։

Անհրաժեշտ է բոլոր ուժերը գործադրել անկորուստ հավաքելու աճեցված բերքը, ապահովելու բուսաբուծության և անասնաբուծության մթերքների արտադրության և պետությանը դրանց վաճառքի պլանների անվերապահ կատարումը։ Հարկավոր է ամենուրեք արագացնել հացահատիկային և մյուս գյուղատնտեսական կուլտուրաների բերքահավաքի տեմպերը։

Կենտվիճվարչության տվյալներով սեպտեմբերի 27-ի դրությամբ հացահատիկային և հատիկալոբազգի կուլտուրաների բերքը հավաքվել է 121,5 հազար հեկտար տարածությունից, որը կազմում է պլանի 87,9 տոկոսը։

Դանդաղ տեմպերով է կատարվում նաև աշնանացան կուլտուրաների ցանքը, որի պլանը կատարվել է 65 տոկոսով։ Աշնանացան կուլտուրաների ցանքը ձգձգվում է Գորիսի, Եղեգնաձորի, Ղափանի, Նոյեմբերյանի, Թումանյանի և այլ շրջաններում։ Անհրաժեշտ է ամենուրեք արագացնել և ավարտել այդ աշխատանքները։

Հատուկ ուշադրություն պետք է նվիրել կերի կուտակումն ավարտելուն։ Խոտի կուտակման առաջադրանքը հանրապետությունում կատարվել է 93,7 տոկոսով, ծղոտինը՝ 80,2 տոկոսով, պատրաստի սիլոսինը՝ 61,9 տոկոսով։ Անհրաժեշտ է առաջիկա մեկ-երկու շաբաթում ավարտել կերի կուտակումը, դրա փոխադրումը ձմեռանոցները։ Պետք է միջոցներ ձեռնարկել կերի հուսալի պահպանման և խնայողական ծախսման նպատակով։

Հարկավոր է նաև մշակել և իրականացնել անասնապահական շինությունների կառուցման ու նորոգման, ֆերմաների տեխնիկայի ու սարքավորումների նորոգման տեմպերն արագացնելու կոնկրետ միջոցառումներ, ապահովել անասունների հաջող ձմեռումը, անասնապահական մթերքների արտադրության ու մթերումների ավելացումը։

Մի քանի խոսք մսի մթերումների մասին։ Այդ աշխատանքն այս տարի անբավարար են կատարում հատկապես «Հայանասնարդի» և «Հայթռչնարդի» տնտեսությունները. զգալիորեն պակաս չափով միս է գնվում բնակչությու-



նից։ Այդ հարցի վերաբերյալ խորհրդակցություն գումարվեց Հայաստանի կոմկուսի Կենտկոմում, որտեղ մշակվեցին մսամթերումների տարեկան պլանների անվերապահ կատարման միջոցառումներ։ Բոլոր շրջանները պետք է անպայման կատարեն պետությանը միս վաճառելու սահմանված տարեկան պլանները։ Հանրապետության Մինիստրների խորհուրդը պետք է սիստեմատիկաբար վերահսկի մսի մթերումների կատարման ընթացքը և լուծի դրա հետ կապված բոլոր հարցերը։

Հանրապետության տնտեսություններում աճեցվել է խաղողի և կարտոֆիլի լավ բերք։ Սկսվել և հաջողությամբ առաջ է տարվում դրանց բերքահավաքը։ Համապատասխան շրջկոմները և ժողովրդական դեպուտատների շրջանային սովետների գործկոմները պետք է գործնական միջոցներ ձեռնարկեն՝ արագացնելու խաղողի ու կարտոֆիլի բերքահավաքը և այն անկորուստ կատարելու։

Մի շարք տեղերում ձգձգվում է պտուղբանջարեղենի և կարտոֆիլի տեվական պահպանության գործը։ Պտուղբանջարեղենի տնտեսության, գյուղատնտեսության մինիստրությունները, կուսակցության համապատասխան շրջկոմները և ժողովրդական դեպուտատների շրջանային սովետների գործկոմները պետք է արագացնեն այդ աշխատանքները և ապահովեն հանրապետության համար սահմանված առաջադրանքների կատարումը։

Մենք ռեալ հնարավորություններ ունենք լիովին կատարելու գյուղատնտեսության բնագավառի պլաններն ու սոցիալիստական պարտավորությունները և մեր պարտքն է նյութականացնել դրանք։

Երրորդ եռամսյակը վատ ցուցանիշներով չփակեցին արդյունաբերության աշխատողները։ Ապրանքային արտադրության 9 ամսվա պլանը նրանք կատարել են 102,9 տոկոսով, արտադրության ծավալների աճը կազմում է 104,6 տոկոս։ Գերակատարվել է արտադրանքի իրացման պլանը։ Ապահովված է որակական ցուցանիշների կատարումը։

Մեր արդյունաբերության աշխատողները պետք է ավելի մեծացնեն ապրանքային արտադրանքի արտադրության ծավալները այն հաշվով, որպեսզի երաշխավորվի սոցիալիստական պարտավորություններով նախատեսված բարձր բնագծերի նվաճումը։

Հանրապետության շինարարները պետք է օգտագործեն բոլոր հնարավորությունները բնակտարածության, դպրոցների, մանկական նախադպրոցական հիմնարկությունների, հիվանդանոցների և պոլիկլինիկաների գործարկման պլանները լիովին կատարելու, արտադրական օբյեկտների գործարկման սոցիալիստական պարտավորությունների կատարումն ապահովելու համար։

Իրենց պլաններն ու սոցպարտավորությունները հաստատուն կերպով են կատարում տրանսպորտի, կապի, կենցաղային սպասարկման աշխատողները։ Անհրաժեշտ է բոլոր ջանքերը մոբիլիզացնել շտկելու համար դրությունը առևտրի պլանների կատարման գործում։

Մի խոսքով, մեր բոլոր աշխատավորական կոլեկտիվները պետք է առավելագույն չափով մոբիլիզացնեն իրենց ջանքերը, որպեսզի մեր հանրապետությունը լիովին կատարի 1982 թվականի առաջադրանքներն ու սոցիալիստական պարտավորությունները։

Հանրապետության սկզբնական կուսակցական կազմակերպություններում ընթանում է հաշվետու-ընտրական կամպանիան։ Ինչպես նշեց ընկ. Լ. Ի. Բրեժնևը Բաքվում ունեցած իր ելույթում, կուսակցական կոմիտեները պարտավոր են հասնել այն բանին, որ կոմունիստների յուրաքանչյուր ժողով անցնի գործարարության ու կոնկրետության, ձեռք բերված արդյունքների քննադատական գնահատման նշանաբանով, կոմունիստներին, աշխատավորական կոլեկտիվներին իրենց առջև ծառացած խնդիրների, մեր աշխատանքի բարելավման, կուսակցության տնտեսական ու սոցիալական քաղաքականության կենսագործման համար մոբիլիզացնելու նշանաբանով։

Ընկերնե՛ր։

Այս տարի Սովետական Սոցիալիստական Հանրապետությունների Միության կազմավորման 60-ամյակի տարին է։ Սովետական Միության փառավոր հոբելյանը խոշոր իրադարձություն է մեր հասարակական-քաղաքական կյանքում, որը մենք կնշենք որպես բարեկամության ու եղբայրության մեծ, պայծառ տոն։ Սովետական մարդիկ այդ նշանակալի տարեթիվը դիմավորում են պատմության մեջ առաջին միասնական բազմազգ սոցիալիստական պետության կերտողների լավատեսությամբ ու հպարտությամբ, այն պետության, որը մեկընդմիշտ հարազատացրել է երկրի բոլոր ազգերին ու ազգություններին և նրանց դուրս բերել կոմունիստական հասարակության համատեղ կառուցման մեծ ճանապարհը։

Մեր միասնական, բազմազգ պետության փառավոր հոբելյանը նոր հաջողություններով նշանավորելը հանրապետության բոլոր սկզբնական կուսակցական կազմակերպությունների, բոլոր աշխատավորական կոլեկտիվների կարևոր խնդիրն է։

Մենք վստահ ենք, որ կուսակցական կազմակերպության ղեկավարությամբ հանրապետության աշխատավորներն արժանավայել կերպով կդիմավորեն բարեկամության ու եղբայրության տոնը, լիովին կկատարեն հոբելյանական տարվա պլանային առաջադրանքները և ստանձնած սոցիալիստական պարտավորությունները։

Թույլ տվեք ՍՄԿԿ Կենտկոմին, ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար ընկեր Լ. Ի. Բրեժնևի գլխավորած Կենտկոմի քաղբյուրոյին հավաստիացնել, որ հանրապետության կոմունիստները, բոլոր աշխատավորները իրենց բոլոր ուժերը կգործադրեն՝ հաջողությամբ իրականացնելու ՍՄԿԿ XXVI համագումարի որոշումները, կուսակցության ագրարային քաղաքականությունը, իրենց ավանդը կմուծեն մեր մեծ Հայրենիքի տնտեսական ու պաշտպանական հզորության ամրապնդման գործում։ (Երկարատև ծափահարություններ)։

---



# ԳԱՂԱՓԱՐԱԽՈՍԱԿԱՆ ՊԱՅՔԱՐԸ ԵՎ ԿՈՒՍԱԿՑԱԿԱՆ ՄԱՄՈՒԼԸ

**Կ. Լ. ԴԱԼԼԱՔՅԱՆ**
ՀԿԿ Կենտկոմի քարտուղար

ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ XXVI ՀԱՄԱԳՈՒՄԱՐԸ արձանագրեց. «Փաստ է նաև գաղափարախոսական պայքարի նկատելի սրումը։ Արևմուտքի համար այն չի հանգում գաղափարների հակամարտության։ Նա գործի է դնում միջոցների մի ամբողջ սիստեմ, որոնց նպատակն է քայքայել սոցիալիստական աշխարհը, խարխլել այն։ Իմպերիալիստներն ու նրանց կամակատարները սիստեմատիկաբար թշնամական կամպանիաներ են մղում սոցիալիստական երկրների դեմ։ Նրանք արատավորում և խեղաթյուրում են այն ամենը, ինչ տեղի է ունենում այդ երկրներում։ Նրանց համար ամենագլխավորն է՝ մարդկանց ետ վանել սոցիալիզմից»։ Ընկեր Լ. Ի. Բրեժնևի այս խոսքերը հստակորեն բնութագրում են ինչպես արդի իրադրությունը, այնպես էլ իմպերիալիստների հետապնդած նպատակը և դրան հասնելու համար կիրառած միջոցները։

Յուրատեսակ սևհարյուրակային շվայտ խրախճանք, հակասովետիզմի ու հակակոմունիզմի սանձարձակություն, մարդատյացության պսիխոզ, մամուլի, հեռուստատեսության, ռադիոդիվերսանտների, տուրիզմի, կուլտուր-մարզական փոխանակման, հակասոցիալիստական վտարանդիության ու զանազան թափթփուկների օգտագործում՝ այս ամենը կոչված է ստեղծելու մի յուրատեսակ միասնական ճակատ՝ աշխարհը սառը պատերազմի ժամանակներին վերադարձնելու նպատակով։

Այդ իսկ պատճառով սովետական մարդկանց գաղափարական կոփվածքը խորացնելու անհրաժեշտության, նրանց մեջ գաղափարախոսական խորթ ազդեցությունների նկատմամբ անհաշտվողականության, ակտիվ դիրքորոշում ձևավորելու ու դաստիարակելու վերաբերյալ կուսակցության համագումարի և ՍՄԿԿ Կենտկոմի հայտնի որոշումների առաջադրած խնդիրը ժամանակի ամենահրատապ պահանջներից մեկն է։

Այդ գործում կարևորագույն տեղ է հատկացվում կուսակցական մամուլին։ «Правда» թերթի, «Коммунист», «Партийная жизнь» հանդեսների, ՍՄԿԿ Կենտկոմի այլ հրատարակությունների գործունեությունը խորապես հագեցած է բուրժուական գաղափարախոսության դեմ պայքարի, սովետական մարդուն դասակարգայնության և կուսակցականության, պրոլետարական և սոցիալիստական ինտերնացիոնալիզմի ոգով դաստիարակելու տեսական պրոբլեմների մշակման ու զարգացման, դրա գործնական փորձի բացահայտման, խորթ գաղափարական հայացքների ու բարոյականության հանդեպ անհաշտ մարտիկի, գիտակից հակառակորդի հատկանիշներով նրան տոգորելու ծրագրով։

Այդ արժեքավոր փորձը հուսալի կողմնացույց է մեր հանրապետության
մամուլի օրգանների աշխատանքում։ Հաշվի առնելով այդ, Հայաստանի կո-
մունիստական կուսակցության Կենտկոմը կուսակցական մամուլի գործունեու-
թյունը մշտապես նպատակամղում է ՍՄԿԿ և սովետական պետության ներ-
քին ու արտաքին քաղաքականության ակտիվ պաշտպանության հունով, կոնկ-
րետ օգնություն է ցույց տալիս խմբագրություններին՝ որոշելու հրատապ ու
հեռանկարային թեմաներն ու խնդիրները, շեշտը դնելով ո՛չ միայն հակառա-
կորդի զրպարտանքն ու հերյուրանքները անմիջականորեն բացահայտելու և
մերկացնելու, այլև սոցիալիստական շինարարության մասին հրապարակվող
նյութերի կոնտրպրոպագանդիստական լիցքի վրա, մի հանգամանք, որն ար-
տացոլվում է նրանց ընթացիկ և հեռանկարային պլաններում։

Մեր սոցիալիստական կյանքի կացութաձևն իսկ սովետական մարդկանց
մեջ մշակում է համապատասխան գաղափարական-դասակարգային կենսա-
դիրքորոշում։ Նշանակում է, այդ կացութաձևի կատարելագործումը, ողջ էկո-
նոմիկայի գործառնության ու դրա կառավարման կատարելագործումը ո՛չ
միայն տնտեսական ու սոցիալական, այլև վերին աստիճանի գաղափարաքա-
ղաքական խնդիր է։

Պատահական չէ, որ հակակոմունիզմն ու հակասովետիզմն այսօր, փոքր-
ինչ դեն նետելով 70-ական թվականների կեսերի համար մոդայիկ «մարդու
իրավունքների պաշտպանությունը» և դեմոկրատիայի պրոբլեմները, փորձում
են ամենից առաջ նենգամտորեն օգտագործել մեր տնտեսական գործունեու-
թյան մեջ եղած թերությունները, դրանք դեմագոգիկ կերպով ներկայացնելով
որպես սոցիալիստական հասարակարգին ի սկզբանե հատուկ երևույթներ։

Ուստի բացարձակապես ճիշտ է, որ մեր մամուլի օրգանների հիմնական
թեման, լրագրական-ժուռնալային ծավալների մեծագույն մասը հատկացվում
է սոցիալ-տնտեսական զարգացման պլանների կատարման ու գերակատար-
ման համար մղվող պայքարի հարցերին, սոցիալիստական մրցության ըն-
թացքի ու արդյունքների բացահայտմանը, նվաճումների ցուցադրմանը, թե-
րությունների քննադատությանը, սոցիալիստական շինարարության պրոցեսում
ծագող հրատապ պրոբլեմների փաստարկված պարզաբանմանը, մի խոսքով՝
մեր առօրյա կյանքի ճշմարտությանը։

Մեր իրականության հավաստի պատկերը, մեր շինհրապարակների, գոր-
ծարանային արտադրամասերի, ֆերմաների ու դաշտերի եռուն կյանքը, մեր
իդեալների իրականացման վերաբերյալ շարքային աշխատավորի հոգածու-
թյունն իրոք արժե հասցնել ո՛չ միայն բոլոր սովետական մարդկանց, այլև
բոլոր նրանց, ովքեր դաժանորեն շահագործվում են իմպերիալիզմի լծի տակ։
Դա՝ այդ ճշմարտությունը, մի սարսափելի զենք է իմպերիալիստների դեմ,
և հակառակորդի պրոպագանդայի նպատակներից մեկն է՝ լռությամբ մատ-
նել, կեղծել այդ ճշմարտությունը, որը ամեն օր գունագեղ կերպով բացա-
հայտվում է մեր մամուլի էջերում։ Հարկ չկա մեկ առ մեկ թվարկել նրա հիմ-
նական սյունակները, վերապատմել մամուլի ելույթների հիմնական բովան-
դակությունը, բայց դրանցից մի քանիսի մասին արժե հիշատակել։ Ընթեր-
ցողների լայն շրջան են ստեղծել ՀԿԿ Կենտկոմի օրգաններ «Սովետական Հա-
յաստան» և «Коммунист» թերթերի հատուկ բաժինները՝ «Բաց նամակի օր»
վերտառությամբ, ինչպես նաև «Բրիգադային մանկավարժություն», «էկոնո-
միկայի բարոյական ասպեկտը» և այլ խորագրերը։ Գլխավորն այն է, որ
դրանք ապահովում են հետադարձ խոր կապը, խմբագրությունների առջև
դնում են նորանոր պրոբլեմներ, որոնց լուծման գործում շահագրգռված են
բազմաթիվ աշխատավորներ։

Նման շահագրգռվածությունն էր, որ Աշտարակի շրջանի Սասունիկի սով-
խոզի մի խումբ հողագործների դրդեց նամակ գրել «Սովետական Հա-
յաստան» թերթին։ Նամակը վերնագրված էր՝ «Հողը մեր հարստությունն է»։
Այն կյանքի կոչեց հողը խնամքով օգտագործելու համար մի ամբողջ շար-
ժում, իսկ հողի նման օգտագործումը այսօր հանրապետությունում դարձել է
պարենային ծրագրի իրականացման կարևորագույն լծակներից մեկը։ Նամա-
կի հրապարակման օրից սկսած՝ մի քանի տարի շարունակ թերթը ընթերցողի



մեջ դաստիարակում է հողի տիրոջ զգացում։ Հողի արդյունավետ մշակման
գաղափարը մարմնավորվում է արյունով ու քրտինքով ոռոգված հողի պաշտ-
պանության գաղափարի, երկրի պաշտպանության հայրենասիրական վեհ գա-
ղափարի մեջ։

Պատմության կողմից դատապարտված իմպերիալիզմը, ինքնապահպան-
ման ճիգ ու ջանք գործադրելով, դիմում է զանազան մեքենայությունների՝ ար-
դարացնելու համար սպառազինությունների մրցավազքի քաղաքականությու-
նը։ Նման տակտիկան նոր չէ։ Դեռ անցյալ դարի վերջին ԱՄՆ-ը մտադրվել էր
կլանել Կուբան։ Հարկավոր էր գաղափարախոսական տեսակետից նախապատ-
րաստել այդ ագրեսիան։ Եվ ահա «Նյու Յորք ջոռնել» թերթի տեր Ուիլյամ
Ռանդոլֆ Հերստը 1897 թ. Հավանայի իր թղթակցին ուղարկում է մի հեռագիր,
որը դարձել է պատմության սեփականությունը. «Դուք ապահովում եք լուսա-
նկարները, իսկ ես կսարքեմ պատերազմը»։ Կուբայում կատարված սարսափ-
ների մասին լուսանկարներն իրոք ապահովվեցին, իսկ Հերստի ու ընկերու-
թյան տիպի ամերիկյան պարագլուխներն իրոք սանձազերծեցին պատերազմը։
ԱՄՆ-ը կլանեց Կուբան, միաժամանակ նաև Ֆիլիպինները։

Իսկ այժմ միջուկային սպառազինության քաղաքականությունը հիմնա-
վորվում է սովետական սպառնալիքի մասին տխրահռչակ թեզիսով։ Առհասա-
րակ այդ թեզիսը այնքան էլ նոր չէ։ Սովետական սպառնալիքը կապիտալիստ-
ների աչքերին երևում է Հոկտեմբերյան մեծ հեղափոխության հաղթանակի
առաջին իսկ օրվանից։

1918 թվականի սեպտեմբեր։ Մեծ Բրիտանիայի նորին մեծություն թա-
գուհին հեռագիր է ստանում Սովետական Ռուսաստանի իր դեսպանորդից։
Այնտեղ ասված էր. «Եթե Ռուսաստանում բոլշևիզմին անհապաղ վերջ չտրվի,
ապա սպառնալիք կառաջանա ամբողջ աշխարհի քաղաքակրթության համար»։

1941 թվականի հունիսի 22։ Հիտլերը, դիմելով գերմանական ազգին,
ասում է, որ իբր ՍՍՀՄ-ը «շարունակ ձգտում է մեր ու Եվրոպայի մյուս ժո-
ղովուրդներին իր տիրապետությունը պարտադրել ո՛չ միայն գաղափարական
միջոցներով, այլև ամենից առաջ ռազմական ուժի օգնությամբ»։

1946 թվական։ Ֆուլտոն, Միսուրիի նահանգ, ԱՄՆ։ Չերչիլը իրեն ծափա-
հարող ԱՄՆ-ի պրեզիդենտ Տրումենի ներկայությամբ հայտարարում է. «Կո-
մունիստական կուսակցությունները, կամ «հինգերորդ զորասյուները» ամե-
նուրեք սպառնալիք են քրիստոնեական քաղաքակրթության համար»։

1954 թվականի մայիս։ Կոնրադ Ադենաուեր. «Հայտնի է, թե ինչ է ռու-
սական կոմունիզմը, գիտենք նաև, թե ինչ է նշանակում դառնալ ռուսական
արբանյակ. դա թելադրում է քրիստոնեության հիման վրա աճած կուլտուրան
փրկելու անհրաժեշտություն»։

Կարելի կլիներ հակակոմունիստական ու հակասովետական ճարճատյունի
այս ցուցակը շարունակել՝ «ասույթներ» բերելով Դալեսից մինչև Քարտերը,
մինչև այդ բնագավառի ներկայիս չեմպիոն Ռեյգանը, որն իր կյանքի նպա-
տակն է դարձրել «կոմունիստական ագրեսիայից» «քաղաքակրթությունը պաշտ-
պանելը»։ Զանազան երկրներում նրան ձայնակցում են տարբեր տիպի խա-
վարամոլներ՝ ֆաշիստացող սիոնիստ Բեգինից մինչև երկաթյա լեդի Մարգրետ
Թետչերը։

Ի դեպ՝ Թետչերի մասին։ Պահպանողականների այդ պարագլուխը, իշ-
խանության հասնելով, նոր ուժով հարձակվեց հյուսիսային իռլանդացիների
ազատագրական շարժման վրա, կրկնապատկված եռանդով սկսեց խուզել
Անգլիայի բանվոր դասակարգի դեմոկրատական նվաճումները, նացիոնա-
լիստական ու շովինիստական ոգևորության մի իսկական խարույկ բորբոքեց
Արգենտինայի սուվերեն իրավունքների դեմ սանձազերծած էքսպանսիոնիս-
տական կամպանիայի կապակցությամբ, ամրապինդ լծվեց հակասովետիզմի
ու հակակոմունիզմի մարտակառքին։

Բուրժուական պրոպագանդայի, սովետական սպառնալիքի մասին առաս-
պելի իմպերիալիստական էության մերկացումը կուսակցական մամուլի ա-
մենօրյա խնդիրն է։ Վերը հիշատակված թերթերը, «Լենինյան ուղիով» և «Կու-
սակցական խոսք» հանդեսները իրենց հրապարակումներում բացահայտում

Կուսակցական մամուլը համոզիչ կերպով, վառ օրինակներով, պատմական զուգահեռներով, կապիտալիզմի օրոք ապրող փոքր ազգերի ճակատագրի հետ համեմատություններով ցույց է տալիս Լ. Ի. Բրեժնևի հետևյալ մտքի խորապես արդարացիությունը. «Սովետական Հայաստանի պատմական փորձը կրկին ու կրկին համոզում է, որ ազգի իսկական ծաղկումը ձեռք է բերվում ոչ թե ազգային պարփակման ու մեկուսացման ուղիներով, այլ սոցիալիստական ազգերի ու ժողովուրդների եղբայրական ընտանիքում՝ փոխադարձաբար միմյանց հարստացնող ներդաշնակ զարգացման շնորհիվ»։

Սովետական մամուլի գործունեության մեջ կարևորագույն նշանակություն ունի տնտեսական և կուլտուրական շինարարության մարզում, ողջ աշխարհում խաղաղության պայքարի կազմակերպման, մարքսիզմ-լենինիզմի տեսության զարգացման, սովետական մարդկանց գաղափարական զինման, բուրժուական գաղափարախոսության դեմ մղվող պայքարին ուղղություն տալու և ղեկավարելու գործում ՍՄԿԿ-ի հարաճուն դերի պրոպագանդումը։ Սովետական հասարակության կյանքում լենինյան կուսակցության աճող դերը քաջ հայտնի է նաև մեր գաղափարախոսական հակառակորդին։ Պրինստոնի համալսարանի պրոֆեսոր Ջ. Քենանը մի անգամ հայտարարել է, որ եթե երբևիցե հաջողվի խախտել ՍՄԿԿ-ի միասնությունը, ուժն ու համախմբվածությունը, ապա «Սովետական Ռուսաստանը կարող է ուժեղագույն ազգային հասարակություններից մեկից արագորեն վերածվել ամենաթույլ և աննշան ազգային հասարակություններից մեկի»։

Հանրապետության կուսակցական մամուլը հետևողականորեն մերկացնում է թշնամական պրոպագանդայի մեքենայությունները ՍՄԿԿ-ի դեմ։ «Լենինյան ուղիով» հանդեսի նյութերում, օրինակ, կարելի է հանդիպել ոչ քիչ թվով գիտական մշակումների, որոնք բացահայտում են «պլյուրալիստական» սոցիալիզմի տեսության էությունը, դրանցում մերժվում են մեզ կուսակցության լիբերալ մոդելներ պարտադրելու, կուսակցության կազմակերպական կառուցման լենինյան սկզբունքները, մասնավորապես, դեմոկրատական ցենտրալիզմի սկզբունքը դեն շպրտելու, կոմունիստական շարժումը խարխլելու և կազմալուծելու բուրժուական սովետագետների փորձերը։

Հակակոմունիզմի և հակասովետիզմի դեմ անհաշտ պայքարը ջերմ արձագանք ու հետևողական պաշտպանություն է գտնում աշխատավորական մասսաների կողմից։ Այդ մասին են վկայում այն բազմաթիվ նամակները, որ ստանում են ինֆորմացիայի և մամուլի օրգանների խմբագրությունները։ Դրանցում գլխավորն այն է, որ ընթերցող հասարակայնությունը պահանջում է բարձրացնել հրապարակումների որակը, դրանց հաղորդել ավելի մեծ հարձակողականություն։ Համապատասխան ինֆորմացիայի պլանաչափությունն ու սիստեմատիկությունն ապահովելու անհրաժեշտության մասին քանիցս հարց են բարձրացրել կուսակցական-քաղաքական կրթության ցանցի պրոպագանդիստները։ Ըստ երևույթին, ժամանակն է մտածել կուսակցական լուսավորության ցանցի պրոպագանդիստների և ունկնդիրների լայն շրջանի համար մայրենի լեզվով հատուկ բյուլետեն հրատարակելու մասին։

Գաղափարախոսական պայքարը հասարակական կեցության երկու սիստեմների գոյության օրինաչափ հետևանքն է։ Բայց սոցիալիստական սիստեմի վաթսունհինգամյա գոյության ընթացքում բուրժուազիան ոչինչ չկարողացավ հակադրել կոմունիստական վեհ իդեալներին։ Ահա ինչու նա գաղափարախոսական հակամարտությունը ննենգափոխում է գաղափարախոսական դիվերսիայով, սոցիալիստական հասարակարգը խարխլելու, քայքայելու փորձով։ Բուրժուազիայի գաղափարախոսներն իրենք են խոստովանում իրենց փիլիսոփայական ըմբռնումների աղքատության, կապիտալիստական իդեալների բացարձակ սնանկության փաստը։

Բուրժուական գաղափարախոս Հենրի Ուոլլիչը՝ բանկերի ֆեդերալ սիստեմի կառավարիչներից մեկը, Ազատության գինը գրքում գրում է. «Կոմունիզմը մի հրեշավոր ինտելեկտուալ կառուցվածք է, որ բազում տասնամյակների ընթացքում ստեղծել են առաջնակարգ մտքերը այնպիսի մի ներքին տրամաբանությամբ ու հետևողականությամբ, որոնց կապիտալիզմը կարող է



միայն նախանձել։ Միջին ամերիկացին, որը ռուսի հետ քննարկում է համապատասխան սիստեմների արժանիքները, շուտով պետք է իրեն չափազանց շշմած զգար, եթե միայն չի պատկանում բացառիկ հասկացող մարդկանց կարգին։ Իսկ ամերիկացի տնտեսագետը փորձված դիալեկտիկի՝ մարքսիստի, հետ երես առ երես, թերևս, ավելի դժվարին դրության մեջ լինի նման բանավեճում»։

Ջ. Դալես. «Մենք, կարծես, ընդունակ չենք ձևակերպելու մեր դարաշրջանի փիլիսոփայության հիմունքները, որը վկայեր խոր համոզվածության մասին և աչքի ընկներ հրապուրիչ մեծ ուժով»։

Գրինվոլտ՝ ամերիկյան Դյուպոն ընկերության պրեզիդենտ. «Միացյալ Նահանգները սոցիալական նոր գաղափարների աղաղակող կարիք են զգում ո՛չ միայն ներկայիս պահանջմունքները բավարարելու, այլև վաղվա պահանջմունքներին նախապատրաստվելու համար»։

Պ. Քեմպբել և Պ. Հովարդ— «բարոյական վերազինման շարժման» գաղափարախոսներ. «Գաղափարախոսություն ունեցող մարդը իր կողմն է գրավում գաղափարախոսությունից զուրկ մարդուն։ Այդ է կոմունիզմի ուժի գաղտնիքն արդի աշխարհում։ Գաղափարախոսությունից զուրկ մարդը երբեք չի կարողանա իր կողմը գրավել գաղափարախոսություն ունեցողին։ Այդ է մեր ժամանակի դեմոկրատիայի (այսինքն՝ բուրժուական հասարակության— Կ. Դ.) փլուզման գաղտնիքը»։

Անդրե Բոֆր, ֆրանսիացի գեներալ. «Այն ժամանակ, երբ սովետները գիտեն, թե ուր են գնում, Արևմուտքը չունի պատմական առաջընթացի փիլիսոփայական կուռ ըմբռնում, այլ դա փոխարինում է էկլեկտիկ ու պրագմատիկ սխեմաների մի կոնգլոմերատով, ահա ինչու ժամանակակից արևմտյան գիտության ջանքերը պետք է ուղղված լինեն առաջին հերթին այդպիսի փիլիսոփայական ըմբռնում մշակելուն»։

Ջանքեր գործադրվում էին։ Եվ բազմիցս, ըստ որում, ֆինանսական ու նյութական առասպելական միջոցների ներդրմամբ։ Եվ դրա հետևանքով ծընունդ առավ «ապագաղափարախոսականացման» տեսությունը։ Բուրժուազիան գաղափարախոսությունը հայտարարել է որպես հասարակական շարժման արգելակ։ Դրա դարը, նրանց ասելով, անցել է։ Այն մոռացության է մատնվել ինդուստրիալ դարաշրջանի հետ միասին, որը ծնել է իշխանություն ունեցողների համար այնքան ատելի գիտական կոմունիզմը։ Սկսվել է գիտատեխնիկական հեղափոխության դարը։ Գաղափարախոսությունը տեղը զիջեց ինֆորմացիային, սոցիալական կանխատեսմանը։ Այսուհետև գործում են միայն «խիստ գիտական» փաստարկները և թո՛ղ կորչեն գաղափարախոսական փաստարկները, թո՛ղ կորչեն դասակարգերը և առավել ևս՝ դասակարգային փաստարկները։

Գաղափարախոսության ոլորտում սնանկությունը հանգեցրեց փիլիսոփայական բանդագուշանքի, որը սակայն պահպանվում է բուրժուական պրոպագանդայի բոլոր միջոցներով, և դրա մերկացումը մեր մամուլի առաջնահերթ խնդիրն է։ Քննադատելով այդ հակագիտական ըմբռնումները, «Լենինյան ուղիով» հանդեսը համոզիչ կերպով ցույց է տվել, որ ժամանակակից բուրժուական փիլիսոփայությունը ի վիճակի չէ դառնալու գործողության փիլիսոփայություն մարդու համար։ Մամուլի օրգանների նյութերում մերկացվում են բուրժուական գաղափարախոսների փորձերը՝ «ապագաղափարախոսականացման» դրոշի ներքո սքողելու դասակարգային հակասությունները և դասակարգային պայքարը։

«Ապագաղափարախոսականացման» հիման վրա բուրժուազիան պայքարը տեղափոխում է հոգեբանական պատերազմի ոլորտը։ Նա արդեն դիմում է ոչ թե բանականության փաստարկներին, այլ նախապաշարմունքներին, ձգտում է ոչ թե ապացուցել, այլ ներշնչել, ձեռնածություն անել մարդկանց գիտակցությունով ու վարքագծով։

«Ապագաղափարախոսականացումը» դարձել է այսպես կոչված «սոցիոլոգիական պրոպագանդայի», այսինքն՝ սպառողական հոգեբանության դաստիարակության տեսական բազան։ Նման դաստիարակության օբյեկտը ամ-

բոխն է, մասսան, և այն նպատակ է հետամտում մասսայական գիտակցության մեջ հաստատել բուրժուական ապրելակերպի նմանակներ, մասսաների գիտակցությունից առավելագույն չափով ջնջել ամեն մի պատկերացում վեհի, իսկական գեղեցկի ու հերոսականի մասին, դրանում ամրապնդել քաղքենու նմանակը, որի համար գոյություն ունի միայն մի դպրոց՝ կենսական արժեքների քաղքենիական դպրոցը՝ իր տունը, իր հողակտորը, իր ավտոմեքենան, այդ գիտակցությունը զրկել այն իդեալականի ընկալումից, որն ի վիճակի է մարդուն բարձրացնել լճացած առօրեականությունից։

Պրոֆեսոր Ռ. Հայլբրոները իր Բիզնեսի քաղաքակրթության անկումը գրքում գրել է. «Հարցրեք նյութապես իր ծնողներից ավելի լավ ապրող ամերիկացուն՝ ավելի երջանի՞կ է ապրում արդյոք նա, ավելի իմաստո՞ւն է դարձել արդյոք, որ ստանում է ավելի շատ ինֆորմացիա։ Բնավորությամբ ավելի հաստատակամ դարձե՞լ է արդյոք նա այն բանի հետևանքով, որ կուշտ է ու հագնված։ Տվեք այդ հարցերը, և դուք կտեսնեք բիզնեսի քաղաքակրթության ներքին դատարկությունը։ Իսկ որտեղի՞ց է գալիս դա։ Ամենից առաջ այն ծնում է անձնային և դրամական արտահայտություն չունեցող արժույթները դրամական անդեմ արժեքներով փոխարինելու միտումը... Կապիտալիզմի նյութական նվաճումները անհրաժեշտ բավարարվածություն չեն ծնում, քանի որ բիզնեսը չի գնահատում աշխատանքը... Ուրիշ ոչ մի քաղաքակրթություն թույլ չի տալիս եսասիրությանը՝ այդքան ազդելու կյանքի բոլոր ոլորտների վրա։ Ուրիշ ոչ մի քաղաքակրթություն գրեթե կատեգորիկ իմպերատիվի աստիճանի չի բարձրացրել մարդկային բոլոր հատկանիշներից այդ, թերևս, ամենաստոր հատկանիշը»։

Մասսայական գիտակցությունը լրացվում է մասսայական կուլտուրայի և մասսայական կենցաղի նմանակներով՝ պոպարվեստից մինչև պոպհագուստը, և ստացվում է մի ավարտուն պատկեր՝ ապաքաղաքականացված և գաղափարազուրկ մի ամբոխ, որին կարելի է հմտորեն կառավարել՝ գրգռել ու շիկացներ նրա հույզերը, կամ, անհրաժեշտության դեպքում, շեղել ու հանգստացնել։

Բայց դա դեռ գործի կեսն է։ Մնում է, որ նման ապրելակերպը տարածեն արտասահմանում, մաքսանենգ ճանապարհով այն պարտադրեն ուրիշ խմբերի, հատկապես սոցիալիստական երկրներում, նրանց վարակեն բուրժուական ապրելակերպի նմանակի բացիլով, իրականացնեն խաղաղ նվաճում։

Բուրժուական ապրելակերպի պրոպագանդան, մաքսանենգորեն այն տարածելու փորձերը, իհարկե, առաջին հերթին ռեալ սոցիալիզմի հաջողությունների բուրժուական գաղափարախոսության դասակարգային արձագանքն է, որի նպատակն է բուրժուական հասարակության մոդայի, ճաշակների, վարքագծի մոդելների, արժույթների անգիտակցական յուրացումը որոշ կարգի մարդկանց կողմից։ Եվ գաղտնիք չէ, որ այդ կարգի մարդիկ դեռ չեն վերացել ինչպես մեզ մոտ, այնպես էլ սոցիալիզմի մյուս երկրներում։

Հանրապետության կուսակցական ողջ կազմակերպությունը անողոք պայքար է մղում բացասական երևույթների՝ սոցիալիստական սեփականության հափշտակումների, կաշառակերության, խուլիգանության, սոցիալիստական համակեցության կանոնների խախտումների, դրամաշորթության, անաշխատ եկամուտներով ապրելու, կյանքը վատնելու դեմ և այլն։ Չի թուլանում կուսակցական մամուլի ուշադրությունը այդ պրոբլեմների նկատմամբ, քանի որ նման երևույթներն իսկ հող են ծառայում սպառողական հոգեբանության տարածման համար։ Այդ երևույթները բացատրելով մեր աշխատանքի թերություններով, մամուլը չի ձգտում մեղքը գցել «անցյալի վերապրուկների» վրա, ինչպես այդ հաճախ արվում էր անցյալում, այլ կոնստրուկտիվ առաջարկություններ է անում թերությունները շտկելու, դրանց պատճառները վերացնելու համար։ Այդպես էլ վարվել է «Коммунист» թերթը (1982 թ. սեպտեմբերի 18), որը ««Կապրալ» Պետրոսը «էյր ֆորսից»» ֆելիետոնում սուր ծաղրի ենթարկելով որոշ երիտասարդների ձգտումը՝ անպայման ձեռք բերել անգլերեն մակակարեր ունեցող հագուստ, միաժամանակ լուրջ կշտամբանք է ուղղում թեթև արդյունաբերության այն ձեռնարկությունների հասցեին, որոնք չեն բահաճել մտածել մոդայիկ որակյալ տրիկոտաժե վերնահագուստ թողարկելու մասին։



Մեր երկրում աճում է առողջ, բարձր գաղափարայնության տեր երիտասարդ սերունդ, որը բազմիցս գործով ցույց է տվել իր նվիրվածությունը կոմունիստական իդեալներին։ Երիտասարդության շրջանում տարվող աշխատանքում հարկավոր է ցուցաբերել առավելագույն զգայունություն նրա պահանջմունքների նկատմամբ, ճիշտ ուղղություն տալ նրա հույզերին ու ձգտումներին, միշտ հիշելով Վ. Ի. Լենինի խորհուրդը. Երիտասարդության ինտերնացիոնալ աշխատության մեջ նա գրում էր. «Հաճախ պատահում է, որ հասակավոր և հին սերնդի ներկայացուցիչները չեն կարողանում, ինչպես հարկն է, մոտենալ երիտասարդությանը, որն անհրաժեշտաբար ստիպված է սոցիալիզմին մոտենալ այլ կերպ, ո՛չ այն ճանապարհով, ո՛չ այն ձևով, ո՛չ այն հանգամանքներում, ինչպես իր հայրերը» (ԵԼԺ, հ. 30, էջ 281)։

Այս կապակցությամբ շատ կարևոր է ճիշտ առաջադրել ու լուծել «ավանդույթներ և երիտասարդություն» պրոբլեմը, երիտասարդությանն առաջարկել ու նրան դաստիարակել ժողովրդի առաջադիմական դեմոկրատական ավանդույթներով, կոմունիստական կուսակցության հեղափոխական, աշխատանքային, մարտական ավանդույթներով։ Այդ նպատակներն է հետապնդում նույն «Коммунист» թերթի ««Ավանդույթներ» և ավանդույթներ» խորագիրը, որը սկզբնավորվել է Հայաստանի կոմկուսի Լենինականի քաղկոմի գաղափարախոսական հանձնաժողովի՝ երիտասարդության հետ տարվող աշխատանքի սեկցիայի անդամ, բանվոր Ա. Շիլաջյանի նույնանուն հոդվածից։ Թերթը խիստ կրիվ է մղում քաղքենիության, իրապաշտության, վնասակար հետադիմական վերապրուկների դեմ։ Այդուհանդերձ, դեռևս կուսակցական մամուլի գործունեության թերությունը մնում է աշխատավորական կոլեկտիվներում ծնունդ առնող սոցիալիստական նոր ավանդույթները պաշտպանելու և հաստատելու, կամ կուսակցական կազմակերպությունների հետ նման ավանդույթներ մշակելու և տարածելու ոչ բավարար հետևողականությունը։

Սովետական կուսակցական մամուլի հրապարակախոսությունը իր պատմական զարգացման ընթացքում միշտ աչքի է ընկել պրոպագանդիստական բարձր շիկացածությամբ, հարձակողական ակտիվ ուղղվածությամբ, դեպքերի ու փաստերի օբյեկտիվ գնահատմամբ, ռեալ իրականության անզիջում վերլուծությամբ։ Եվ այսօր նրա հոգածության հիմնական առարկան է մարքսլենինյան գաղափարախոսության տեսության ու պրակտիկայի լուրջ և խոր պարզաբանումը, սոցիալիստական իրականության մեծագույն նվաճման՝ ՍՍՀՄ ժողովուրդների բարեկամության ամրապնդումը, այսօրվա նվաճումները, մեր իրականության վերընթաց զարգացման փաստերը հստակորեն, տրամաբանորեն օգտագործելու, կոմունիստական լուսաշող իդեալների համար պայքարող տոկուն մարտիկների դաստիարակման գործում կուսակցությանն օգնելու, բուրժուական պրոպագանդայի ոտնձգություններին հակահարված տալու և դրանց դեմ հարձակողական գաղափարախոսական պայքար մղելու, սոցիալիստական ապրելակերպում գլխավորը շեշտելու, վառ օրինակներով սովետական սոցիալիստական կարգի առավելությունները պրոպագանդելու կարողությունը։

տնտեսավարման, էկոնոմիկայի հետագա համակողմանի զարգացման, տնտեսական մեխանիզմի և կառավարման կատարելագործման խնդիրները, անչափ կարևորվում է կադրերի, ավելի լայն առումով՝ ամբողջ աշխատավորության տնտեսագիտական կրթության դերը։ Դրա անհրաժեշտությունը համոզիչ կերպով ցույց է տրված ՍՄԿԿ Կենտկոմի, ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի, ՀԱՄԿԽ-ի և ՀամԼԿԵՄ Կենտկոմի՝ «Աշխատավորների տնտեսագիտական կրթության և դաստիարակության հետագա բարելավման մասին» որոշման մեջ։

Ուղեցույց ունենալով այդ որոշումը և ՍՄԿԿ XXVI համագումարի պահանջները՝ շրջկոմը, սկզբնական կուսկազմակերպություններն ու արհմիութենական տեղական կոմիտեները լրջորեն զբաղվում են աշխատավորության տնտեսագիտական կրթության գործը վերակառուցելու և կատարելագործելու հարցերով։ Ուսումնական տարվա ընթացքում մենք ամեն կերպ բարձրացրել ենք արհմիութենական մարմինների, շրջանի տարածքում գտնվող մինիստրությունների և գերատեսչությունների, հիմնարկ-ձեռնարկությունների տնտեսական ղեկավարների պատասխանատվությունը տնտեսագիտական կրթության կազմակերպման գործում։ Էապես ակտիվացել է տնտեսագիտական խորհուրդների աշխատանքը, բարելավվել է խնայողության և տնտեսման հարցերի ուսումնասիրությունը, ստեղծվել և գործում են «Խնայողությունը կոմունիստական հատկանիշ է» և «Խնայողական էկոնոմիկա» դասընթացները։ Վերջերս շրջկոմի բյուրոյում քննարկվեց Կ. Ցետկինի անվան կարի արտադրամիավորման կուսկազմակերպությունում տնտեսագիտական կրթության կազմակերպման մասին հարցը։ Այստեղ տնտեսագիտական ուսուցման օղակներում ունկնդիրների ձեռք բերած գիտելիքները զգալիորեն նպաստել են սոցիալիստական մրցության արդյունավետ կազմակերպմանը, նոր ռեզերվների հայտնաբերմանը, հայրենասիրական նախաձեռնությունների տարածմանը։ Խրախուսելի ձեռնարկումների հեղինակներ են դարձել տնտեսագիտական ուսուցման բազմաթիվ ունկնդիրներ, ովքեր պարապմունքների ժամանակ ստացած գիտելիքները կարողանում են վերածել պրակտիկ գործերի, ցուցաբերել աշխատանքի նկատմամբ կոմունիստական վերաբերմունքի լավագույն օրինակներ։

Կ. Ցետկինի անվան կարի արտադրամիավորման բանվորուհի, ՀՍՍՀ Գերագույն սովետի դեպուտատ Ք. Իսկանդարյանը, օրինակ, հանդես է եկել խնայված նյութերի հաշվին արտապլանային արտադրանք թողարկելու նախաձեռնությամբ։ Նման նախաձեռնությունների հեղինակներ են նաև «Գարուն» կարի արտադրամիավորման բանվորուհի, ՍՄԿԿ XXVI համագումարի պատգամավոր Է. Թությանը, ՀՍՍՀ Գերագույն սովետի դեպուտատ Ք. Սրմբատյանը, գինու կոմբինատի առաջավոր բանվորուհի, սոցիալիստական աշխատանքի հերոս Ա. Ֆրանգուլյանը և շատ ուրիշներ։

Շրջանային կոմիտեն և սկզբնական կուսկազմակերպությունները այսօր գաղափարախոսական բնագավառի աշխատողների ջանքերը նպատակամղում են հատկապես այն բանին, որ յուրաքանչյուր բանվոր ու ծառայող ճիշտ ըմբռնի արտադրության արդյունավետության ու աշխատանքի որակի բարձրացման վերաբերյալ կուսակցության պահանջի էությունը, մշտապես առաջնորդվի դրանով։ Այդ ջանքերի արդյունքները շոշափելի են. որպես կանոն, տնտեսագիտական կրթության պրոպագանդիստներն օգնում են իրենց ունկնդիրներին հանդիպական պլաններ մշակելու, տնտեսագիտորեն հիմնավորված սոցպարտավորություններ ընդունելու գործում։ Այս ամենի և ընդհանրապես գաղափարադաստիարակչական աշխատանքի հարցերի կոմպլեքսային լուծման շնորհիվ այսօր շրջանի արդյունաբերական ձեռնարկություններում հազարավոր բանվորներ աշխատում են խնայողության անձնական հաշիվներով, իսկ միայն ընթացիկ տարում աշխատանքի որակի բարձրացմանը, հումքի և նյութերի տնտեսմանն է ուղղվել շուրջ 260 նորարարական առաջարկություն։

Այժմ շրջանի սկզբնական կուսկազմակերպություններում տնտեսագիտական կրթությունը որակական նոր փուլ է մտնում։ Մենք կուսկազմակերպությունների ուշադրությունը սևեռում ենք ոչ թե այն բանի վրա, որ կազմակերպենք տնտեսագիտական տարրական գիտելիքներ չունեցողների ուսուցու-



մը, այլ գլխավոր այն հարցի, որ էապես բարձրացնենք բանվոր-ծառայող հիմնական կադրերի տնտեսագիտական գիտելիքների մակարդակը։ Ընդ որում շեշտը դնում ենք արտադրության ինտենսիվացման և նրա արդյունավետության բարձրացման կոնկրետ մեթոդների տիրապետման վրա, այն ժողովրդական տնտեսության զարգացման, տնտեսական քաղաքականության իրականացման և սոցիալիստական մրցության գործարարության ապահովմանը ծառայեցնելու վրա։

Շրջկոմը, սկզբնական կազմակերպությունները գաղափարախոսական աշխատանքի վերակառուցման ու կատարելագործման նպատակով լուրջ ուշադրություն են նվիրում այդ բնագավառի կադրերի ընտրությանն ու դաստիարակությանը, նրանց տեսական մակարդակի բարձրացմանը։ Պրոպագանդիստների հետ տարվող աշխատանքը մարքս-լենինյան կրթության կուսակցական ղեկավարման հիմնական օղակն է, և մենք մեծ կարևորություն ենք տալիս պրոպագանդիստի դերի բարձրացմանը, նրա բարոյական կերպարի ձևավորման հարցերին։ Շրջկոմը մշակել է պրոպագանդիստական կադրերի ընտրության ու տեղաբաշխման միջոցառումներ, բյուրոյում և պրոպագանդայի ու ագիտացիայի բաժնում քննարկել գաղափարական կադրերի ուսուցման կազմակերպման հարցեր, պրոպագանդիստների հաշվետվություններ, անցկացրել բաց պարապմունքներ, մասսայական ունկնդրումներ, ընդհանրացրել ու տարածել նրանց աշխատանքի ուսանելի փորձը։

«Գարուն» կարի արտադրամիավորման լավագույն պրոպագանդիստներից է Հարություն Փափազյանը։ Նա լավ գիտի իր ունկնդիրներին, քաջատեղյակ է նրանց նախասիրություններին ու աշխատանքային ցուցանիշներին, ծանոթ է հոգսերին։ Այս ամենը նրան հնարավորություն է ընձեռում ճիշտ ներգործելու լսարանի վրա, թեման դարձնելու պարզ ու մատչելի։ Կոմունիստին բնորոշ պատասխանատվությամբ է պրոպագանդիստ Հ. Փափազյանը վերաբերվում կուսակցության որոշումներին։ Նյութը մատուցելիս նա ճշտորեն հաշվի է առնում կուսակցության արդի պահանջները, իր ունկնդիրներին ակտիվորեն մասնակից դարձնում ձեռնարկության առջև դրված խնդիրների կենսագործմանը։ Նրա ղեկավարած քաղդպրոցի ունկնդիրների աշխատանքային և հասարակական գործունեությունը ցույց է տալիս, թե պրոպագանդիստի բանավոր խոսքն ինչպես է վերածվում կոնկրետ գործի։ Ահա գաղափարախոսական աշխատանքի, քաղաքական կրթության արդյունավետությունը վկայող մի քանի տվյալներ։ Ունկնդիրներից 18-ը ունեն հասարակական մշտական հանձնարարություններ, բոլորն էլ արտադրության առաջավորներ են, նրանցից 6-ը պարգևատրվել են շքանշաններով ու մեդալներով։ Վերջին տարիներին պրոպագանդիստի անմիջական մասնակցությամբ արվել է 11 նորարարական առաջարկություն, որոնցից 7-ը ներդրվել է արտադրության մեջ և տվել 88 հազար ռուբլու պայմանական օգուտ։

Իսկ Հ. Փափազյանի օրինակը եզակի չէ։ Այսօր շրջանի կուսկազմակերպություններում պրոպագանդիստական աշխատանք են կատարում 1.278 մարդ, նրանցից 1.055-ը ՍՄԿԿ անդամներ են, 1.152-ը ունեն բարձրագույն կրթություն, շուրջ 750-ը աշխատում են անձնական ստեղծագործական պլաններով։ Քաղպարապմունքների անցկացմանը ղեկավար աշխատողների մասնակցության շնորհիվ զգալիորեն բարձրացել է պրոպագանդիստների հեղինակությունը, աճել է ունկնդիրների հետաքրքրասիրությունը, քանի որ էապես մեծացել են ձեռնարկության, շրջանի կյանքի հետ առնչվող հարցերի վերաբերյալ հանգամանալի պատասխաններ ստանալու հնարավորությունները։ Ներկայումս շրջանի ավելի քան 1000 տնտեսական ղեկավար աշխատողներ, այդ թվում նաև 96 մինիստրներ, պետական կոմիտեների նախագահներ և նրանց տեղակալներ կատարում են պրոպագանդիստի պատվավոր ու պատասխանատու պարտականությունը։

Շրջկոմը և սկզբնական կազմակերպությունները հոգ են տանում գաղափարական կադրերի ուսուցման կազմակերպման և մեթոդական հրահանգավորման մասին։ Վերակառուցել ենք նաև ղեկավար կադրերի ուսուցման գործը։ Շրջկոմի կուսակցական-տնտեսական ակտիվի դպրոցում ընդգրկված են

արդյունաբերական ձեռնարկությունների, սպասարկման ոլորտի կազմակեր-
պությունների տնտեսական ղեկավարները, թվով 94 մարդ։ Անցած ուսումնա-
կան տարում նրանք ուսումնասիրել են «Վ. Ի. Լենինը խնայողության և տըն-
տեսման մասին» դասընթացը։ Ղեկավար կադրերին հնարավորություն է ըն-
ձեռվել՝ տիրապետելու ժամանակակից տնտեսական ու սոցիալական պրոբ-
լեմների վերլուծության մեթոդիկային, կուսակցական աշխատանքի կազմա-
կերպչական ու տնտեսական գործունեության գիտական մեթոդներին, մարդ-
կանց դաստիարակության նկատմամբ կոմպլեքսային մոտեցման ձևերին։

Աշխատավորների գաղափարական-քաղաքական դաստիարակության գոր-
ծում կուսակցությունը մեծ տեղ է հատկացնում բանավոր ագիտացիային։ Եվ,
իրոք, անհնար է մեր կազմակերպությունների հասարակական-քաղաքական
գործունեությունը պատկերացնել առանց ագիտացիոն-մասսայական, դասա-
խոսական աշխատանքի։ Այսօր շրջանում կուսակցության խոսքը մասսանե-
րին են հասցնում ու նրանց ուժերը սոցիալ-տնտեսական խնդիրների իրակա-
նացմանն են նպատակամղում շուրջ 2.000 ագիտատորներ ու քաղինֆորմատոր-
ներ, դասախոսներ ու զեկուցողներ։ Շրջկոմին առընթեր ստեղծվել է գաղափա-
րական ակտիվի դպրոց, որտեղ կուսկազմակերպության քարտուղարների
գաղափարական գծով տեղակալները, գաղափարական հիմնարկությունների
աշխատողները, քաղինֆորմատորները, ագիտկոլեկտիվների ղեկավարներն
ուսումնասիրում են գաղափարախոսական, քաղաքական-դաստիարակչական
աշխատանքի տեսությունն ու մեթոդիկան։ Շրջանային կոմիտեն քաջ գիտակ-
ցում է, որ բանավոր ագիտացիայի բարելավման ու կատարելագործման հա-
մար դեռևս շատ անելիքներ կան և շարունակում է ագիտացիոն-մասսայական
աշխատանքում արմատավորել գաղափարական ներազդման նոր ձևեր ու մե-
թոդներ։

Այդուհանդերձ, կոմունիստների քաղաքական ուսուցման և աշխատավոր-
ների տնտեսագիտական կրթության գործում կան և լուրջ թերություններ։ Հացի
№ 3 գործարանի, շինբանկի հայկական գրասենյակի, բնակչության հատուկ
սպասարկման բաղնիքների կոմբինատների, «Մանկական աշխարհ» և «Արա-
գած» միավորումների, տիկնիկային թատրոնի, կենտրոնական հեռագրատան,
կինեմատոգրաֆիստների միության, ՀՍՍՀ Գերագույն դատարանի, Երքաղ-
էլեկտրատրանսպորտի վարչության և մի շարք այլ սկզբնական կուսկազմա-
կերպություններ անբավարար են զբաղվում կոմունիստների քաղաքական
ուսուցման և աշխատավորների տնտեսագիտական կրթության հարցերով։ Նը-
րանք շարունակում են հաշտվողական վերաբերմունք և անտարբերություն
դրսևորել այդ գործում եղած թերությունների նկատմամբ, գործնական միջոց-
ներ չեն ձեռնարկում քաղաքական ուսուցման ձևերն ու մեթոդները կատարե-
լագործելու, արդի պահանջներին համապատասխան այն վերակառուցելու հա-
մար, համակերպվում են ուսուցման ընթացքում նկատվող կարգապահական
խախտումների, պարապմունքների ձախողումների հետ։

Հացի № 2 գործարանի, «Հայգլխէներգոյի», էներգահսկողության, բնակ-
չության հատուկ սպասարկման կոմբինատի, նվագախմբային երաժիշտների
բյուրոյի, «Արագած» միավորման կուսկազմակերպությունների քաղաքական
ուսուցման դպրոցներում և սեմինարներում թեմաների ուսումնասիրումը ան-
բավարար է շաղկապվում կոլեկտիվներին առաջադրված խնդիրներին, հաշվի
չեն առնվում նրանց առանձնահատկություններն ու հուզող հարցերը։ Այլ խոս-
քով, քաղաքական ուսուցումն ու տնտեսագիտական կրթությունը կտրված են
կյանքից։

Հատկապես աղաղակող թերություններ կան շրջանի առևտրի և հասա-
րակական սննդի կուսկազմակերպությունների գաղափարաքաղաքական աշ-
խատանքում։ Շրջանային կոմիտեն քննարկելով առևտրի և հասարակական
սննդի կազմակերպություններում գաղափարադաստիարակչական աշխատան-
քի վիճակը, այդ գործում բացահայտեց լուրջ թերություններ։ Շրջանի առևտրի
և հասարակական սննդի ղեկավարները և կուսկազմակերպությունները միան-
գամայն անտարբեր ու անպատասխանատու վերաբերմունք են ցուցաբերում
կոլեկտիվների անդամների շրջանում տարվող գաղափարական-դաստիարակ-



չական աշխատանքի նկատմամբ, այդ գործը մատնել են ինքնահոսի։ Աշխա-
տողներից շատերը դուրս են մնացել դաստիարակչական գործունեության ոլոր-
տից։ Բնավ պատահական չէ, որ հիշյալ կազմակերպություններում մասսա-
յական բնույթ են կրում առևտրի կանոնների խախտումները, չարաշահում-
ներն ու այլ բացասական երևույթներ։

Շրջանային կոմիտեն, ինչ խոսք, չէր կարող հանդուրժել այդ կազմակեր-
պություններում տիրող իրավիճակը, դաստիարակչական աշխատանքի վատ
դրվածքը։ Գաղափարախոսական, քաղաքական-դաստիարակչական աշխա-
տանքը արմատապես բարելավելու նպատակով շրջկոմի բյուրոն ստիպված էր
դիմել կազմակերպական միջոցների և գործից ազատել ու կուսակցական խիստ
պատասխանատվության ենթարկել մի շարք ղեկավար աշխատողների։

Թերություններ ու վրիպումներ կան գաղափարական կադրերի ընտրու-
թյան, տեղաբաշխման և դաստիարակության գործում։ Որոշ կուսկազմակեր-
պություններ դեռևս չեն բարձրացրել ղեկավար կադրերի պատասխանատվու-
թյունը պրոպագանդիստական, գաղափարախոսական աշխատանքին մասնակ-
ցելու գործում։ Մի շարք հիմնարկ-ձեռնարկությունների, արտադրական միա-
վորումների դիրեկտորներ և նրանց տեղակալներ, պատճառաբանելով տնտե-
սական-արտադրական հարցերով խիստ զբաղված լինելու հանգամանքը, ուղ-
ղակի խույս են տալիս կոլեկտիվի անդամների դաստիարակության կարևոր
գործից, իսկ ոմանք էլ անբավարար են կատարում պրոպագանդիստի իրենց
պարտականությունները։

Կուսակցությունը աշխատավորների կոմունիստական դաստիարակությու-
նը դիտում է որպես կոմունիզմի համար պայքարի կարևոր ճակատ։ Երկրի
սոցիալ-տնտեսական, քաղաքական և կուլտուրական զարգացման ընթացքը
մեծ չափով պայմանավորված է գաղափարական-քաղաքական, դաստիարակ-
չական աշխատանքի արդյունավետությամբ։ Իսկ այն ապահովվում է կուսակ-
ցական ու կոմերիտական քաղուսուցման, աշխատավորության տնտեսագիտա-
կան կրթության, պրոպագանդայի մասսայական ձևերի միջոցով։ Հետևաբար,
կուսկազմակերպություններից պահանջվում է վերջ տալ քաղաքական և տըն-
տեսագիտական կրթության նկատմամբ ցուցաբերվող ձևամոլության, մակե-
րեսայնության, վերացական-լուսավորչական և նեղ գործնական մոտեցման
դրսևորումներին։ Ճիշտ եզրակացություն անելով անցած ուսումնական տար-
վա արդյունքներից, նրանք պետք է հանգամանորեն անդրադառնան պարապ-
մունքների նկատմամբ իրականացվող վերահսկողության ձևերի արդյունավե-
տությանը, հմտորեն ընտրեն, սովորեցնեն ու դաստիարակեն պրոպագան-
դիստներին, գաղափարական կադրերին, նրանց շրջապատեն ամենօրյա հո-
գատարությամբ և ուշադրությամբ։

Շրջանային կոմիտեն, սկզբնական կուսկազմակերպությունները արմա-
տական միջոցներ են ձեռնարկում աշխատավորության գաղափարաքաղաքա-
կան դաստիարակության գործում եղած թերությունները վերացնելու, այդ աշ-
խատանքը կուսակցական արդի պահանջներին համապատասխան վերակա-
ռուցելու, կոմպլեքսային ձևով կազմակերպելու համար։ Շրջկոմի բյուրոյում
աշխատավորների գաղափարադաստիարակչական խնդիրների կոմպլեքսային
լուծման նպատակով նախագծային ինստիտուտների կուսկազմակերպություն-
ների և ղեկավարների կատարած աշխատանքի մասին հարցի քննարկումը
ցույց տվեց, որ «Գիպրոտորգ» համամիութենական, Ռոստովի «Սոյուզէլեկ-
տրոշին» և «Ցենտրոսոյուզի» նախագծային ինստիտուտների Երևանի մաս-
նաճյուղերի, «Հայգյուղտեխպետկոմի» և ՀՍՍՀ կենցաղսպասարկման մինիս-
տրության նախագծային-կոնստրուկտորական ու տեխնոլոգիական ինստի-
տուտների սկզբնական կուսկազմակերպությունները դեռևս իրենց գործունեու-
թյունը չեն վերակառուցել ՍՄԿԿ XXVI համագումարի պահանջներին համա-
պատասխան, կոմպլեքսային մոտեցում չեն ցուցաբերում աշխատավորության
դաստիարակության նկատմամբ, չեն բարձրացնում սոցիալիստական մրցու-
թյան դաստիարակչական դերը, հարկ եղած ուշադրություն չեն հատկացնում
աշխատանքի հանդեպ կոմունիստական վերաբերմունքի ձևավորման, բարո-

յական դաստիարակության հարցերին։ Այդ ամենի հետևանքով ցածր է սոցիալիստական մրցության արդյունավետությունը, թույլ է աշխատանքային կարգապահությունը, մեծ է կադրերի հոսունությունը, իսկ այդպիսի վիճակը բացասական ազդեցություն է թողնում արտադրական խնդիրների լուծման, նախագծային-կոնստրուկտորական մշակումները ժամանակին և որակով ավարտելու վրա։

Դեռևս քիչ չեն անելիքները բարոյական դաստիարակության գործում։ Շրջանում կան մի շարք կազմակերպություններ, որոնք ուշադրությունից դուրս են թողել կուսակցական աշխատանքի այդ կարևոր բնագավառը։ Ոչ ամենուրեք է ստեղծված բարոյահոգեբանական առողջ մթնոլորտ, կուսկազմակերպությունները չեն կարողանում օգտագործել անհատի վրա կոլեկտիվի դաստիարակչական ներգործության զորեղ ուժը։ Այդ առումով հատկապես լուրջ թերություններ կան առևտրի, հասարակական սննդի և սպասարկման ոլորտի կուսկազմակերպություններում, որտեղ դեռևս թույլ է պայքարը կոմունիստական բարոյականության նորմերի այնպիսի խախտումների դեմ, ինչպիսիք են չարաշահումները, առևտրի կանոնների խախտումները, մեր հասարակությանը խորթ ու անհարիր այլ երևույթներ։ Գաղափարախոսական, քաղաքական-դաստիարակչական աշխատանքի հետագա բարելավման վերաբերյալ ՍՄԿԿ Կենտկոմի հայտնի որոշման մեջ նշված է, որ դաստիարակչական աշխատանքի արդյունավետությունը զգալիորեն նվազում է այնտեղ, որտեղ խզում է առաջ գալիս խոսքի և գործի միջև, որտեղ ապահովված չէ կազմակերպչական, գաղափարական և տնտեսական աշխատանքի միասնությունը։ Կենտկոմի այս պահանջը չկատարելու, խոսքի և գործի միջև միասնություն չապահովելու, կոլեկտիվի անդամների դաստիարակությամբ անբավարար զբաղվելու և տարբեր խախտումների ու չարաշահումների համար շրջկոմի բյուրոն աշխատանքից ազատել է «Մանկական աշխարհ», ճաշարանների և սրճարանների տրեստի № 2 միավորումների դիրեկտորներ Ա. Բալաբանովային ու Ռ. Գևորգյանին, № 1 երեկոյան դպրոցի դիրեկտոր Ս. Ղազարյանին, իսկ № 2 սննդառի դիրեկտոր Կ. Բաբայանը և «Հայգլխէներգոյի» էներգահսկողության ձեռնարկության դիրեկտոր Ե. Թորոսյանը ենթարկվել են կուսակցական խիստ պատասխանատվության։

Աշխատավորների կոմունիստական դաստիարակությունը, նրանց մոտ ակտիվ կենսադիրքորոշման ձևավորումը բացառիկ կարևորության գործ է։ Մենք պետք է ավելի արդյունավետ դարձնենք այդ աշխատանքը, կոորդինացնենք կուսակցական, սովետական, կոմերիտական և հասարակական կազմակերպությունների, վարչական մարմինների, ընտանիքի, դպրոցի, կոլեկտիվի, կուլտլուսավորական հիմնարկությունների, ողջ գաղափարական ակտիվի գործունեությունը, բարձրացնենք աշխատավորության պատասխանատվությունն այն բանի համար, որ Երևանում ամեն ինչ լինի իրոք մայրաքաղաքային՝ թե՛ արտաքին տեսքը, թե՛ կենցաղային կուլտուրան և թե սովորույթները։ Դա Հայաստանի կոմկուսի XXVII համագումարի պահանջն է, այդ խնդիրը վերստին առաջադրեց ընկ. Կ. Ս. Դեմիրճյանը ՀԿԿ Կենտկոմի ապրիլյան (1982 թ.) պլենումում։ Պլենումը մայրաքաղաքի կուսկազմակերպությունների առջև խնդիր դրեց՝ հետևողական, համառ աշխատանք տանել բնակչության շրջանում, հրատակ մշակված մայրաքաղաքային վարվեցողության նորմերի ու կանոնների արմատավորմամբ հասնել երևանյան սոցիալիստական ավանդույթների ձևավորմանը։ Երևանցին պետք է ունենա բարձր կուլտուրա, լինի բարոյապես մաքուր, բարեկիրթ քաղաքացի։ Սա լուրջ խնդիր է, որի լուծումը կուսակցական կազմակերպություններից պահանջում է ակտիվորեն զբաղվել այդ հարցերով, մշտապես բարելավել աշխատավորության կոմունիստական դաստիարակության գործը։

---

# ԱՆԱՍՆԱՊԱՀՈՒԹՅԱՆ ՎԵՐԵԼՔԻ ԳԼԽԱՎՈՐ ՊԱՅՄԱՆԸ

**Ս. Ռ. ՄԵՀՐԱԲՅԱՆ**
ՀԿԿ Կալինինոյի շրջկոմի առաջին քարտուղար

ԿԱԼԻՆԻՆՈՅԻ ՇՐՋԱՆԻ ԿՈՄՈՒՆԻՍՏՆԵՐՆ ու բոլոր աշխատավորները բարձր պատասխանատվությամբ և իրենց առջև ծառացած խնդիրները մինչև վերջ իրականացնելու հաստատակամությամբ ընդունեցին կուսակցության առաջադրած պարենային ծրագիրը։ Տնտեսությունների նյութատեխնիկական բազան, բնության ընձեռած լայն հնարավորությունները և, վերջապես, գյուղատնտեսության վարման կուլտուրայի ձեռք բերած բարձր մակարդակը պարտավորեցնում են նրանց՝ ավելի ծանրակշիռ ներդրում անելու ժողտնտեսության ագրարային սեկտորի հետագա զարգացման, մարդկանց բարեկեցության բարձրացման համար ծավալված համաժողովրդական պայքարում։

Մենք խորապես գիտակցում ենք, որ պարենային ծրագրով առաջադրված խնդիրների հաջող լուծման գրավականն այն է, թե յուրաքանչյուր շրջան, պետական ու կոլեկտիվ տնտեսություն, կուսակցական կազմակերպություն որքանով ճիշտ է որոշում իր տեղն ու դերը այդ համապետական կարևոր գործում, որքանով խելամտորեն է յուրաքանչյուր կոմունիստի, դաշտի ու ֆերմայի աշխատողի արտադրական, ստեղծագործական, քաղաքական ակտիվությունն ուղղում բարձր վերջնարդյունք ձեռք բերելու նպատակին։

Անասնապահությունը Կալինինոյի շրջանի գյուղատնտեսական արտադրության առաջատար ու ավանդական ճյուղն է, որի բաժինը շրջանի գյուղատնտեսության ընդհանուր արդյունքում կազմում է մոտ 70 տոկոս։ Շրջանը կաթի արտադրության ու մթերումների ծավալով հանրապետությունում գրավում է առաջին տեղը։ Անասնապահության զարգացման խնդիրն ավելի է կարևորվում այժմ, երբ կուսակցությունն առաջադրել է պարենային ծրագիրը և շեշտել դրա կատարման գործում այդ ճյուղի վճռական դերը։

Անժխտելի է, որ դաշտն ու ֆերման իրարից անբաժան երկու օղակներ են։ Դրանցից յուրաքանչյուրի բարձր արդյունավետությունը հնարավոր է միայն ճիշտ փոխգործողության պայմաններում։ Անասնապահության հետագա վերելքը մեծապես պայմանավորված է դաշտի աշխատավորների կատարած ներդրումով, այսինքն՝ նրանց ստեղծած կերի առատ պաշարի առկայությամբ։ Ահա թե ինչու ՍՄԿԿ XXVI համագումարը, անասնապահությունը հայտարարելով հարվածային ճակատ, միաժամանակ շեշտեց, որ այդ ճյուղը սպասված արդյունքը կարող է տալ միայն կերի բազայի ամրապնդման հարցը հիմնավորապես լուծելու դեպքում։ Անասնապահության զարգացման անհրաժեշտությունը, ինչպես նշվեց ՍՄԿԿ Կենտկոմի մայիսյան պլենումում, գլխավոր խնդիր է դարձնում նաև կերի արտադրության աճը, դրա որակի բարձրացումը և ռացիոնալ օգտագործումը։

Պարենային ծրագրի կապակցությամբ մեր մշակած միջոցառումներով նախատեսել ենք է՛լ ավելի ինտենսիվացնել անասնապահությունը, պայքար ծավալել առաջիկա տարիներին մեկ կովի կաթնատվությունը 3.500, իսկ մթերակայան հանձնվող խոշոր եղջերավոր անասունների կենդանի քաշը 430—450

կիլոգրամի հասցնելու համար (այժմ դրանք համապատասխանաբար կազմում են 2.750 և 360 կիլոգրամ)։

ՍՄԿԿ Կենտկոմի մայիսյան պլենումի որոշումների լույսի ներքո քննարկելով պարենային ծրագրի կատարման գործում շրջանի խնդիրները՝ մենք հանգամանորեն հաշվի առանք շրջանի կերարտադրության հնարավորություններն ու ռեզերվները և վերանայեցինք նախկինում մեր նախանշած բնագծերը։ Որոշել ենք տասնմեկերորդ հնգամյակում, տասներորդի համեմատությամբ, զգալիորեն մեծացնել անասնապահական մթերքների արտադրության ու պետական մթերումների ծավալը, իսկ արդեն 1985 թ. պետությանը վաճառել 22.200 տոննա կաթ, 3.200 տոննա միս, 1.100 հազար հատ ձու, 460 ցենտներ բուրդ, իսկ 1990 թ. էապես գերազանցել այդ բնագծերը։

Անտարակույս, ծառացած բարդ ու պատասխանատու խնդիրները մենք կարող ենք լուծել և, հետևաբար, պարենային ծրագրի կատարման գործում արժանի ավանդ ներդնել միայն այն դեպքում, երբ ստեղծենք համապատասխան կերի բազա, արդյունավետ օգտագործենք կերի կուտակման հնարավորություններն ու ռեզերվները։

Կերի առատ պաշար շրջանի կոլեկտիվ ու պետական տնտեսություններում, անշուշտ, կուտակվում է։ Սակայն մթերատվության այժմյան արդյունքները մեզ դեռևս չեն գոհացնում։ Նույնիսկ ամենանպաստավոր տարիներին, ամենալավ կերակրման պայմաններում մենք դեռ ցանկալի առավելագույն արդյունքը չենք ստանում։

Եվ դա խորհելու առիթ է տալիս։ Պատճառը, ինչպես իրավացիորեն նշեց ընկ. Կ. Ս. Դեմիրճյանը ՀԿԿ Կենտկոմի հուլիսյան (1981 թ.) պլենումում, կերի ցածրորակությունն է, դրանում սպիտակուցների, հատկապես պրոտեինի պակասը։ Կերի բազայի զարգացման մակարդակը դեռևս չի բավարարում անասնապահության հարաճուն պահանջմունքները և դրանով իսկ դանդաղում են այդ ճյուղի արտադրանքի արտադրության աճի տեմպերը։

Կերարտադրության գործում տեղ գտած այս և նման մի շարք թերություններ վերհանվեցին կուսշրջկոմի՝ 1981 թ. սեպտեմբերին կայացած պլենումում, որը մշակեց ու հաստատեց տասնմեկերորդ հնգամյակում և մինչև 1990 թվականն ընկած ժամանակաշրջանում կերի կայուն բազայի ստեղծման ծրագիր։ Կոլտնտեսությունների ու սովխոզների կուսկազմակերպությունների, ղեկավարների և մասնագետների առջև դրվեց կոնկրետ խնդիր՝ կերային կուլտուրաների ցանքատարածությունների կառուցվածքում կատարել լուրջ փոփոխություններ, գերապատվությունը տալ սպիտակուցներով հարուստ հատիկալոբազգի կուլտուրաներին և բազմամյա խոտաբույսերին։ Բոլոր կոլտնտեսությունների ու սովխոզների սկզբնական կուսկազմակերպությունները մշակեցին և հետևողականորեն իրականացնում են կերարտադրության գործը բարելավելու գործնական միջոցառումներ։ Հանրային հոտի կերի բազայի ամրապնդումը դարձել է նրանց գործունեության կարևոր բնագավառը։ Այդ ճանապարհին մենք արդեն հաղթահարել ենք ոչ քիչ դժվարություններ և ձեռք բերել որոշակի հաջողություններ։

Ընդամենը մեկ-երկու տարի առաջ շրջանի տնտեսությունների ղեկավարների ու որոշ մասնագետների մոտ իշխում էր այն սխալ մտայնությունը, թե, օրինակ, առվույտը՝ սպիտակուցով հարուստ այդ խոտաբույսը, Կալինինոյի պայմաններում սպասվելիք արդյունքը չի կարող տալ։ Իրենց կարծիքը նրանք «հիմնավորում» էին նրանով, թե առվույտը և՛ ջերմասեր, և՛ խոնավասեր է, իսկ Լոռվա սարահարթում այդ երկու գործոնների համատեղ առկայությունը բացառվում է. եթե տարին խոնավ է, ապա ջերմությունն անբավարար է և՝ հակառակը։ Սակայն մի քանի տնտեսություններում խիզախեցին ժխտել իշխող մտայնությունը և համարձակորեն ներդրեցին այդ արժեքավոր կերաբույսը։ Արժե դրվատանքի խոսք ասել Նորաշենի կոլտնտեսության նախագահ Լ. Մարտիրոսյանի և Կալինինոյի շրջկենտրոնի Կալինինի անվան պետտնտեսության դիրեկտոր Գ. Ալավերդյանի հասցեին։ Շրջանում առաջին անգամ նրանց ղեկավարած տնտեսությունները 1981 թվականին կատարեցին առվույտի ցանք։



Իսկ արդեն այս տարի նրանք այդ արժեքավոր կուլտուրայի ամեն մի հեկտարից ապահովեցին 320—340 ցենտներ կանաչ զանգված, պատրաստեցին բարձրորակ վիտամինային խոտալյուր։ Դա շրջանի պայմաններում լավ ցուցանիշ է։ Նրանց օրինակին հետևեցին ուրիշները։ Այս տարի առվույտի մշակությամբ սկսեցին զբաղվել նաև Մեդովկայի ու Միխայլովկայի կոլտնտեսությունները և Մեծավանի պետտնտեսությունը։ Շրջանում առվույտի մաքուր ցանքն արդեն հասնում է 240 հեկտարի։ Կուսշրջկոմի պլենումը մշակած կոմպլեքսային միջոցառումներով խնդիր դրեց 1985 թ. առվույտի ցանքատարածությունը հասցնել 500 հեկտարի, ընդ որում դրա մշակությամբ կզբաղվեն գրեթե բոլոր տնտեսությունները։ Մեծավանի և Կալինինի անվան պետտնտեսությունների կուսկազմակերպությունների ժողովները, արժեքավորելով ուսանելի փորձը, որոշել են հնգամյակի վերջում եռապատկել ու քառապատկել առվույտի ցանքատարածությունը, ներդնել սպիտակուցներով հարուստ և սընընդարար լավ հատկություններ ունեցող նոր կերաբույսեր։

Կալինինոյի բնակլիմայական պայմանները նպատակահարմար են հատկապես կորնգանի համար։ Մինչդեռ սպիտակուցներով հարուստ և բարձրբերքատու այդ արժեքավոր կուլտուրան մեկուկես-երկու տասնամյակ առաջ հանիրավի դուրս էր մղվել ցանքաշրջանառությունից։ Ի դեպ, կորնգանի և առհասարակ բազմամյա խոտաբույսերի ներդրումը հետապնդում է ոչ միայն բարձրարժեք կեր ստանալու, այլև թեք, հողի նվազ հզորությամբ լեռնալանջերը հողատարման վտանգից պաշտպանելու նպատակը։ Դրանց մշակումը բացառում է ամեն տարի հողը վարելու անհրաժեշտությունը։ Եվ, ահա, կերի որակական ցուցանիշների լավացման ու հողի էրոզիայի դեմ պայքարելու նըպատակով կուսշրջկոմի պլենումը պարտավորեցրեց տնտեսությունների ղեկավարությանը՝ զարկ տալ կորնգանի մշակությանը։ Դրա ցանքատարածությունը հնգամյակի վերջում կավելանա երկուսուկես անգամ։

Կուսկազմակերպությունները և տնտեսությունների ղեկավարները մշակած միջոցառումներում և գործնական աշխատանքի ընթացքում մեծ կարևորություն են տալիս նաև սպիտակուցներով հարուստ մյուս բազմամյա կերաբույսերի՝ երեքնուկի և հատկապես տիմոֆեևկայի մշակությանը։ Ի դեպ, անկախ տարվա բնակլիմայական պայմաններից, տիմոֆեևկայից ստացվում է երաշխավորված արդյունք։ Այն առատ բերք է տալիս անխտիր բոլոր տնտեսություններում։ Այսպես, 1980 թ. խիստ երաշտի տարում շրջանում կուտակված խոտի հիմնական մասը կազմում էր տիմոֆեևկան։ Այժմ շրջանում բազմամյա խոտաբույսերի ցանքատարածությունը հասնում է 4.900 հեկտարի կամ կազմում է վարելահողի մեկ երրորդը, իսկ հնգամյակի վերջում դրանք կըզբաղեցնեն մոտ 5.500 հեկտար։

Հանրային հոտի կերի հաշվեկշռի որակական կազմն արմատապես բարելավելու նպատակով և ի կատարումն կուսշրջկոմի 1981 թ. սեպտեմբերի պլենումի որոշումների՝ տնտեսություններն ընթացիկ տարում ներդրեցին այնպիսի արժեքավոր և բարձր բերքատու կերակուլտուրաներ, ինչպես պերկոն, կերի կաղամբը և դդումը։ Ընդ որում պերկոն մշակվում է խառը ցանքի ձևով՝ գարու, վարսակի և ոլոռի հետ և մեկ հեկտարի հաշվով ապահովում է 400 ցենտներ կանաչ զանգված։ Կալինինի անվան պետական տնտեսությունն ընթացիկ տարում այդպիսի խառը ցանքից պատրաստել է 1.600 տոննա բարձրորակ սիլոս։ Այս տնտեսությունում ներդրվել են նաև կորեկն ու սորգոն։ Պրիվոլնոյեի, Մեդովկայի կոլտնտեսություններն ու Լոռու փորձարարական բազան շարունակում են կծուկի մաքուր ցանքերի աճեցումը։ Այդ կերաբույսը տարեկան հնձվում է երկու անգամ և հեկտարի հաշվով տալիս է 700—800 ցենտներ սիլոսի կանաչ զանգված։

Այսպիսով, անժխտելի են բազմամյա խոտաբույսերի առավելությունները։ Դրանք միաժամանակ հնարավոր են դարձնում միավոր արտադրանքի վրա կատարել ավելի քիչ ծախսումներ և նպաստել ոչ միայն կերի, այլև անասնապահական մթերքների ինքնարժեքի իջեցմանը։

Վերը ասածից թող բնավ չառաջանա այն թյուր կարծիքը, թե մենք թերագնահատում ենք միամյա կերաբույսերի նշանակությունը։ Ո՛չ։ Ընդհակա-

ռակն, բազմամյա և միամյա կերաբույսերի արտադրության ճիշտ զուգակցումը մեզ հնարավորություն է ընձեռում ռացիոնալ և արդյունավետ օգտագործել հողային ռեսուրսները, ստեղծել կերի բազայի ամրապնդման կայուն և ռեալ նախադրյալներ։ Շրջանի տնտեսություններում զգալիորեն ընդլայնվել են արևածաղկի, եգիպտացորենի ցանքատարածությունները։ Միամյա կերային կուլտուրաների տեսակարար կշռում գերիշխում են ոլոռը, հացահատիկային և հացահատիկաընդեղենային խառնուրդները։ Դրանց յուրաքանչյուր հեկտարից ստացվում է 300—350 ցենտներ կանաչ զանգված։

Շրջանի հողակլիմայական պայմաններում լավ քննություն է բռնել հատկապես կերի ճակնդեղը։ Կերի ճակնդեղի մշակության լավ ավանդույթներ ունեն Մեծավանի, Կլդաշի, Լեռնահովտի, Կալինինի անվան պետական, Նորաշենի, Միխայլովկայի, Պրիվոլնոյեի կոլեկտիվ տնտեսությունները։ Նրանք, անկախ բնակլիմայական պայմաններից, ամեն տարի ստանում են երաշխավորված բարձր բերք՝ հեկտարի հաշվով 500—550 ցենտներ։ Այս տարի ևս բոլոր տնտեսություններում բերքը խոստումնալից է։ Հաշվումները ցույց են տալիս, որ կարտադրվի մոտ 20 հազար տոննա արմատապտուղ կամ ամեն մի կովի հաշվով՝ 2,5—3 տոննա։

Այս ցուցանիշը, սակայն, ավելի ծանրակշիռ կլիներ, եթե լրիվին օգտագործվեին ունեցած բոլոր ռեզերվները։ Բանն այն է, որ մի շարք տնտեսություններում (Սարատովկա, Իլմազլու, Սարչապետ և այլն) դեռևս խիստ ցածր է կերի ճակնդեղի բերքատվությունը և 2—3 անգամ զիջում է շրջանի միջին մակարդակը։ Եվ զարմանալի չէ, որ այդ տնտեսություններում զգացվում է հյութալի կերի պակաս, մի բան, որը խիստ բացասաբար է անդրադառնում անասունների մթերատվության վրա։ Մեր պարտքն է հասնել այն բանին, որ այդ տնտեսություններում ևս կիրառվեն արմատապտուղների մշակման առաջավոր եղանակները, պայմաններ ստեղծել կաթնատվության բարձրացման համար։ Եթե մեզ հաջողվի այդ տնտեսությունները հասցնել շրջանի միջին մակարդակին, ապա տարեկան լրացուցիչ կստացվի 1.000 տոննա կաթ։

Մեր շրջանը հանրապետության վիտամինային խոտալյուրի խոշոր մատակարարն է։ 16 տնտեսությունից 14-ը զբաղվում են այդ արժեքավոր կերատեսակի արտադրությամբ։ Նրանք ամեն տարի պատրաստում են 3.300 տոննա խոտալյուր, որից մոտ 2.000 տոննա վաճառում են։ Դա անփոխարինելի հումք է խտացված կերի համար։ Անցած տարիներին խոտալյուրը պատրաստվում էր հիմնականում տարեկանի կանաչ զանգվածից։ Սկզբնական շրջանում ստացվում էր բարձրորակ արտադրանք, իսկ հուլիս—օգոստոս ամիսներին, երբ սկսվում է հասունացման փուլը, պատրաստված խոտալյուրը, բնականաբար, իր որակով նկատելիորեն զիջում էր նախկինին։ Այդ բացը վերացնելու նպատակով այս տարի որոշեցինք խոտալյուրի արտադրության մեջ օգտագործել մոտ 800 հեկտար միամյա ու բազմամյա և միայն 400 հեկտար տարեկանի ցանքատարածություն, այն էլ մեծ մասամբ վիկայի, կորնգանի, երեքնուկի խառնուրդներով։ Նորաշենի, Կալինինի անվան, Մեդովկայի և մի շարք այլ տնտեսություններում խոտալյուրի համար հիմնականում հումք է ծառայում առվույտի, երեքնուկի և կորնգանի կանաչ զանգվածը։ Լաբորատոր ստուգումներից պարզվել է, որ արդեն արտադրված մոտ 2.600 տոննա խոտալյուրը պարունակում է բավարար քանակությամբ թաց պրոտեին, կարոտին, ամրությամբ համապատասխանում է ստանդարտով նախատեսված նորմաներին։ Կոնկրետ աշխատանք է կատարվում շրջանի անտառտնտեսության բազայի վրա եղևնու սաղարթից ալյուր պատրաստելու համար։ Անտառտնտեսության մարդիկ նախապատրաստվում են արդեն 1983 թ. արտադրել մոտ 150—200 տոննա խոտալյուր, իսկ հետագայում բուժական տեսակետից այդ արժեքավոր կերի արտադրությունը կհասցվի մոտ 1.000 տոննայի։

Ինչպես կուսշրջկոմը, այնպես էլ սկզբնական կուսկազմակերպությունները կերարտադրության վերաբերյալ մշակած միջոցառումներում մեծ տեղ են հատկացրել կերի պատրաստման առաջադիմական եղանակների կիրառմանը։ Կերի որակի բարելավմանը մեծապես նպաստում է պահածոյացումը։ Դա երկրի առաջավոր տնտեսություններում հաջող քննություն բռնած եղանակ է,



որն արմատավորվել է նաև մեր շրջանի տնտեսություններում։ Ընթացիկ տարում ավելի լայն չափով անցանք այդ եղանակին։ Խոտախառնուրդներից պատրաստված ողջ սիլոսանյութը պահածոյացվել է մրջնաթթվով և «Վիխր» պրեպարատով։ Այդ ասպարեզում կատարված աշխատանքին անդրադարձանք կուսշրջկոմի բյուրոյի նիստերից մեկում։ Կերարտադրության առաջադիմական եղանակների կիրառման կապակցությամբ քննարկեցինք երկու տնտեսություններում՝ Կալինինի անվան և Իլմազլուի սովխոզներում կատարվող աշխատանքի վիճակի հարցը։

Ի՞նչ պարզվեց։ Կալինինի անվան պետական տնտեսության դիրեկցիան և կուսկազմակերպությունը համակողմանիորեն են զբաղվում առհասարակ կերարտադրության և մասնավորապես՝ դրա առաջադիմական եղանակների արմատավորման և լայն կիրառման հարցերով։ Կուսկազմակերպության՝ 1981 թ. նոյեմբերին տեղի ունեցած ժողովը, քննարկելով կերի արտադրության ավելացման և որակի հետագա բարելավման հարցը, մասնավորապես շեշտել է սպիտակուցներով հարուստ կերաբույսերի, արժեքավոր կերատեսակների լայն ներդրման անհրաժեշտությունը և այդ առնչությամբ մշակել ու հաստատել է միջոցառումների մի ողջ համակարգ։ Միջոցառումները ներառում են բարձր կարգի սիլոսի ու սենաժի պատրաստումը, կերի վերամշակումն ու պահպանությունը, խոտհարքների ու արոտավայրերի բարելավումը, պարարտացումը և այլն, ինչպես նաև աշխատավորների շրջանում տարվող քաղաքական-դաստիարակչական աշխատանքը և սոցիալիստական մրցության կազմակերպումը։

Այսօր արդեն, ի պատիվ Կալինինի անվան պետական տնտեսության կուսկազմակերպության և դիրեկցիայի, պետք է ասել, որ այդ միջոցառումներն իրականացվում են հաջողությամբ։ Այստեղ ստեղծվել են կերարտադրության կոմպլեքսային մեքենայացված բրիգադներ, որոնց շրջանում ծավալվում է սոցիալիստական գործարար մրցություն։ Նրանք հաջողությամբ օգտագործում են ԳԴՀ-ի և հայրենական արտադրության բարձրարտադրողական հնձող մեքենաներ, գերակատարում օրվա առաջադրանքները։ Խստորեն պահպանվում են խոտհնձի, հավաքի ու տեղափոխման ժամկետները, որով և բացառվում է խզումը այդ աշխատանքների միջև։ Տնտեսությունում ճիշտ են զուգակցում խոտհնձի, սիլոսի, սենաժի և վիտամինային խոտալյուրի պատրաստման օպտիմալ ժամկետներն ու հաջորդայնությունը և բնակլիմայական պայմանները։ Մեխանիզատորների ջանքերով մեքենայացվել են կերի բարձումն ու բեռնաթափումը և խոտի դիզումը։ Այս տարի տնտեսությունը ծրագրել է պատրաստել 8.700 տոննա սիլոս ու սենաժ, 750 տոննա վիտամինային խոտալյուր, կուտակել 4.500 տոննա խոտ և 3.000 տոննա կերի արմատապտուղ։ Դա հնարավորություն կընձեռի հանրային խոտը լիովին ապահովել կերի պաշարով և ստեղծել զգալի քանակությամբ փոխանցիկ ֆոնդ։

Մինչդեռ Իլմազլուի պետտնտեսությունում հակառակ պատկերն է։ Այստեղ, մասնավորապես, խախտվել էին խոտհնձի և սիլոսի ու սենաժի պատրաստման օպտիմալ ժամկետները։ Այդ հանգամանքը բացասաբար է անդրադարձել կուտակվող կերի որակի վրա և խոտհնձի ձգձգման պատճառ դարձել։

Կուսշրջկոմի բյուրոն հանձնարարեց սկզբնական կուսկազմակերպություններին՝ լայնորեն տարածել կերարտադրության գործում Կալինինի անվան պետտնտեսության փորձը։ Իսկ Իլմազլուի տնտեսության թերությունների բացահայտմամբ ձգտում ենք մյուս տնտեսությունների կուսկազմակերպություններին ու ղեկավարությանը զերծ պահել նման թերացումներից։

Կուսշրջկոմը և սկզբնական կուսկազմակերպությունները մեծ ուշադրություն են հատկացնում կերարտադրության աշխատանքի գաղափարական ապահովմանը։ Դեռևս կերի կուտակման նախապատրաստման հարցը քննարկելիս տնտեսությունների ղեկավարների և սկզբնական կուսկազմակերպությունների առջև խնդիր դրվեց՝ ամենուրեք կազմակերպել կերհայթայթման մեքենայացված բրիգադներ և օղակներ, իսկ ոչ մեքենահարմար խոտհարքների համար՝ հնձվորների հարվածային բրիգադներ։ Շրջանում այս տարի գործում են մեքենայացված 66 բրիգադ ու ջոկատ, 65 օղակ։ Ամենուրեք աշխատող ձեռքը մասնակցում է կերի կուտակմանը։ Անհրաժեշտության դեպ-

# ԱՌԵՎՏՐԻ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒՄԸ ԿԱՏԱՐԵԼԱԳՈՐԾԵԼՈՒ ՈՒՂԻՈՎ

**Ա. Ե. ՂԱԶԱՆՉՅԱՆ, Է. Մ. ԹՈՔՄԱՋՅԱՆ**

*Մ*ԵՐ ՀԱՍԱՐԱԿԱՐԳԻ ԶԱՐԳԱՑՄԱՆ արդի փուլում առևտուրը էկոնոմիկայի դինամիկ ճյուղ է, որը մշտապես էական փոփոխություններ է կրում։ Առևտրի զարգացման կարևորագույն խնդիրներից մեկն այդ փոփոխությունների կառավարումն է, որի կատարելագործման հրատապությունն առանձնապես շեշտվեց ՍՄԿԿ XXVI համագումարում։ Ընդ որում հատկապես կարևոր է հաշվի առնել առևտրական ձեռնարկությունների գործունեության առանձնահատկությունները։

Առևտուրը, սպառողական նոր արժեքներ չստեղծելով հանդերձ, մասնակցում է ազգային եկամտի գոյացմանը։ Չնայած առևտրական ձեռնարկություններում առկա են նաև արտադրական բնույթի որոշ գործողություններ, այնուամենայնիվ օրինաչափ չէ այն նյութական արտադրության ոլորտին դասելը։ Ապրանքաշրջանառության ոլորտի գլխավոր ֆունկցիան ապրանքների իրացումն է, որի պրոցեսում ի հայտ է գալիս արտադրված ապրանքների ծավալի, տեսականու և որակի իրական համապատասխանությունը հասարակական պահանջմունքներին։ Հետևաբար, տնտեսության մեջ վերջնական արդյունք է համարվում ապրանքների իրացման մակարդակը, հասարակական ճանաչման և գնողունակ պահանջարկի բավարարման աստիճանը։

Եթե մանրածախ առևտրի սիստեմում կատարվում են որոշ արտադրական օպերացիաներ, որոնք բնորոշ չեն ապրանքաշրջանառության ոլորտին, ապա դա միայն արտադրության և շրջանառության ոլորտների միջև աշխատանքի հասարակական բաժանման անավարտության վկայությունն է։ Ուստի արդի փուլում մանրածախ առևտրի կառավարման արդյունավետությունը պայմանավորված է առևտրի ֆունկցիոնալ առանձնահատկությունների ճշգրտմամբ և կազմակերպական կառուցվածքի կատարելագործմամբ։

Առևտրի՝ որպես փոխանակման ձևի, որոշիչ հատկանիշը մնում է ապրանքային արժեքի փոխակերպումը դրամայինի։ Սակայն ապրանքափոխանակության էությունը դրանով չի սահմանափակվում և բնորոշվում է փոխկապակցված տարրերի միագումարով, որն ընդգրկում է փոխանակվող ապրանքների համարժեքության ձգտումը, համահավասարեցումը, աշխատանքի արդյունքների փաստական փոխակերպումը՝ ապրանքների, դրամի, դրամական շրջանառության։

Որոշ տնտեսագետներ մեծածախ ապրանքների շրջանառությունը, որն իրականացվում է պետական-արտադրական, առևտրական ապարատի օղակների միջև, ըստ էության բնութագրում են ոչ որպես ապրանքաշրջանառություն։ Այդպիսի տեսակետը հիմնվում է այն թյուր պատկերացման վրա, որ իբր արդյունքն ապրանք է դառնում միայն օտարման, այլ սեփականատիրոջ ձեռքն անցնելու պահին, մինչդեռ դրանք իրացվելուց առաջ արտադրվում և տեղաշարժվում են ոչ որպես ապրանք։ Սակայն ապրանքների բնույթի այդ-



պիսի մեկնաբանությունը հակասում է ապրանքային արտադրության և շրջանառության միասնության մարքսյան դրույթին և փաստորեն փոխանակային կոնցեպցիայի արձագանքն է, որի համաձայն հասարակական հարաբերությունները բնութագրվում են փոխանակության էությամբ։ Այդպիսի տեսակետը կարող է ծառայել որպես առևտրում բաշխողական միտումների տեսական հիմնավորում, փոխանակ խորապես գիտականորեն պլանավորելու սոցիալիստական ողջ էկոնոմիկայի այդ օրգանական բաղադրամասը։

«Ապրանքափոխանակություն» և «առևտուր» հասկացություններն ապրանքային զարգացած կապերի պայմաններում արտահայտում են միևնույն գործողությունը, ապրանքների փոխանակությունը դրամի մասնակցությամբ՝ առուծախի միջոցով։ Սակայն դրանք ամենևին էլ նույնական կատեգորիաներ չեն։ Կ. Մարքսն իրարից զատ է վերլուծում և միմյանցից տարբերում է ապրանքային ու առևտրական կապիտալը, ապրանքային շրջանառությունը և առևտուրը (տե՛ս Կ. Մարքս, Կապիտալ, հ. 3, մաս I, էջ 255—257)։ Պարզ է, որ ապրանքաշրջանառությունը կարող է իրականացվել անմիջականորեն ապրանք արտադրողների միջև։ Եվ միայն ապրանքների վաճառքի առանձնացումը (որոշակի հասարակական-պատմական պայմաններում), որպես ձեռնարկությունների գործունեության հիմնական ու շրջանառու ֆոնդերի հատուկ միջնորդ բնագավառի, այն վերածում է առևտրի։ Հետևաբար, ապրանքների շրջանառության ֆունկցիայի առանձնացումը, այն հատուկ առևտրական ձեռնարկություններին վերապահելը և դրանով իսկ առևտուրը էկոնոմիկայի ինքնուրույն ճյուղի վերածելը կարևոր նշանակություն ունեն։ Նախ այն պատճառով, որ ապրանքաշրջանառությունն իրականացվում է հատուկ ձեռնարկությունների միջոցով և պետության համար ավելի էժան է, քան դրա կատարումը անմիջականորեն արտադրողների միջոցով։ Բացի այդ, զգալիորեն արագացվում է հասարակական արդյունքի շրջապտույտը։ Մինչդեռ, մեր տնտեսագիտական գրականության մեջ փորձեր են արվում նույնացնելու փոխանակումը բաշխման հետ, առևտուրը դիտելու որպես բաշխման ձև։ Այդպիսի փորձերը կարող են հանգեցնել պահանջմունքներից խզվելուն, որը մեծապես կվնասի առևտրի ճիշտ կազմակերպմանը։

Առևտրի՝ որպես փոխանակման ձևի, յուրահատկությունների, անբավարար հաշվառումը հանգեցնում է բնակչության վճարունակ պահանջարկի ծավալի ու կառուցվածքի մասին թյուր տեղեկությունների և առանձին հանրապետություններին ու մարզերին ապրանքների անհամաչափ մատակարարման։ Դրա պատճառով թերակատարվում են առևտրական կազմակերպությունների ապրանքաշրջանառության պլանները, մի վայրում կուտակվում են առանձին ապրանքներ, իսկ մի այլ տեղ՝ դրանք պակասում են։

Սակայն ասվածը չի նսեմացնում բաշխման նշանակությունը, չի բացառում բաշխման և առևտրի միջև եղած օրգանական կապը։ Հայտնի է, որ բանվորների, ծառայողների ու կոլտնտեսականների աշխատավարձի գերակշռող մասը վերածվում է սպառման առարկաների։ Դա կատարվում է շրջանառության ոլորտում, առևտրի միջոցով, որը շրջանառության ձևով մասնակցում է բաշխման բարդ մեխանիզմին՝ որպես աշխատանքի արդյունքի տեղաշարժի առանձնահատուկ տնտեսական ձև։ Այս իրողության գիտակցումն առևտրի ճիշտ կազմակերպման հիմքն է։

Հասարակության մեջ եկամուտների բաշխմամբ պայմանավորված է ապրանքաշրջանառության ծավալը, ինտենսիվությունը, կառուցվածքը և տերիտորիալ տեղաբաշխումը։ Իր հերթին, շրջանառությունն ակտիվորեն ներազդում է ինչպես բաշխման, այնպես էլ սպառման վրա։

Առևտրի պլանաչափ զարգացումը հնարավորություն է ընձեռում սոցիալիստական հասարակարգում ակտիվորեն կիրառելու արժեքի օրենքը՝ որպես տնտեսական բոլոր պրոցեսների, այդ թվում նաև բաշխման վրա ներազդելու միջոց։ Պետությունը կարող է գիտակցաբար սահմանել ապրանքների գները՝ ինքնարժեքների նկատմամբ այս կամ այն շեղումով, դրանով իսկ ներազդելով բաշխման և սպառման վրա։

Մանրածախ առևտուրը ապրանքներն արտադրողներից սպառողներին է

կրճատելով այն), հաջողվեց միավորումներում ամրապնդել առևտրի կազմակերպման, աշխատանքի և աշխատավարձի, նոր տեխնիկայի, կապիտալ շինարարության և մյուս ծառայությունները, միավորել այնպիսի ֆունկցիաներ, ինչպես առևտրային աշխատանքը, հաշվապահական հաշվառումը, շինվերանորոգման աշխատանքները, տեխնիկայի տեղադրումը, մոնտաժումը և սպասարկումը: Միաժամանակ բարելավվել է խանութների մատակարարումը՝ դիսպետչերական հզոր ծառայություն ստեղծելու միջոցով, որն իր վրա է վերցրել ամբողջ օպերատիվ աշխատանքը: Դրանով խանութների ղեկավարների ջանքերը կենտրոնացվել են գնորդների սպասարկումը բարելավելու վրա: Ղեկավարման այդպիսի սիստեմի անցնելու շնորհիվ բարելավվել է առևտրական ձեռնարկությունների կառավարման ու ղեկավարման օպերատիվությունը, նկատելիորեն կրճատվել են դեֆիցիտային ապրանքների վաճառքի ընդհատումները: Առավել համաչափ են կատարվում պլանները, ռացիոնալ են օգտագործվում կապիտալ ներդրումները, պահեստային տարողությունները, տրանսպորտը, նկատելիորեն բարձրացել է առևտրի կուլտուրան:

Սակայն միավորումների ստեղծումը դեռևս բոլոր պրոբլեմները չի լուծում: Դրանք առայժմ հիմնվում են միայն առանձին, ոչ մեծ քաղաքներում: Հետաքրքրական փորձ է կուտակվել լիտվական Կլայպեդա քաղաքում: Այստեղ իրականացված է առևտրի կառավարչական ֆունկցիաների համակենտրոնացում՝ դրա ֆունկցիոնալ կառուցվածքի բարելավմամբ: Ստեղծված են արդյունաբերական ապրանքների առևտրի յոթ ապրանքաճյուղային միավորումներ (կտորեղենի, կոշկեղենի, հագուստի, տրիկոտաժի, գալանտերիայի, տնտապրանքների, կահույքի) և պարենային ապրանքների առևտրի հինգ միավորում: Դրանք բոլորը ենթակա են առևտրի քաղաքային տնտհաշվարկային վարչությանը, որն իր ձեռքում կենտրոնացրել է տնտեսական այնպիսի հարցերի լուծումը, ինչպես շինարարությունը, վերանորոգումը, նյութատեխնիկական մատակարարումը, տրանսպորտը, կոմունալ սպասարկումը: Կառավարման այդպիսի կառուցվածքը կիրառվում է նաև մի շարք այլ քաղաքներում: Փորձը վկայում է, որ այն տնտեսապես արդարացվում է 100—200 հազար բնակչություն ունեցող քաղաքներում, որտեղ առևտրական կազմակերպությունները հեռու են մատակարարման մեծածախ բազաներից և ունեն իրենց հիմնական պահեստային տնտեսությունները:

Հետաքրքրական է նաև Պենզայում իրականացվող փորձը: Այստեղ մշակված է առևտրի կառավարման սկզբունքորեն այլ սխեմա: Մարզային կենտրոնում կառավարման ստորին օղակները՝ տորգերը, առհասարակ վերացված են: Գլխամասային ձեռնարկությունների բազայի վրա ստեղծվել են հինգ խոշորացված, մասնագիտացված, տնտհաշվարկային առևտրական ձեռնարկություններ, որոնք իրացնում են ոչ մթերային ապրանքները (կահույք և տնտապրանքներ, ռադիոապրանքներ, ապրանքներ երեխաների, կանանց, տղամարդկանց համար) և մթերային առևտրի վեց տերիտորիալ միացյալ դիրեկցիաներ, որոնք ենթակա են անմիջականորեն առևտրի մարզային վարչությանը: Գլխամասային ձեռնարկությանը ենթակա խանութները գործում են մասնաճյուղերի կամ սեկցիաների իրավունքներով:

Աշխատանքի կազմակերպման այդ ձևի առավելությունն այն է, որ ապրանքների համասեռ խմբերը իրացնող առևտրական օղակների կառավարումը ամբողջ քաղաքի մասշտաբով կենտրոնացված է: Դա հնարավորություն է ընձեռում առավել լավ ուսումնասիրելու գնորդների պահանջարկը, ակտիվորեն ներգործելու արդյունաբերության վրա, ռացիոնալ օգտագործելու ապրանքային զանգվածը, բարելավելու ըստ տեսակների, մոդելների և գույների ապրանքների ենթատեսակավորման վերահսկողությունը: Այդ կապակցությամբ որոշ վերակառուցումներ են իրականացվել մարզի մեծածախ առևտրի օղակում, որն այժմ պարտավոր է ապրանքները հասցնել անմիջականորեն խանութները՝ համաձայն դրանց պրոֆիլին և հաստատված տեսականու:

Մի շարք հանրապետություններում ստեղծված են կահույքի, սպորտապրանքների, ոսկերչական իրերի, հագուստեղենի և կոշկեղենի առևտրի մեծածախ-մանրածախ միավորումներ: Դրա շնորհիվ առավել սերտորեն են զու-



գակցված մեծածախ և մանրածախ առևտրի շահերը, բարձրանում է մեծավաճառքի պատասխանատվությունը խանութների աշխատանքի վերջնական արդյունքի համար: Օրինակ, Լիպեցկի մարզում կահույքի առևտրի մեծածախ-մանրածախ միավորումն իր ձեռքում է կենտրոնացրել ամբողջ մարզի կահույքի ֆոնդի 59 տոկոսը, այդ թվում՝ պետական առևտրի ֆոնդերի 88 տոկոսը: Դրա շնորհիվ միավորումը կարողանում է ավելի լավ ուսումնասիրել բնակչության պահանջարկը, հիմնավորված պահանջներ ներկայացնել մատակարարողներին: Փորձը միաժամանակ վկայում է, որ մեծաքանակ-մանրածախ միավորումների կազմակերպումը նպատակահարմար է ապրանքային ոչ բոլոր խմբերի համար: Օրինակ, թեթև արդյունաբերության արտադրանքի առևտրի համակենտրոնացման աստիճանն ու ռեսուրսների վիճակը, տվյալ դեպքում, հնարավորություն չի ընձեռում արդյունավետ կերպով օգտագործելու այդ կազմակերպական ձևը:

Առևտրի կազմակերպման նոր հետաքրքրական ձևեր են մշակված Բելոռուսական ՍՍՀ-ում: Նախկինում գործող մեծածախ առևտրի հանրապետական ութ գրասենյակները վերացված են և մարզային մեծածախ միավորումները, բազաները, գրասենյակները և սառցակոմբինատները փոխադրված են անմիջականորեն առևտրի մինիստրության ենթակայության ներքո: Բացի այդ, Գոմելի մարզում, փորձի կարգով, հագուստի, կոշիկի և տեքստիլ ապրանքների մարզային մեծածախ կազմակերպությունների բազայի վրա ստեղծվել է մեկ մեծածախ միավորում: Այդ նույն ձևով միավորվել են նաև կուլտընտապրանքների և գալանտերիայի մարզային մեծածախ բազաները:

Կիրառվում են նաև առևտրի կառավարման այլ կազմակերպական նոր ձևեր: Չնայած դրանց մեծ մասի առավելություններն ակնհայտ են, սակայն առայժմ դրանք լայն տարածում չունեն: Դրա պատճառները մի քանիսն են: Առևտրի ղեկավարման միութենական և հանրապետական մարմինները, սահմանափակվելով ընդհանուր հանձնարարականներով, անհրաժեշտ ակտիվություն հանդես չեն բերում կառավարման նոր և իրենց արդարացրած ձևերը ներդնելու համար: Թույլ է կապը գիտության հետ: Պետական առևտրի կառավարման կազմակերպական փոփոխություններն ընդգրկում են հիմնականում առևտրի մինիստրության սիստեմը և չեն շոշափում զուգահեռ գործող՝ բանվորական մատակարարման (օրս) առևտրական ցանցը: Մինչդեռ, կառավարման վերակառուցումն արդյունավետ է միայն այն դեպքում, երբ վերացվում է զուգահեռականությունը, հստակ սահմանազատվում են տարբեր առևտրական սիստեմների գործունեության շրջանակները:

Այժմ միութենական բոլոր հանրապետություններում մշակվում են առևտրի կառավարման գլխավոր սխեմաներ: Դրանք առևտրի սիստեմների և ենթաճյուղերի (մանրածախ և մեծածախ առևտուր, հասարակական սնունդ, տեխնիկական սպասարկում և այլն) կառավարման կատարելագործման, տնտեսապես հիմնավորված կոմպլեքսային ծրագրեր են, որոնց նպատակն է տնտեսական գործունեության համակենտրոնացման հիման վրա ճյուղի սոցիալ-տնտեսական արդյունավետության և աշխատանքի արտադրողականության բարձրացումը, հիմնական և շրջանառու ֆոնդերի և աշխատանքային ռեսուրսների օգտագործման բարելավումը, ապրանքաշրջանառության արագացումը, շահութաբերության աճը և կառավարման ռացիոնալ սիստեմների ստեղծումը:

Գլխավոր սխեմաներում միջոցառումներ են նախատեսվում ամրապնդելու առևտրական կազմակերպություններն ու ձեռնարկությունները, ռացիոնալ տեղաբաշխելու խանութները, հասարակական սննդի ձեռնարկությունները, պահեստները, ունիվերսալացնելու ձեռնարկություններն ու կազմակերպությունները, կատարելագործելու ապրանքամատակարարման սիստեմները, ապահովելու առևտրական կազմակերպությունների օպտիմալ տնտեսական կապերը միմյանց, ճյուղի կառավարման մարմինների, ինչպես նաև ժողովրդական տնտեսության մյուս ճյուղերի հետ՝ հաշվի առնելով գիտատեխնիկական առաջընթացի նվաճումների հիման վրա առևտրի հեռանկարային զարգացման հիմնական ուղղությունները:

Առևտրի կառավարման կատարելագործման միջոցառումները կիրագործվեն ըստ փուլերի։ Ընթացիկ հնգամյակի տարիներին հիմնականում կավարտվի քաղաքներում և քաղաքատիպ ավաններում առևտրական կազմակերպությունների ու ձեռնարկությունների գործունեության զուգահեռականության ու բազմաքանակության վերացումը, առևտրական կազմակերպությունների խոշորացումը, ինչպես նաև առևտրական միավորումների ռացիոնալ տեսակների ստեղծման համար պայմանների նախապատրաստումը։ Հաջորդ տարիներին՝ մինչև 1990 թ. կստեղծվեն նոր տիպի առևտրական միավորումներ։

Առևտուրը գործնականում առնչվում է էկոնոմիկայի մյուս բոլոր ճյուղերի հետ, որոնք փոխկապակցված են և որոշակիորեն փոխազդում են միմյանց գործունեության վրա։ Այս կապակցությամբ արդի պայմաններում առավել կարևորվում է առևտրի դերը երկրի պարենային ծրագրի իրականացման ասպարեզում։ ՍՄԿԿ Կենտկոմի 1982 թ. մայիսյան պլենումը խնդիր դրեց միավորել գյուղատնտեսության և նրան սպասարկող արդյունաբերության ճյուղերի ու առևտրի աշխատանքը, դրանց ամբողջ գործունեությունը ենթարկել վերջնական նպատակին՝ մթերքների արագորեն ավելացմանը, բնակչությանը պարենային բոլոր տեսակներով ապահովմանը, սննդի բաղադրակազմի էական բարելավմանը։

Մթերքների կորուստները նվազեցնելու համար պահանջվում է մեծ աշխատանք տանել մթերող, առևտրական, վերամշակող կազմակերպությունների հետ գյուղատնտեսական ձեռնարկությունների արտադրատնտեսական հարաբերությունները կատարելագործելու, դրանց միջև ուղղակի կապերն ընդլայնելու բնագավառում։

Առևտուրը բնութագրվում է պրոցեսների դինամիկությամբ, ձեռնարկությունների լայնորեն տարածված ցանցով, ապրանքների մեծաքանակ տեսակներով, վիթխարի արժեքներով, որոնք գտնվում են անընդհատ շարժման մեջ և այդ ամենի հետևանքով՝ շրջաբերական ինֆորմացիայի հսկայական հոսքով, որը պահանջում է օպերատիվ և մանրակրկիտ մշակում ու վերլուծություն։

Այս բարդ տնտեսական օրգանիզմի կառավարումը հին մեթոդներով, հին տեխնիկայի բազայի հիման վրա այսօր արտակարգ դժվար է, իսկ վաղը առհասարակ անհնար կլինի։

---

# ԱՇԽԱՏՈՒԺԻ ԱՐԴՅՈՒՆԱՎԵՏ ՕԳՏԱԳՈՐԾՄԱՆ ՀԱՄԱՐ

ԱՍՏՂԻԿ ՄԻՐԶԱԽԱՆՅԱՆ

ՄԵՐ ԵՐԿՐԻ ԷԿՈՆՈՄԻԿԱՅԻ զարգացման արդի փուլում, երբ հետևողականորեն բարձրանում են արտադրության արդյունավետությունն ու որակը, խիստ հրատապ է դարձել այդ պրոբլեմների բազմակողմանի ուսումնասիրությունը։ Դրանց թվին են դասվում մարդու աշխատանքային գործունեության հետ առնչվող սոցիալ-տնտեսական հետազոտությունները, որոնց նպատակն է բարձրացնել յուրաքանչյուր անհատի ստեղծագործական ակտիվությունը, համակողմանիորեն բավարարել նրա նյութական, հոգևոր ու կուլտուրական պահանջմունքները։

Աշխատանքի և արտադրության արդյունավետության բարձրացմանը կարելի է հասնել ո՛չ միայն զուտ տնտեսական գործոնների ու լծակների ռացիոնալ օգտագործման միջոցով։ Յուրաքանչյուր ձեռնարկության կոլեկտիվի արտադրական գործունեության հաջողությունները պայմանավորված են նաև սոցիալ-տնտեսական բնույթի գործոններով, ինչպիսիք են՝ յուրաքանչյուր աշխատողի վերաբերմունքն ու հակումները տվյալ մասնագիտության նկատմամբ, կրթությունն ու որակավորումը բարձրացնելու համար նպաստավոր պայմանների ապահովումը, աշխատանքի ու հանգստի ռացիոնալ ռեժիմի կիրառումը, աշխատանքային ու կենցաղային պայմանների բարելավումը, բարոյական խթանման մեթոդների ճիշտ կիրառումը և այլն։

Նշված խնդիրների բազմակողմանի ուսումնասիրությունն ու հաշվառումը կարևոր նշանակություն ունի աշխատուժի տեղաշարժի բուն պատճառները բացահայտելու և այն կարգավորելու առումով։ Այդ երևույթը դրսևորվում է մի շարք ուղղություններով, ինչպես, օրինակ՝ աշխատուժի սոցիալական շարժը, որը կապված է հասարակության մեջ աշխատողի դիրքի փոփոխման հետ (արտադրությունից հեռանալը՝ սովորելու նպատակով, ուսումնավարտելուց հետո ինժեներական կամ ծառայողական աշխատանքի ստանձնումը և այլն), աշխատուժի տեղաշարժը տնտեսության տարբեր բնագավառների, ճյուղերի միջև և դրանց ներսում, աշխատուժի տերիտորիալ տեղաշարժը՝ կապիտալ ներդրումների բաշխման և կառուցվածքային տեղաշարժերի կապակցությամբ, բանվորական ուժի պրոֆեսիոնալ շարժը և բանվորական ուժի անպլանային տեղաշարժը, կամ ինչպես ընդունված է այն անվանել՝ աշխատուժի հոսունություն։ Վերջինս ձեռնարկության տեսանկյունից պայմանավորված չէ արտադրական անհրաժեշտությամբ և աշխատաժամանակի զգալի կորուստների ու նյութական միջոցների ծախսման պատճառ է դառնում։

Պրակտիկայում աշխատուժի հոսունությանն են վերագրվում աշխատանքից «իր դիմումի համաձայն» ազատվածները, գործալքումների, աշխատանքային կարգապահությունը խախտելու, տվյալ աշխատանքին անընդունակ լինելու կամ վստահությունը կորցնելու, ազատազրկման հետևանքով աշխատանքից հեռանալու դեպքերը։

Աշխատանքի պրոցեսում աշխատողն անմիջական շփման մեջ է մտնում ձեռնարկության կոլեկտիվի, նրա ղեկավարության հետ, որին հասարակությունն իրավունք է տվել տնօրինելու արտադրության որոշակի միջոցներ։ Աշխատողների նյութական, սոցիալ-կուլտուրական և կենցաղային-կոմունալ պահանջմունքների բավարարումը միաժամանակ իրականացվում է ձեռնարկու-

թյունների միջոցների հաշվին, որն էլ մեծ մասամբ պայմանավորված է կոլեկտիվի արտադրական հաջողություններով։ Այսինքն, այդ պահանջմունքների բավարարման մակարդակը կապված է ո՛չ միայն աշխատողների անձնական ջանքերի և արտադրական ցուցանիշների, այլև այն բանի հետ, թե ձեռնարկության ղեկավարությունն ինչպես է կարողանում կազմակերպել կոլեկտիվի աշխատանքը և ինչպես է օգտագործում իրեն հատկացված արտադրամիջոցները։ ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեի, ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի և ՀԱՄԿԽ-ի 1979 թ. «Ժողովրդական տնտեսության մեջ աշխատանքային կարգապահության հետագա ամրապնդման և կադրերի հոսունության կրճատման մասին» որոշմամբ քննադատվում են ձեռնարկությունների այն ղեկավարները, որոնք լուրջ ուշադրություն չեն նվիրում աշխատանքային կարգապահության ամրապնդմանը, աշխատանքային պայմանների բարելավմանը, արտադրության ռիթմիկ կազմակերպմանը, որի հետևանքով մեծանում է բանվորական ուժի հոսքը, որը վնասում է ժողովրդական տնտեսությանը։

Լոկ տնտեսական գործոնների վերլուծությունը բավարար չէ աշխատուժի հոսունության պատճառներն ու շարժառիթները բացահայտելու համար։ Անհրաժեշտ է նաև ձեռնարկության արտադրատնտեսական գործունեության վերլուծության հետ մեկտեղ կատարել սոցիոլոգիական հետազոտություններ, որոնց արդյունքները կնպաստեն ստանալու ձեռնարկության գործունեության առավել ընդհանուր ու ճիշտ պատկերը և լուծելու աշխատուժի արդյունավետ օգտագործման բարդ խնդիրը։

Հանրապետության տեքստիլ արդյունաբերության մեջ, օրինակ, աշխատուժի հոսունությունը հասնում է 15, տրիկոտաժի արտադրությունում՝ ավելի քան 10 տոկոսի։ Միայն տրիկոտաժի ձեռնարկություններում տարեկան միջին հաշվով աշխատանքի է ընդունվում 2.500 և աշխատանքից ազատվում 2.200 բանվոր, որոնց պատրաստման ու վերապատրաստման համար զգալի միջոցներ ու ժամանակ են ծախսվում։ Թերևս դա է այն պատճառներից մեկը, որ 1976—1980 թվականների ընթացքում հանրապետության խոշոր ձեռնարկություններից մեկում՝ Սովետաշենի տրիկոտաժի արտադրամիավորումում, աշխատանքի արտադրողականությունը Միության առաջավոր ձեռնարկությունների համապատասխան միջին ցուցանիշից ցածր է եղել 20—22 տոկոսով։ Ընդ որում այդ միավորման հիմնական մասնագիտության բանվորների 10—15 տոկոսը ևս յուրաքանչյուր տարի համալրվում է նոր ընդունված բանվորներով, որոնց վերապատրաստման ծախսերը միայն 1981 թ. կազմել է 5 հազար ռուբլի։

Հանրապետության տրիկոտաժի արդյունաբերության ձեռնարկություններում աշխատուժի հոսունության մեջ գերակշռողը՝ մոտ 60 տոկոսը, «իր դիմումի համաձայն» աշխատանքից ազատվողներն են։ Նշված պատճառով աշխատանքից ազատվելու ենթապատճառների տակ թաքնված են աշխատուժի տեղաշարժի տարբեր ձևերը՝ միջճյուղային, պրոֆեսիոնալ, տերիտորիալ, սոցիալական և այլն, որոնք իրենց հիմքում ունեն օբյեկտիվ դրդապատճառներ։ Այսինքն, «իր դիմումի համաձայն» աշխատանքից ազատվելը կարող է կապված լինել արտադրության մի այլ, առավել առաջատար ճյուղում աշխատանքի անցնելու, առավել հեռանկարային մասնագիտություն ձեռք բերելու, տեխնիկապես կատարելագործված ձեռնարկություններում աշխատանքի տեղավորվելու հետ։ «Խոշոր արդյունաբերության բնույթը,— գրում է Կ. Մարքսը,— պայմանավորում է աշխատանքի փոփոխությունը, ֆունկցիաների շարժումը, բանվորի բազմակողմանի շարժունությունը» (Կ. Մարքս, Կապիտալ, հ. 1, էջ 511)։ Ուստի նշված շարժառիթներով աշխատանքից ազատվելը չպետք է հաշվարկել հոսունության ցուցանիշի մեջ (ինչպես արվում է պրակտիկայում)։ Այսպիսով, աշխատուժի հոսունությունն իր մեջ թաքցնում է երկու տարատեսակ երևույթ՝ չպլանավորված, սակայն համեմատաբար կայուն տեղաշարժ (արտադրության առավել առաջադեմ ճյուղեր, կառավարման ոլորտ ներգրավումով) և, ո՛չ միայն չպլանավորված, այլև արտադրության տեսանկյունից աննպատակահարմար տեղաշարժ, որն ուղղված է տվյալ անհատի աշխատուժի գործադրման համար առավել հրապուրիչ միջավայր գտնելուն և կրում է անկազմակերպ, տարերային բնույթ։



Բացասական իմաստով աշխատուժի հոսունություն պետք է համարել միայն երկրորդը։ Հոսունության նշված երկու կերպերն էլ կապված են հասարակական միջոցների զգալի ծախսումների հետ։ Սակայն ծախսերը նշված առաջին ձևի դեպքում հասարակության մասշտաբով փոխհատուցվում են արտադրության նոր, առաջադեմ ճյուղերում և տեղամասերում աշխատանքի արտադրողականությունը բարձրացնելու և արտադրանքի որակը բարելավելու միջոցով, մինչդեռ երկրորդի դեպքում կատարված ծախսերը թե՛ հասարակության և թե ձեռնարկության համար ուղղակի և բացարձակ կորուստներ են։ Դրանք հիմնականում գոյանում են նոր միջավայրին անհատի ընտելանալու ժամանակ, որի ընթացքում, բացի վերապատրաստման համար պահանջվող պատկառելի միջոցներից, իջնում են աշխատանքի արտադրողականությունը, արտադրանքի որակը, հաստոցների օգտագործման գործակիցը, բանվորի ստեղծագործական նախաձեռնությունը և այլն։

Սովետաշենի տրիկոտաժի արտադրամիավորման հիմնական մասնագիտությունների բանվորների արտադրանորմաների թերակատարման պատճառների ուսումնասիրությունը վկայում է, որ արտադրության կազմակերպման մեջ եղած թերություններից բացի, նորմաների թերակատարման և ցածրորակ արտադրանքի պատճառ են նաև բանվորների որակավորման ցածր մակարդակը, արտադրական փորձի և հմտության պակասը, որն առավել բնորոշ է նոր ընդունված բանվորների համար։ Այսպես, միավորման ձեռնարկությունների արտադրական նորմաները թերակատարող բանվորների ընդհանուր թվի մոտ 71 տոկոսը մինչև երկու տարվա աշխատանքային ստաժ ունեցող բանվորներն էին։ Արտադրամիավորման Թալինի և Եղնիկի տրիկոտաժի ձեռնարկություններում նորմաների կատարումը 100 տոկոսի հասցնելու դեպքում աշխատանքի արտադրողականությունը կաճեր 1,8 տոկոսով, զգալիորեն կբարելավվեր արտադրանքի որակը։ Բացի այդ, հաստոցների սպասարկման գոտիները աշխատանքային փորձ չունեցող բանվորների մոտ տարբեր արտադրամասերում 15—20 տոկոսով պակաս է սահմանված միջին նորմայից, որը խոչընդոտում է արտադրական կարողությունների լրիվ օգտագործմանը։

Հատկանշական է, որ տրիկոտաժի արդյունաբերության բանվորների 79 տոկոսը կանայք են, որոնց աշխատանքից հեռանալու պատճառները յուրահատուկ են։ Իրենց բազմազանությամբ ու առանձնահատկությամբ տարբերվում են նաև հասարակական արտադրության մեջ կանանց ներգրավելու պայմանները։ Դրանք պայմանավորված են միայն կանանց հատուկ ֆիզիոլոգիական, կենցաղային, սոցիալական հանգամանքներով։

Հաշվի առնելով այդ առանձնահատկությունները, փորձել ենք Սովետաշենի տրիկոտաժի արտադրամիավորման ձեռնարկություններում (Սովետաշենի գլխամասային, Թալինի, Եղնիկի, Նորքի երկու ֆաբրիկաներում) բացահայտել աշխատուժի հոսունություն հարուցող հիմնական պատճառները և նշել այն կանխելու հնարավորությունները։ Նման հետազոտության համար հիշյալ ձեռնարկությունների ընտրությունը պատահական չէր։ Ճիշտ է, վերջին տարիներին միավորման արտադրատնտեսական ցուցանիշներն ընդհանուր առմամբ բարելավվել են (1976—1980 թթ. արտադրանքի իրացման պլանը գերակատարվել է 10, աշխատանքի արտադրողականությանը՝ 9 տոկոսով, նախորդ հնգամյակի համեմատ նվազել է նաև աշխատուժի հոսունությունը), այնուամենայնիվ, կադրային աշխատողների հոսքն այստեղ դեռևս մեծ չափերի է հասնում։ Մեր ուսումնասիրություններից պարզվում է, որ աշխատանքից ազատվելու համեմատաբար ծանրակշիռ պատճառներն են՝ փոքրահասակ երեխաներին և ընտանիքի մյուս անդամներին խնամելու հոգսը՝ (մոտ 50 տոկոս), վատառողջ լինելը (11,2), իր հակումներին ու մասնագիտական պատրաստականությանը աշխատանքի անհամապատասխանությունը (10,5), ցածր աշխատավարձը (9,8), ինչպես նաև բնակավայրը աշխատավայրից հեռու գտնվելը (7,5)։

Հետաքրքրական են նաև արտադրությունից հեռացողների տարիքային կազմի, աշխատանքային ստաժի ու կրթական ցենզի վերաբերյալ տվյալները։ Դրանց համաձայն, աշխատանքից ազատվողների միայն 35 տոկոսն ուներ

տվյալ ձեռնարկությունում 5 և ավելի տարիների աշխատանքային ստաժ, մնացած 65 տոկոսինը դրանից պակաս էր։ Ընդ որում մինչև մեկ տարվա աշխատանքային ստաժ ունեցողները կազմում էին հիշատակված ամիսներին ազատվողների 22 տոկոսը։

Տարիքային կազմի տվյալների վերլուծությունից պարզվում է, որ աշխատանքից ազատվողների ընդհանուր թվի 58 տոկոսը 20—35 տարեկան երիտասարդ կանայք են, որոնց ճնշող մեծամասնությունը մանկահասակ երեխաներին խնամող չունի։ Վերջինս էլ հոսունության պատճառներում իր տեսակարար կշռով գրավում է առաջին տեղը։ Արտադրությունից հեռացողների ընդհանուր թվի 21 տոկոսն ուներ տարրական, 18,7-ը՝ ոչ լրիվ միջնակարգ, իսկ ավելի քան 60 տոկոսը՝ լրիվ միջնակարգ ու հատուկ մասնագիտական կրթություն։ Ընդհանրապես, կա որոշակի օրինաչափություն աշխատանքից ազատվողների կրթական մակարդակի, աշխատանքային ստաժի և որակավորման աստիճանի միջև։ Աշխատատեղը հաճախակի փոխում են գլխավորապես ցածր որակավորում ու կրթական մակարդակ և պակաս ստաժ ունեցողները։ Սակայն կանանց աշխատուժի հոսունության պատճառներում նման օրինաչափություն գրեթե չի նկատվում։ Դա հետևանք է այն բանի, որ կանանց աշխատուժի հոսունության գլխավոր պատճառը՝ մանկահասակ երեխաների խնամքի կազմակերպման անհրաժեշտությունը և տնային տնտեսությունը վարելու հոգսերը դժվար է զուգակցել հասարակական աշխատանքի հետ, և նրանք մտիպված թողնում են աշխատանքը անկախ որակավորումից, կրթական ցենզից և աշխատանքային ստաժից։ Այս հանգամանքը բավական մեծ ջանքեր և աշխատանքի կազմակերպման ճկուն ձևեր է պահանջում կանանց աշխատուժ կիրառող ձեռնարկությունների ղեկավարությունից։

Հետազոտության ընթացքում աշխատանքից ազատվել ցանկացող բանվորուհիների հետ զրույցից պարզվեց, որ երեխաների խնամքը կազմակերպելու պատճառով արտադրությունից հեռացողների մոտ 60 տոկոսը կուզենար շարունակել աշխատանքը, եթե հնարավոր լիներ երեխաներին տեղավորել նախադպրոցական մանկական հիմնարկություններում։ Բանվորուհիների մի մասն էլ ցանկանում էր երեխաների խնամքը կազմակերպել տանը, սեփական ուժերով։ Վերջիններս հիմնականում մանկամսուրային հասակի երեխաներ ունեցող մայրերն էին։ Երեխաներին խնամելու համար աշխատանքից ազատվողների 33 տոկոսն ուներ դպրոցահասակ երեխաներ, որոնց մի մասը ցանկանում էր շարունակել աշխատանքը՝ դպրոցների երկարօրյա խմբերում երեխաներին տեղավորելու պայմանով։

Միավորման ձեռնարկություններում աշխատուժի հոսունության գլխավոր պատճառներից մեկն էլ համապատասխան մասնագիտության աշխատանք չունենալն է և աշխատավարձի մակարդակը։ Սակայն տարիֆային ցածր դրույքները (տրիկոտաժագործների տարեկան միջին աշխատավարձը տեքստիլ և կոշիկի արտադրությունների բանվորների աշխատավարձի միջին մակարդակից ցածր է 11—20 տոկոսով), դրան ավելացրած որակավորման տարակարգերի մեջ եղած թերությունները նվազեցնում են աշխատավարձի բարձրացման ռեալ հնարավորությունները։ Այդ իսկ պատճառով բանվորուհիների մի մասը ձգտում է փոխել աշխատատեղը (հաճախ նույնիսկ մասնագիտությունը) և աշխատանքի անցնել այնպիսի ձեռնարկություններում, ուր վարձատրության պայմաններն առավել նպաստավոր են։

Ի տարբերություն արդյունաբերության մյուս ճյուղերի, տրիկոտաժի արդյունաբերության հիմնական մասնագիտությունների բանվորներին որակավորման տարակարգեր չեն տրվում։ Այսպես, ֆանգովի մեքենաներով գործողները, թել մանողներն ու փաթաթողները ստանում են երրորդ կարգի որակավորում, որը հաստատուն է նշված մասնագիտությունների համար։ Բանվորն իր տարակարգը չի կարող փոխել այնքան ժամանակ, քանի դեռ չի փոխել իր մասնագիտությունը։ Ստացվում է այնպես, որ տարիֆային դրույքներով նախատեսված վարձատրությունը նույնն է ինչպես նոր ընդունված, այնպես էլ երկարամյա աշխատանքային փորձ և հմտություն ունեցող բանվորի համար։ Եթե արդյունաբերության մյուս ճյուղերի բանվորները, տարիների ըն-



թացքում տիրապետելով աշխատանքային պրոցեսի նրբություններին ու բարդությանը, կարող են բարձրացնել իրենց որակավորման տարրակարգը, ապա տրիկոտաժագործների ճնշող մեծամասնությունը զրկված է այդ հնարավորությունից։

Աշխատանքի վարձատրման նման կարգը խիստ սահմանափակում է հիմնական մասնագիտությունների բանվորների շահագրգռվածությունը արտադրության նորույթներն ընկալելու, մասնագիտության մեջ խորանալու, աշխատանքի առաջադեմ մեթոդներն ընդօրինակելու և այդ միջոցով արտադրական որակավորումը բարձրացնելու հարցում։ Մյուս կողմից, տրիկոտաժի արդյունաբերության ձեռնարկություններում տեխնիկական վերափոխումներն անհամեմատ արագ են կատարվում, քան թեթև արդյունաբերության մյուս ճյուղերում։ Այսպես, միայն 1976—1978 թվականների ընթացքում Սովետաշենի տրիկոտաժի միավորման ձեռնարկությունների արտադրաֆոնդերն աճել են մեկ երրորդով, ընդ որում ավելի բարձր տեմպերով է աճել դրանց ակտիվ մասը, որի շնորհիվ մեքենանյացված աշխատանքի տեսակարար կշիռը 1980-ին կազմել է մոտ 70 տոկոս։ 1975 թ. գործող մեքենաների ընդհանուր պարկում նոր տիպի հաստոցների բաժինը կազմում էր ավելի քան 75 տոկոս, կարող մեքենաներինը՝ 30։ Նման պայմաններում աշխատանքի վարձատրության հիշատակված ձևը արդյունավետ լինել չի կարող։ Մասամբ դա է պատճառը, որ չնայած տեխնիկական զգալի վերափոխումներին, շատ բանվորների արտադրական որակավորումը դանդաղ է բարձրանում։ Ուստի անհրաժեշտ է վարձատրության մակարդակը ևս պայմանավորել աշխատողների արտադրական որակավորումով։ Եվ միանգամայն ժամանակին է ՍՍՀՄ արհմիությունների XVII համագումարում ընկեր Լ. Ի. Բրեժնևի առաջադրած դրույթը, որ անհրաժեշտ է լրջորեն խորամուխ լինել այն հարցում, թե ինչպես առավել ուղղակի, տեսանելի դարձնել աշխատանքի և վարձատրության միջև եղած կապը։ Մեր կարծիքով, աշխատավարձի դիֆերենցման հիմքում կարելի է դնել տվյալ կոնկրետ մասնագիտությունների բանվորների աշխատանքային ստաժի տարբերությունները (օրինակ՝ 1—5 տարի, 5—10 տարի և այլն)։ Ճիշտ է, թվարկված խմբերի ներսում ստաժը, հետևաբար նաև բանվորի հմտությունը տարբեր է, բայց այդ տատանումներն անհամեմատ փոքր կլինեն, և այն կկարգավորվի համեմատաբար փորձառու բանվորների կողմից քանակով շատ և որակյալ արտադրանք տալու շնորհիվ ստացած բարձր վարձատրությամբ։

Ուսումնասիրությունից պարզվեց, որ աշխատանքից ազատվել ցանկացողների մոտ 40 տոկոսը դժգոհում է երեկոյան հերթափոխի առկայությունից (բանվորուհիների մի զգալի մասի բնակավայրը, ինչպես նշվեց, հեռու է աշխատավայրից)։ Շատերը ցանկանում են աշխատել ոչ լրիվ աշխատանքային օր։ Թեպետև ձեռնարկությունների ղեկավարությունը, ընդառաջելով փոքր երեխա ունեցող մայրերի ցանկությանը, նրանց զգալի մասի համար սահմանել է կեսհերթյա աշխատանքային օր, սակայն դա դեռևս չի բավարարում առկա պահանջները։ Տրիկոտաժի ձեռնարկություններում կեսհերթյա աշխատանքի կազմակերպումը կապված չէ մեծ դժվարությունների հետ, քանի որ այնտեղ բանվորի աշխատանքային պրոցեսն ավարտուն է, այսինքն՝ թել մանողը, ոլորողը, գործողը կատարում են իրենց պարտականությունները՝ անմիջականորեն չառնչվելով գործընկերների հետ։ Այս հանգամանքը նպաստում է առանձնացված հաստոցների վրա կեսհերթյա աշխատանք կազմակերպելուն։

Աշխատանքի արտադրողականության բարձրացմանը խոչընդոտում են նաև աշխատանքային ոչ բարվոք պայմանները (օդի ապականվածությունը, խոնավությունը, աղմուկը և այլն)։ Դա հատկապես վերաբերում է Թալինի, Եղնիկի և Նորքի № 1 տրիկոտաժի ֆաբրիկաներին։ Դրանք նույնպես հանգեցնում են հոսունության ավելացմանը։

Ինչպես նշվեց, Սովետաշենի տրիկոտաժի արտադրամիավորման ձեռնարկություններում կատարվել են տեխնիկական վերափոխումներ, և այժմ բանվորն ավելի շատ հսկում և ղեկավարում է մեքենաների աշխատանքը։ Գլխամասային ձեռնարկությունում տեխնիկայի ու տեխնոլոգիայի զարգացման հետ մեկտեղ բարելավվել են աշխատանքային պայմանները (հիմնական ար-

տադրամասերը ընդարձակ ու լուսավոր են, աշխատատեղերի տարածությունը համապատասխանում է սահմանված նորմաներին, գործում է լավ կահավորված բուժկետ ու ճաշարան և այլն)։ Մինչդեռ նույնը չի կարելի ասել Թալինի և Եղնիկի ֆաբրիկաների մասին, որտեղ գործվածքային ու կարող արտադրամասերում նեղվածք է, անհրապույր, չկա բանվորական ճաշարան, աշխատատեղերին հատկացված տարածությունները պակաս են սահմանված նորմաներից և այլն։ «Գործարանը, ֆերման,— ասաց ընկեր Լ. Ի. Բրեժնևը ՍՄԿԿ XXVI համագումարում,— նույն տունն են, որտեղ մարդն անցկացնում է իր կյանքի առնվազն մեկ երրորդը։

Այստեղ ամեն ինչ պետք է լինի հարմարավետ, ժամանակակից՝ աշխատատեղերից մինչև կենցաղային հարմարություններն ու ճաշարանները» (ՍՄԿԿ XXVI համագումարի նյութերը, էջ 94)։ Ուստի ձեռնարկությունը մշտական կադրերով ապահովելու և բանվորական ուժը ռացիոնալ օգտագործելու խնդիրը պահանջում է միջոցներ ու ջանքեր չխնայել աշխատանքային պայմաններն առավել բարելավելու համար։

Աշխատուժի հոսունությունը կրճատելու համար ամենից առաջ անհրաժեշտ է կազմակերպել արտադրական կոլեկտիվի կորիզը կազմող կանանց երեխաների խնամքը մանկական հիմնարկություններում և դպրոցների երկարօրյա խմբերում։ Մինչդեռ հանրապետության տեքստիլ արդյունաբերության ձեռնարկություններում առկա նախադպրոցական հիմնարկություններն ի վիճակի չեն ապահովելու պահանջարկը։ Թեպետև Սովետաշենի տրիկոտաժի արտադրամիավորումն ունի իր մանկական հիմնարկությունը և կառուցվում է երկրորդը, այնուամենայնիվ, պահանջը դեռևս մեծ է։ Թերևս հարկ լինի թեթև արդյունաբերության ձեռնարկությունների արհմիութենական կազմակերպություններին կից ստեղծել միացյալ հատուկ հանձնաժողով, որը կզբաղվի բանվորուհիների մանկահասակ երեխաներին մայրաքաղաքի նախադպրոցական այլ հիմնարկություններում տեղավորելու հարցով։

Այժմ, երբ արտադրության ու նոր տեխնիկայի օգտագործման արդյունավետությունը մեծ չափով պայմանավորված է բանվորի ունակություններով ու մասնագիտացման աստիճանով, ձեռնարկությունը մշտական ու կայուն կադրերով ապահովելու խնդիրն առաջնային նշանակություն ունի։ Այդ հարցի լուծումն է միտում ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեի և ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի «ՍՍՀՄ թեթև արդյունաբերության մինիստրության սիստեմի տեքստիլ արդյունաբերության և մի քանի այլ ճյուղերի արտադրական միավորումներում ու ձեռնարկություններում կադրերի ամրացման լրացուցիչ միջոցառումների վերաբերյալ» որոշումը։ Այդ որոշմամբ նախատեսված է 1983—1985 թվականների պլաններում ապահովել թեթև և տեքստիլ ձեռնարկությունների համար բարձր արտադրողական տեխնոլոգիական սարքավորումների արտադրությունը։ ՍՍՀՄ պրոֆեսիոնալ տեխնիկական կրթության պետական կոմիտեին հանձնարարված է ՍՍՀՄ թեթև արդյունաբերության մինիստրության սիստեմի բազային ձեռնարկությունների հետ համատեղ, պրոֆեսիոնալ տեխնիկական ուսումնարանների միջոցով ապահովել ձեռնարկությունների պահանջը առանձին մասնագիտությունների բանվորական կադրերով, որոշված է նաև բարձրացնել տեքստիլ արդյունաբերության ձեռնարկությունների հիմնական արտադրամասերում գիշերային աշխատանքներում զբաղված բանվորների աշխատանքի լրացուցիչ վարձատրության չափը, միջոցառումներ են սահմանված աշխատանքային պայմանները բարելավելու, բնակարանային ֆոնդերին և մանկական հիմնարկությունների կառուցմանը տրամադրվող կապիտալ ներդրումներն ավելացնելու համար և այլն։

Դրանց իրականացումը տասնմեկերորդ հնգամյակի առաջիկա տարիներին կօգնի թեթև և տեքստիլ արդյունաբերության ձեռնարկություններում ձեռքի ծանր աշխատանքի կրճատմանը, աշխատանքի ու կենցաղի պայմանների բարելավմանը, աշխատանքի վարձատրության սիստեմի կատարելագործմանը։ Այդ ամենը նպաստավոր պայմաններ կստեղծի բանվորական կադրերի ամրացման և մասնագիտացման միջոցով ավելացնելու ժողովրդական սպառման ապրանքների արտադրությունը։ Այժմ խնդիրն այդ միջոցառումների իրականացմանը համատեղ ուժերով ձեռնամուխ լինելն է։



# ՍՈՎԵՏԱԿԱՆ ՌՈՒՍԱՍՏԱՆԸ ԵՎ ԻՄՊԵՐԻԱԼԻՍՏԱԿԱՆ ԴԱՎԵՐԻ ՁԱԽՈՂՈՒՄԸ ՀԱՅԱՍՏԱՆՈՒՄ

**Գ. Ա. ԳԱԼՈՅԱՆ**
ՀՍՍՀ ԳԱ ակադեմիկոս

Մեր ժամանակներում ավելի ու ավելի է սրվում գաղափարախոսական պայքարը, որն իմպերիալիզմի համար չի հանգում սոսկ գաղափարների հակամարտության։ Իմպերիալիստներն ու նրանց կամակատարները, ինչպես նշեց Լ. Ի. Բրեժնևը ՍՄԿԿ XXVI համագումարում, գործի են դնում «միջոցների մի ամբողջ սիստեմ, որոնց նպատակն է քայքայել սոցիալիստական աշխարհը, խարխլել այն» (**ՍՄԿԿ XXVI համագումարի նյութերը**, էջ 13)։ Միջոցների այդ համակարգում առանձնահատուկ տեղ է գրավում պատմության բուրժուական կեղծարարությունը, որի դեմ պայքարը մեր պատմագրության առաջնահերթ խնդիրներից է։ Ներկա հոդվածում մենք նպատակ ենք դրել նորահայտ փաստաթղթերի հիման վրա մերկացնել 1917—1920 թվականներին Հայաստանում ծավալված իրադարձությունների բուրժուական և բուրժուաազգայնական պատմագրության կեղծարարությունները։

Վերջերս գիտական գործուղման մեկնելով Անգլիա, տողերիս հեղինակին հնարավորություն ընձեռվեց Լոնդոնի «Public Record office» կենտրոնական արխիվում ուսումնասիրելու մեր ժողովրդի պատմության մեջ շրջադարձային նշանակություն ունեցած 1917—1920 թվականների իրադարձություններին վերաբերող փաստաթղթերը, որոնք լրացուցիչ լույս են սփռում Հայաստանի նկատմամբ Անտանտի և ԱՄՆ-ի իմպերիալիստական պլանների, ինչպես և քեմալական Թուրքիայի հակասովետական և հայատյաց քաղաքականության վրա։ Այդ քաղաքականության խոր ծալքերի ուսումնասիրությունը ցույց է տալիս, թե որչափ իրական են եղել արևելահայերի ֆիզիկական ոչնչացման պլանները, եթե մեր ժողովրդի պատմության այդ օրհասական օրերին նրան ձեռք չմեկներ ռուս մեծ ժողովուրդը, և եթե Հայաստանի վրա չծածանվեր մեծ Հոկտեմբերի հաղթական դրոշը։

Մեր պատմագրության մեջ, երբ անդրադառնում են Անդրկովկասը Ռուսաստանից անջատելու արևմտյան տերությունների նկրտումներին, շեշտը դրվում է Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխությունից հետո այդ երկրամասի նկատմամբ վարած քաղաքականության վրա։ Ակամա ստացվում է այն տպավորությունը, թե Անդրկովկասի նկատմամբ իմպերիալիստական կառավարությունների գաղութարարական քաղաքականությունը պայմանավորված է եղել զուտ հակասովետական նպատակներով։ Փաստերը համոզում են, որ այդ քաղաքականությունն Անդրկովկասի նկատմամբ XIX դարում արևմտյան իմպերիալիստների վարած քաղաքականության օրգանական շարունակությունն էր։ Ամեն ինչ արվում էր հակասովետական այդ քաղաքականության իրականացմանը ծառայեցնելու համար ինչպես երկրամասի ազգայնական հակահեղափոխությունը, նույնպես և Կովկասում Սովետական Ռուսաստանի դեմ պայքարը շարունակող սպիտակգվարդիական բանդաների ոտնձգությունները։

Ինչպես հայտնի է, առաջին համաշխարհային պատերազմի տարիներին, երբ երիտթուրքերն անարգել հրի ու սրի էին քաշում իրենց բուն հայրենիքում ոչ ոքի չսպառնացող, բայց իրենց ինքնությանը հավատարիմ միլիոնավոր հայերի, ամերիկյան իմպերիալիստները հայերի գենոցիդը դատապարտող և ոչ մի հայտարարությամբ հանդես չեկան:

Եվ հանկարծ... 1918 թ. սեպտեմբերին, երբ արդեն պարզ էր պատերազմում Թուրքիայի պարտության հանգամանքը, և անգլիացիները պատրաստվում էին իրենց զորքերը մտցնել Անդրկովկաս, ԱՄՆ-ում լսվում են ձայներ «ազատ Հայաստան», «ինքնավար Հայաստան» ստեղծելու անհրաժեշտության մասին: Եվ, ո՞վ ծաղրանք, առաջինը այդպիսի առաջարկով հանդես է գալիս ամերիկյան «մեծ մահակի» դոկտրինայի հեղինակը՝ ԱՄՆ-ի նախկին պրեզիդենտ Թեոդոր Ռուզվելտը: Այդ առաջարկը պաշտպանում և Փարիզի խաղաղության կոնֆերանսին է ներկայացնում Թիֆլիսում ԱՄՆ-ի հյուպատոս Վ. Սմիթը, որն ընդամենը մի քանի ամիս առաջ «հաջողությամբ» կազմակերպեց կովկասյան ճակատից հայրենիք վերադարձող ռուս հեղափոխական զինվորների ջարդը, որոնք իրոք պաշտպանում էին ամբողջ Հայաստանի և հայ ժողովրդի ազատ ինքնորոշման իրավունքը:

Որ այդ առաջարկները խնամքով մշակված պետական քաղաքականության արտահայտություն էին, վկայում է 1918 թ. դեկտեմբերի 10-ին ամերիկյան սենատին Հենրի Լոջի ներկայացրած բանաձևը, ուր բացահայտվում են այդ քաղաքականության նպատակները: Սենատոր Լոջի բանաձևում առաջարկվում էր «անկախ» Հայաստանի կազմում ընդգրկել ո՛չ միայն «Թուրքահայաստանն» ու «Ռուսահայաստանը», այլև Կիլիկիան, Պարսկական Ադրբեջանի հյուսիսային մարզերը և այլ տերիտորիաներ, որոնք ամբողջ Անդրկովկասի հետ միասին պետք է հանձնվեին ԱՄՆ-ին: 1919 թ. փետրվարի 15-ին այդ առաջարկը պաշտպանող նոր բանաձևով հանդես եկավ սենատոր Վիլյամ Քինգը[1]:

Այդ քաղաքականության հեղինակներին այնքան իրական էին թվում կազմած պլանները, որ դրանց կատարման համար ԱՄՆ-ում ստեղծվեց «Հայաստանի անկախության ամերիկյան կոմիտե» (ՀԱԱԿ): Ամերիկյան հետախուզական օրգանները միաժամանակ ակտիվացրին դաշնակցականների գործունեությունը, որպեսզի հասարակական կարծիք ընտեղծվեր, թե իրենք՝ հայերն են խնդրում ԱՄՆ-ին վերցնելու «հայկական մանդատը»:

Բայց առայժմ Անդրկովկասում տեր ու տնօրինություն էին անում անգլիացիները, որոնց զորքերը Անտանտի անունից 1918 թ. նոյեմբերի կեսերից օկուպացրել էին երկրամասը:

«Public Record office»-ում հայտնաբերեցինք 1918 թ. նոյեմբեր-դեկտեմբեր ամիսներին Հարավային Ռուսաստանում բրիտանական ռազմական միսիայի կազմած գաղտնի զեկուցագիրը, որն ստորագրել է բրիտանական բանակի գլխավոր շտաբի պետ Հենրի Վիլսոնը. այնտեղ արտահայտված է Հարավային Ռուսաստանում անգլիական ռազմական միսիայի և դենիկինյան բանակի գեներալների կարծիքը Սովետական Ռուսաստանի դեմ նախապատրաստվող ռազմական գործողությունների մասին: Զեկուցագրում ներկայացված են նաև Ռուսաստանի հարավում և Կովկասում կազմավորված «անկախ» հանրապետությունների նկարագիրը, նրանց քաղաքական կողմնորոշումը, ռազմական հզորությունը, նրանց օգտագործման հնարավոր տարբերակները, Բաթում—Բաքու երկաթուղին զավթելու, Բաքվի և Գրոզնու նավթահանքերի օգտագործման հեռանկարները, հարավային Ռուսաստանից և Անդրկովկասից հումք արտահանելու հաշվարկներն ու այլևայլ հարցեր[2]:

Դեռևս 1918 թ. մարտին Լոնդոնում լորդ Քերզոնի գլխավորությամբ ստեղծվել էր «Արևելքի կոմիտե», որին և հանձնարարվել էր Անդրկովկասում վարվելիք անգլիական քաղաքականության մշակումը: Եվ ահա, դեկտեմբերի 2-ին կառավարական խորհրդակցությունում քննարկվեց այդ կոմիտեի մշակած պլանը: «Պատերազմը,— նշեց զեկուցող Քերզոնը,— ցույց տվեց, որ Անդրկովկասը կարևոր նշանակություն ունի Բրիտանական կայսրության շահերի... համար», ուստի և Անգլիան պետք է ձեռնարկի քաղաքական միջոցներ՝ Անդրկովկասի նկատմամբ վերահսկողություն սահմանելու: «Ցանկացած անարխիան, անկարգությունը կամ բոլշևիզմը», շեշտում էր Քերզոնը, կարող են «անխուսափելիորեն հակազդել» անգլիական քաղաքականությանը:

Ժամանակակից անգլիական բուրժուական պատմագրության մեջ մերկապարանոց պնդումներ են արվում, թե իբր անգլիացիները

[1] «The New York Times», September 7, 1918, «Congressional Record», vol. 56, pt. 2, p. 11579, vol. 57, pt. 1, p. 237, pt. 4, p. 3414.

[2] Public Record office (London), W. O. 106/1191, p. 1—29.



«գերադասում» էին օգնել հայերին և «պաշտպանել» նրանց իրենց ավելի հզոր հարևաններից[1]:

Անդրկովկասում ամերիկյան ներկայացուցիչներ Դուլիթլը, Մուրը, Գրինը՝ 1919 թ. հուլիսին Փարիզի խաղաղության կոնֆերանսին ուղարկած հեռագրում վկայում են, թե անգլիացիները ոչինչ չեն արել մեղմացնելու համար սովը Հայաստանում, չեն ձգտել կարգավորել սահմանային վեճերը, որոնք հաճախ զինված ընդհարումների էին հասցնում Անդրկովկասի «անկախ» հանրապետությունների միջև: Իսկ հարավային Ռուսաստանի և Անդրկովկասի մասին 1919 թ. նոյեմբեր-դեկտեմբեր ամիսներին կազմված մի տեսության մեջ ուղղակի ասվում է. «ի դեմս անկախ Հայաստանի անգլիացիները տեսնում են ռուսական փորպոստ, որը ճանապարհ է բացում դեպի Միջերկրական ծովի ափերը, և այդ պատճառով ամեն կերպ խանգարում են նրա զարգացմանն ու ծաղկմանը»[2]:

Անդրկովկասում անգլիական զինված ուժերը պահելու և դրանց թվաքանակն ավելացնելու հարցը սուր վիճաբանություններ հարուցեց «Արևելքի կոմիտեի» դեկտեմբերի 16-ի նիստում: Երբ Քերզոնը «հիմնավորեց» անգլիական զորքերը Անդրկովկասում թողնելու անհրաժեշտությունը և պաթետիկ ոճով հայտարարեց, թե «Մենք չենք կարող թույլ տալ», որպեսզի Անդրկովկասում «իրար կոկորդ կրծեն», արտաքին գործերի մինիստր Բալֆուրը սառն անտարբերությամբ ընդհատեց նրան. «Եթե նրանք ուզում են կտրել իրենց սեփական կոկորդները, ինչո՞ւ մենք չպետք է թույլ տանք այդ... Ես պետք է ասեմ,— շարունակեց Բալֆուրը,— մենք չենք պատրաստվում ծախսել մեր փողերն ու մարդկանց՝ քաղաքակրթելու նրանց, ովքեր չեն ուզում քաղաքակրթվել: Մենք պետք է պաշտպանենք Բաթումը, Բաքուն, նրանց միջև ձգվող երկաթուղին և խողովակագիծը»: Քերզոնը համաձայնեց Բալֆուրի հետ, նշելով, որ ինքը ևս հետապնդում է նույն նպատակը՝ այնպես անել, որ Պարսկաստանից «հեռու պահվեն բոլշևիկներն ու բոլշևիզմը»:

Այդ քաղաքականության իրագործման նպատակով անգլիական օկուպանտներն ամեն ինչ անում էին Անդրկովկասի ժողովուրդներին իրարից բաժանելու և իրար դեմ հանելու համար: Առավել նենգությամբ նրանք օգտագործում էին սահմանային հարցերի առթիվ ծագող սուր կոնֆլիկտները: Վիճելի տերիտորիաները նրանք խոստանում էին տալ և՛ այս, և՛ այն հանրապետությանը, ստանձնելով իրավարարի դերը և դրանով իսկ իրավունք ստանալով անհարկի միջամտելու երկրամասի ժողովուրդների ներքին գործերին:

1919 թ. հուլիսի սկզբներին սկսվեց անգլիական զորքերի էվակուացիան Անդրկովկասից: Դա Անտանտի իմպերիալիստների հակասովետական ռազմական ինտերվենցիայի ձախողման վկայությունն էր: Երբ հայտնի դարձավ անգլիական զորքերը Անդրկովկասից դուրս բերելու որոշումը, մուսավաթականների և վրաց մենշևիկների կառավարությունները շտապեցին կնքել «պաշտպանական միություն», որի մասին 1919 թ. հունիսի 16-ին Թիֆլիսում ամերիկյան հյուպատոս Ջենկինսը հեռագրով հայտնեց Փարիզում գտնվող ամերիկյան միսիային: Հեռագրում ասվում էր նաև, որ պայմանագրի գաղտնի հոդվածի համաձայն մենշևիկյան Վրաստանը պարտավորվում էր Հայաստանի հետ Ադրբեջանի պատերազմի դեպքում «շրջափակել Հայաստանի բոլոր հաղորդակցության ուղիները»: Այսպես մեկուսացվեց Հայաստանը:

Բաթումում բրիտանական հյուպատոսը դեռևս 1919 թ. մայիսի 16-ին խիստ գաղտնի հեռագրով տեղեկացնում է Փարիզի կոնֆերանսին, թե Անդրկովկասից անգլիական զորքերը դուրս բերելու լուրը, որը մեծ խուճապ էր առաջացրել երկրամասի կառավարող շրջաններում, որոշակիորեն մասսաներին մղում է դեպի բոլշևիկները, «որոնք շատ ակտիվ են ողջ Անդրկովկասում»[3]:

Թիֆլիսում ԱՄՆ-ի փոխհյուպատոս Դուլիթլի օգոստոսի 15-ի հաղորդագրությունից տեղեկանում ենք, որ դաշնակցական կառավարության ղեկավարները հասկանալով իրենց դիրքերի երերուն վիճակը, դիմել են Թիֆլիսում ամերիկյան միսիային, խնդրելով ճնշում գործադրել Անգլիայի վրա, որ վերջինս իր զորքերը դուրս չբերի Անդրկովկասից, մինչև դրանց չփոխարինեն ամերիկյան զորքերը: Ջենկինսի գրագրություններից հայտնի է դառնում, որ ԱՄՆ-ի պետական քարտուղար Լանսինգը հանձնարարած է եղել Լոնդոնում ԱՄՆ-ի դեսպան Դևիսին այդ կապակցությամբ դիմելու Անգլիայի կառավարությանը: Դևիսը մի քանի անգամ դիմել է, իսկ Անգլիայի կառավարությունը հայտնել է, որ ի վի-

[1] R. Ullman. Anglo-Soviet Relations. 1917—1921. vol. II, London, 1968, p. 68, 73, 83, 85.

[2] ЦГАОР СССР, ф. 446, т. 2., д. 113, л. 69.

[3] Public Record office (London), F. O. 608/85, p. 34.

հակի չէ զորքերը պահել Անդրկովկասում: Միաժամանակ հայտնում է, որ թուրքերի հնարավոր առաջխաղացման դեպքում հայերին ոչ մի օգնություն չի լինելու:

Ստեղծված իրադրության պայմաններում Անդրկովկասի հարցը Փարիզի կոնֆերանսում մեծապես կարևորվեց, մանավանդ հավաստի տեղեկություններ էին ստացվել երկրամասում անող հեղափոխական շարժումների, Հյուսիսային Կովկասում սպիտակգվարդիական բանդաների անհաջողությունների և Անդրկովկասի սահմաններին կարմիր բանակի զորամասերի մոտենալու մասին: Անդրկովկասի հարցը անբաժանելի մասն էր «ռուսական հարցի», որն ամենից շատ էր հուզում ԱՄՆ-ի և Անտանտի իմպերիալիստներին և որն իր կնիքն էր դնում կոնֆերանսի ընդունած բոլոր որոշումների վրա:

Քաղաքացիական պատերազմում Սովետական Ռուսաստանի դիրքերի ուժեղացումն ընտիպեց Անտանտի իմպերիալիստներին Անդրկովկասում իրենց տեղը «կամավոր» զիջել ԱՄՆ-ին: Բայց, ինչպես կարծում էր Լլոյդ Ջորջը, «ԱՄՆ-ը պետք է ղեկավարեն Ռուսական Հայաստանն ու Անդրկովկասը մինչև «ռուսական հարցի» կարգավորումը»[1]: Լ. Ջորջը դեռևս հույս էր տածում, որ իրենց օգնությամբ սպիտակգվարդիական ուժերը կըհաղթեն Ռուսաստանում, սովետական իշխանությունը կտապալվի, և ստեղծված նոր իրադրությունում վերջնականապես կլուծվի նաև Անդրկովկասի և ողջ Հայաստանի հարցը:

1919 թ. հուլիսի 5-ին ամերիկյան բանակի գնդապետ Վ. Հասկելը նշանակվեց գերագույն կոմիսար Հայաստանում: Փարիզի կոնֆերանսը շուտով նրան լիազորեց դաշնակիցների անունից գործել Հայաստանի, Ադրբեջանի, Վրաստանի տերիտորիաներում և Կոստանդնուպոլսում: Այդուհետ ամերիկյան իմպերիալիստներն աննախանձ ակտիվացնում են իրենց գործունեությունը Հայաստանում:

1919 թ. սեպտեմբերի 20-ին Անդրկովկասում բրիտանական զորքերի հրամանատար գեներալ Ուորդրոպը հեռագրով հայտնում է իր կառավարությանը, թե Անդրկովկասում ստեղծված դրությունը «բրիտանական շահերի տեսակետից առաջնահերթ անհրաժեշտություն է դարձնում» Անդրկովկասյան հանրապետությունների ճանաչումը: Գեներալի կարծիքով դա ապահով միջոց կլիներ Հնդկաստանում և Պարսկաստանում բրիտանական շահերի պաշտպանության համար: Լոնդոնում ստացված հեռագրերը վկայում են, որ Ուորդրոպը 1919 թ. աշնանը ամեն օր հանդիպել է Անդրկովկասյան հանրապետությունների կառավարությունների ղեկավարներին և համապատասխան հրահանգներ տվել նրանց «բոլշևիզմի վտանգի» դեմն առնելու համար[2]:

1919 թ. դեկտեմբերին «Հայաստանի անկախության ամերիկյան կոմիտեն» առաջարկեց անհապաղ de facto ճանաչել դաշնակցականների կառավարությունը և օգնել նրան կազմակերպելու զինված ուժեր: ՀԱԱԿ-ի նախագահ Ջերարդը վճռականորեն դեմ դուրս եկավ Հայաստանի մանդատը վերցնելուն: Սենատորներ Լոջը, Ուիլյամսը և ուրիշներ նույնպես հանդես եկան հօգուտ դաշնակցականների կառավարության ճանաչման: Հիշենք, որ մեկ տարի առաջ այդ մասին ոչ ոք լսել անգամ չէր ուզում: Դեռևս 1919 թ. օգոստոսին բրիտանական զորքերի հրամանատար գեներալ Կորրին մի խորհրդակցությունում, որին մասնակցում էին Թիֆլիսում ԱՄՆ-ի հյուպատոսության և ռազմական միսիայի ներկայացուցիչները, հայտարարեց, թե «կովկասյան նահանգները» (նրանք առայժմ այդպես էին անվանում Անդրկովկասյան հանրապետությունները— Գ. Գ.) վարչական ոչ մի ունակություն հանդես չեն բերում և, հետևաբար, վաղ է նրանց ճանաչելը: Իսկ գեներալ Հարբորդը 1919 թ. հոկտեմբերի իր զեկուցագրում շեշտում էր. «Արևմուտքի տեսակետից երեք հանրապետություններն էլ բոլորովին լիարժեք չեն, վստահելի չեն և, անկասկած, անազնիվ են»[3]:

Այժմ քաղաքական իրադրությունը փոխվել էր և այդ «ճանաչումը» նպատակ էր հետապնդում ոչ թե իրոք ընդունել հայ ժողովրդի՝ իր սեփական կառավարությունն ունենալու իրավունքը, այլ մղելու դաշնակցականներին մինչև վերջ պայքարելու Անդրկովկասում ամերիկյան շահերի պաշտպանության համար:

Անտանտի իմպերիալիստների կողմից Անդրկովկասի հանրապետությունների «անկախության» ճանաչումը կուսակցության կովկասյան երկրային կոմիտեն իր 1920 թ. հունվարի 13-ի կոչում գնահատում է որպես «Դենիկինի ջախջախման ուղղակի հետևանք»: Իսկ Ուորդրոպը մուսավաթական կառավարությանը հունվարի 19-ին ուղարկած հեռագրում հույս է հայտնում, որ «անկախ» Ադրբեջանը որպես «պաշտպանական ամուր պատ» կկանգնի բոլշևիկյան վտանգի դեմ: Ոգևորված այդ հույսով, փետրվարի 21-ին նա իր կառավարությանը հայտնում էր, որ «Անդրկովկասի հանրապետությունների ճանաչումն ամբողջապես փոխել է քաղաքական մթնոլորտը»[1]:

Անտանտի իմպերիալիստները միաժամանակ միջոցներ են ձեռք առնում Անդրկովկասում իրենց թուլացող դիրքերն ամրապնդելու համար: Քե դ'Օրսեում կայացած խորհրդակցության օրը (հունվարի 10-ին) Քերզոնը Փարիզից հեռագրում է Լոնդոն, պահանջելով «արևելքի կոմիտեում» անհապաղ քննարկել անգլիական զորքերը Բաթումում պահելու, Անդրկովկասում ռազմական ճանապարհների օգտագործման և Բաքուն բոլշևիկներից պաշտպանելու միջոցառումների հարցը:

Հունվարի 16—19-ը անգլիական կառավարությունը քննարկում էր Անդրկովկասում ընտեղծված վիճակը և Դենիկինին ցույց տրվող օգնության հարցը: «Դենիկինը պարտվել է,— ասում է Քերզոնը,— անգլիական կառավարությունը պետք է ընդունի այդ փաստը» և անհրաժեշտ է շտապել «կազմակերպել Անդրկովկասում գերազանց պաշտպանական գիծ» «Պարսկաստանը բոլշևիկներից զերծ պահելու համար»: Արծարծվեց Դենիկինին հատկացված կասպիական անգլիական նավատորմը Անգլիային վերադարձնելու հարցը, որպեսզի այն չընկներ բոլշևիկների ձեռքը: Ջայներ հնչեցին Անդրկովկասի «պաշտպանությանը» արևմտյան բոլոր այն երկրներին ներգրավելու մասին, որոնք ակնկալում էին Բաքվից նավթ ստանալ:

1920 թ. մարտի 7-ին գեներալ Ուորդրոպը Թիֆլիսից հաղորդում է, որ Ադրբեջանում և Դաղստանում «գործում են երկու ազդեցություններ՝ բոլշևիկյան և թուրքական» և որ «վերջինս կարող է օգտագործվել հօգուտ բրիտանական շահերի»: Անգլիական իմպերիալիստների վարձու գործակալ Ֆուադ Բեյը Ուորդրոպի վկայությամբ ձեռնամուխ էր եղել «թուրքերին բոլշևիկների դեմ օգտագործելու» նպատակով հատուկ կոմիտե ստեղծելու գործին, կանխապես պահանջելով 5 հազար ֆունտ ստեռլինգ:

Ինչպես տեսնում ենք, Հայաստանը և ամբողջ Անդրկովկասը զավթելու իմպերիալիստական պլաններում մեծ տեղ էր գրավում «բոլշևիզմի վտանգի» դեմ պայքարելը: Այս առումով, հետաքրքրական են այն նորահայտ փաստաթղթերը, որոնք վերաբերում են Հայաստանում դաշնակցության դեմ ուղղված Մայիսյան ապստամբությանը, որը ճնշելու հույսերը դաշնակցականները կապում էին Անտանտի իմպերիալիստների ռազմական օգնության հետ: Մայիսի 4-ին Հ. Օհանջանյանի նորաթուխ կառավարության առաջին հոգսը եղավ հեռագրել Փարիզ՝ Ա. Ահարոնյանին, որով վերջինս լիազորվում էր դիմել անգլիական կառավարությանը՝ մեկ միլիոն ֆունտ ստեռլինգի վարկ ստանալու, Անգլիայից զենք գնելու համար[2]: Այդ նույն օրը Ա. Ահարոնյանը և Պողոս Նուբար փաշան դիմում են անգլիական կառավարությանը՝ բաց թողնվող այդ վարկի դիմաց Հայաստանին տրամադրել Եգիպտոսում գտնվող ռազմական ինքնաթիռներ:

Մայիսի 8-ին «բրիտանական հայկական կոմիտեն» լորդ Քերզոնին հղած դիմումում նշում է, որ Երևանից ստացված վերջին տեղեկությունների համաձայն, Հայկական հանրապետության վիճակը կրիտիկական է, որ անհրաժեշտ է նրան օգնել զենքով և այլ ռազմամթերքով: Կոմիտեն առաջարկում է նաև անգլիական սպաներ ուղարկել Հայաստան՝ դաշնակցական բանակի կազմակերպման և հայկական կառավարության «ինքնապաշտպանությունն» ապահովելու համար: Դիմումում նշվում է նաև, որ Հայաստանում ստեղծված դրությունը վտանգ է սպառնում նաև «բրիտանական շահերին»:

Մայիսի 6-ին Լոնդոնում ստացվում է Խատիսյանի հեռագիրը, որով վերջինս խնդրում էր անգլիական կառավարությանն անհապաղ Հայաստանին տրամադրել 10 հազար հրացան, 10 մլն փամփուշտ և երեք ռազմական ինքնաթիռ, որոնք գտնվում էին Բաթումում[3]: Մայիսի 12-ին անգլիական կառավարությունը որոշում է Հայաստանին վաճառել անհրաժեշտ քանակությամբ ռազմամթերք՝ վճարումները 12 ամսվա ընթացքում կատարելու պայմանով[4]:

Մայիսի 19-ին Ա. Ահարոնյանն իր կառավարության հանձնարարությամբ դիմում է Փարիզի կոնֆերանսի գերագույն խորհրդին՝ խնդրելով ռազմական ինտերվենցիա կազմակերպել Հայաստան: Այդ օրերին Հայաստանից Կոստանդնուպոլիս փախած Հասկելը հեռագրում է Փարիզ՝ ամերիկյան ներկայացուցիչ Ուիլյամ Գուդին, հայտնելով, որ «հայ-

---

[1] R. Hovannisian. The Republic of Armenia, vol. I, Berkely—Los Angeles—London, 1977, p. 328.

[2] Տե՛ս Public Record office (London), F. O. 608/85, p.p. 240, 290—332.

[3] «Congressional Record», vol. 59, pt. 8, p. 7880.

[1] Public Record office (London), F. O. 371/4931, p. 161, F. O. 371/4932, p. 2.

[2] Տե՛ս Public Record office (London), F. O. 371/4956, p. 176.

[3] Տե՛ս նույն տեղը, էջ 64, 71—72, 76։

[4] Նույն տեղը, էջ 84։

կական զորքերը ետ են վերցրել Ալեքսանդրապոլը»[1]։

Մայիսի 24-ին Անգլիայի և դաշնակցական Հայաստանի կառավարությունների միջև կնքվում է Համաձայնագիր Հայաստանին մեկ մլն ֆունտ ստեռլինգի ռազմական վարկ բաց թողնելու վերաբերյալ[2]։

Վրաստանի մենշևիկյան կառավարությունը որոշում է օգտվել առիթից և պահանջում է Հայաստանի կառավարությունից Անգլիայից ստացվող զենքերն իր տերիտորիայով փոխադրելու համար Վրաստանին թողնել ստացվող զենքի 23 տոկոսը։ Այդ համաձայնագիրն ստորագրվում է մայիսի 26-ին[3]։

Հունիսի 10-ին Ա. Ահարոնյանը հեռագիր է ստանում իր կառավարությունից՝ հայտնելու Լոնդոն, Հռոմ և Վաշինգտոն, որ բոլշևիկյան շարժումները Հայաստանում ճնշվել են[4]։ Հուլիսի 17-ին Անդրկովկասում բրիտանական կոմիսար Հ. Լուկի հետ ունեցած զրույցի ժամանակ Հ. Օհանջանյանն իր կառավարության շնորհակալությունն է հայտնում անգլիական կառավարությանը և անձամբ լորդ Քերզոնին, ռազմական այն օգնության համար, որ դաշնակցական Հայաստանն ստանում էր Անգլիայից[5]։

Այսպիսով, հենվելով օտարերկրյա իմպերիալիստների, Անդրկովկասի հակահեղափոխական ուժերի ու ռուս սպիտակգվարդիական թափթփուկների վրա, դաշնակցականները կարողացան արյան մեջ խեղդել ապստամբությունը։

Հույժ հետաքրքրական են 1920 թ. աշնանը քեմալական Թուրքիայի կողմից Հայաստանի դեմ սանձազերծած պատերազմին, Հայաստանում սովետական իշխանության հաստատմանը, Ալեքսանդրապոլի 1920 թ. դեկտեմբերի 2-ի պայմանագրի կնքմանը և հարակից այլ հարցերին վերաբերող նորահայտ փաստաթղթերը, որոնք միաժամանակ լիովին մերկացնում են դաշնակցության ազգադավ գաղտնի գործարքը արևմտյան իմպերիալիստների և քեմալական Թուրքիայի հետ։

Ինչպես հայտնի է, մեր պատմագրության մեջ մի ժամանակ իրարամերժ տեսակետներ էին զարգանում 1920 թ. աշնանը քեմալականների կողմից Հայաստան կատարած ագրեսիայի վերաբերյալ։ Նորահայտ փաստաթղթերը բացառում են երկակի կարծիքները այդ մասին։

Քեմալ փաշայի ստեղծած Ազգային մեծ ժողովը 1920 թ. ապրիլի 23-ին իրեն հայտարարեց երկրում միակ օրինական կառավարություն և ձեռնամուխ եղավ դեռևս հունվարի 28-ին հռչակված «Ազգային ուխտի» կենսագործմանը։ Ազգային անկախության այդ դեկլարացիան արևմտահայերին խաղաղություն չբերեց։ Ավելին, որդեգրելով հայկական հարցում երիտթուրքերի քաղաքականությունը (չպետք է մոռանալ, որ Քեմալը ժամանակին «երիտթուրքերի աչքի ընկնող առաջնորդներից էր»[6] և, հետևաբար, հայերի նկատմամբ գենոցիդի քաղաքականության հեղինակներից մեկը), Ազգային մեծ ժողովը ձեռնամուխ եղավ Արևելյան Հայաստանի վրա արշավանքի նախապատրաստմանը։

Այդ նպատակով դեռևս 1920 թ. ապրիլի 15-ին Էրզրումում թուրքական բանակային կորպուսի հրամանատար Քյազիմ Կարաբեքիր փաշան և մուսավաթական կառավարության ռազմական մինիստր Ալի Շիխլինսկին կնքում են «ռազմական կոնվենցիա», ըստ որի Հայաստանի հետ կողմերից որևէ մեկի կոնֆլիկտի դեպքում թուրքական և ադրբեջանական ռազմական ուժերը «գործելու էին որպես մեկ բանակ»[7]։ Քեմալականները, այսպիսով, դեռևս 1920 թ. գարնանը լրջորեն նախապատրաստվում էին թափանցել Հայաստան։

Եթե Սովետական Ռուսաստանը վճռականապես հանդես չգար այդ պլանների դեմ, բացառված չէր, որ Թուրքիան կհասներ իր նպատակին։ Ինչպես ասվեց, դաշնակից պետությունները հրաժարվում էին զորք ուղարկել Հայաստան՝ հայերին թուրքական վտանգից պաշտպանելու համար։ Դաշնակցական կազմալուծված բանակը, կռվելով մուսավաթականների և վրաց մենշևիկների դեմ, չէր կարող դիմագրավել շովինիզմով համակված քեմալական բանակին։

Այսպիսի իրադրությունում ավելի քան վառ կերպով դրսևորվեց Սովետական Ռուսաստանի անշահախնդիր վերաբերմունքը հայ ժողովրդի նկատմամբ։ Հավասարեցման նշան չդնելով դաշնակցական կառավարության և հայ ժողովրդի ազգային արմատական շահերի միջև և ղեկավարվելով հայ ժողովրդի նկատմամբ ռուս ժողովրդի դարավոր ավանդական բարեկամության սկզբունքներով, Սովետական

[1] *Նույն տեղը, էջ 198։*

[2] *Նույն տեղը,* F. O. 371/4957, p. 120.

[3] *Նույն տեղը, էջ 20։*

[4] *Տե՛ս նույն տեղը,* F. O. 371/4958, p. 24—25.

[5] *Տե՛ս նույն տեղը,* F. O. 371/4959, p. 20—21.

[6] Джавахарлал Неру. Взгляд на всемирную историю. М., 1981, т. 2, стр. 440.

[7] *Տե՛ս* Public Record office (London), F. O. 371/4954, p. 154.



Ռուսաստանի կառավարությունը վճռականապես հանդես եկավ հայ ժողովրդի նկատմամբ Թուրքիայի ագրեսիվ քաղաքականության դեմ։ Դաշնակցականներին համակել էր Անտանտի և ԱՄՆ-ի իմպերիալիստների խոստացած «Մեծ Հայաստանի» սին գաղափարը, որի հետևանքով նրանց «ծովը մինչև ծնկներն էր» թվում։

Իսկ ի՞նչ էր խոստանում Սևրի պայմանագիրը Հայաստանին և ի՞նչ նպատակներ էին հետապնդում այդ պայմանագրի ոգեշնչողները։

Անտանտի և ԱՄՆ-ի իմպերիալիստական կառավարությունները պատերազմի ավարտից միայն երկու տարի անց Սևրում «որոշեցին» ստեղծել «Մեծ Հայաստան», ստանալով արդեն ըստ էության իշխանությունից զրկված սուլթանի կառավարության համաձայնությունը։

Այդ պայմանագիրն ամբողջովին տիպիկ իմպերիալիստական պայմանագիր էր։ Այն նպատակ ուներ հավերժացնել իմպերիալիստական պետությունների տիրապետությունը Մերձավոր ու Միջին Արևելքում, հարություն տալ սուլթանի իշխանությանը և նրան օգտագործել իրենց քաղաքական և տնտեսական նպատակներին հասնելու համար։ Պայմանագիրն իրավունք էր վերապահում դաշնակից տերություններին իրենց ռազմածովային ուժերը տեղակայել Դարդանելում, Մարմարա ծովում և Բոսֆորում, այսինքն՝ իրենց ձեռքում ունենալ Սև ծովի դարպասների բանալին և մշտական «հսկողության» տակ պահել Սովետական Ռուսաստանի հարավ-արևմտյան սահմանները։ Ստեղծվում էր սևծովյան նեղուցների միջազգային «հանձնաժողով», որին ցանկացած ժամանակ կարող էր մասնակցել և ԱՄՆ-ը։

Թուրքիան պարտավորվում էր ճանաչել Հայաստանի ինքնուրույնությունն ու անկախությունը։ Թուրքիայի և Հայաստանի միջև սահմանազատումը թողնվում էր ԱՄՆ-ի պրեզիդենտի հայեցողությանը։ Այդ նշանակում էր, որ չնայած ԱՄՆ-ի կոնգրեսը հունիսի 1-ին որոշել էր հրաժարվել Հայաստանի մանդատից, այնուամենայնիվ նրանց ձեռքում էր մնալու Հայաստանի բախտը տնօրինելու իրավունքը։ Քրդստանին ևս շնորհվում էր «ավտոնոմիա»։ Թե ինչպես էին սահմանազատվելու Հայաստանն ու Քրդստանը, նույնպես անորոշ էր մնում։ Այսպիսով, դեռ չստեղծված, «Մեծ Հայաստանն» արդեն ներգրավվում էր սուր հակասությունների մեջ ոչ միայն թուրքերի, այլև քրդերի ու Անդրկովկասի մյուս ժողովուրդների հետ, որոնց սահմանները ևս, ինչպես նշվեց, պետք է որոշվեր առանց հաշվի առնելու Անդրկովկասի «երեք պետությունների կամավոր համաձայնությունը»։ Եթե սրան ավելացնենք նաև այն հանգամանքը, որ բուն Հայաստանում ապրող այլազգիների «շահերի պաշտպանությունն» իրենց վրա էին վերցնում դաշնակից տերությունները, ապա միանգամայն պարզ կդառնա, թե այդ ի՞նչ «անկախ» ու «ինքնուրույն» Հայաստան էին ուզում ստեղծել իմպերիալիստները։

Սևրի պայմանագրի ստորագրումը բորբոքել էր նացիոնալիզմը Թուրքիայում։ Հայերին և հույներին խոստանալով տալ իրենց պատմահայրենի տերիտորիաները, դաշնակիցները փորձում էին նրանց միջոցով վիժեցնել դիմադրական շարժումը Թուրքիայում։ Միանգամայն պարզ էր, որ ո՛չ հայերին և ոչ էլ հույներին դաշնակիցները չէին տալու խոստացածը, եթե նույնիսկ հաջողվեր հասնել Թուրքիայի բաժանմանը։

Սևրի պայմանագիրն ստորագրվել էր իշխանազուրկ սուլթանի կառավարության կողմից. այդ խիստ ուժեղացրել էր քեմալականների դիրքերը երկրում։ Քեմալական Թուրքիային տրվել էր «բարոյական» պատրվակ՝ նոր ուժով կիրառելու հայ ժողովրդի բնաջնջման հին քաղաքականությունը։ Սևրի պայմանագրի չգրված հոդվածներն այդ էին ենթադրում։

Հրահրելով թուրքական նացիոնալիզմը և նախապատրաստելով քեմալականների նոր հարձակումը Հայաստանի վրա, օտարերկրյա հետախուզությունը միաժամանակ կեղծ լուրեր էր հերյուրում ինչ-որ սովետա-թուրքական գաղտնի պայմանագրի մասին, որն իբր թե կնքվել էր օգոստոսին Մոսկվայում և նպատակ էր հետապնդում տապալել դաշնակցականների կառավարությունը և երկրում հաստատել սովետական իշխանություն։ Այս պրովոկացիան կատարվում էր ոչ միայն Սովետական Ռուսաստանի ձգողական ուժը թուլացնելու, այլև հայ-թուրքական պատերազմ հրահրելու և Անդրկովկասի բոլոր հակահեղափոխական ուժերը Սովետական Ռուսաստանի դեմ մոբիլիզացնելու նպատակով։

Սեպտեմբերի կեսերին թուրքական զորքերը ներխուժեցին Հայաստան, գրավեցին Սարիղամիշը, Կարսը և, ավերելով իրենց ճանապարհին ընկած քաղաքներն ու գյուղերը, շարժվեցին առաջ։ Թվում էր, թե դա կսթափեցնի դաշնակցականներին և, հենվելով Սովետական Ռուսաստանի հետ օգոստոսի 10-ին կնքած պայմանագրի վրա, նրանք կձգտեն օգտվել Սովետական Ռուսաստանի աջակցությունից՝ քեմալականների առաջխաղացումը կասեցնելու համար։ Բայց ո՛չ։ Դաշնակցական Հայաստանը վերածվել էր Անտանտի

իմպերիալիստական քաղաքականության գործիքի: ԱՄՆ-ի կառավարությունը, որը մինչ այդ, ինչպես տեսանք, ջանքեր չէր խնայում հավաստիացնելու հայերին, թե ձգտում է նրանց համար ստեղծել «Մեծ Հայաստան», այժմ, երբ եղած փոքրիկ Հայաստանի բուն գոյությունն իսկ իրական վտանգի տակ էր, բացահայտորեն հրաժարվում էր օգնել հայերին՝ թուրքական ագրեսիայի առաջն առնելու:

«Չնայած ԱՄՆ-ի կառավարությունը ճանաչել էր Հայկական հանրապետությունը,— հայտարարեց Կովկասում ԱՄՆ-ի հյուպատոս Մոզերը 1920 թ. նոյեմբերի 6-ին,— նա երբեք չի ստանձնել որևէ պարտավորություն հայ ժողովրդին պաշտպանելու, կամ նրան զինված օգնություն կազմակերպելու առումով: Այդ պատճառով էլ նա չի կարող ստեղծված ճգնաժամի պատասխանատվությունն իր վրա վերցնել»:

Ազգերի լիգան ևս մերժեց թուրքերի առաջխաղացումը կասեցնելու վերաբերյալ դաշնակցական կառավարության խնդրանքը, պատճառաբանելով, որ Սևրի պայմանագիրը դեռևս ուժի մեջ չէ: Այդ նույն պատճառաբանությամբ Հայաստանը չընդունվեց նաև Ազգերի լիգայի կազմում: Եթե հաշվի առնենք նաև «Հայաստանի անկախության ամերիկյան կոմիտեի» ղեկավարներից մեկի՝ Ջ. Գարդաշյանի մինչ այդ արած հայտարարությունը, թե ինքը՝ ԱՄՆ-ի պրեզիդենտ Վիլսոնն էր «խրախուսում թուրքերին հարձակվելու Հայաստանի հանրապետության վրա», ապա պարզ կդառնա, որ Անդրկովկասում ստեղծված ճգնաժամի պատասխանատվությունն Անտանտի կառավարությունների հետ միասին հավասարապես ընկնում էր նաև ԱՄՆ-ի կառավարության վրա:

Սովետական Ռուսաստանը, գտնվելով քաղաքացիական պատերազմների մեջ, հնարավորություն չուներ ռազմական ճնշման միջոցով կանխելու թուրքերի առաջխաղացումը: Այդ պատճառով էլ Գ. Վ. Չիչերինն զգուշացնում էր Բ. Լեգրանին. «Ի նկատի առեք, որ մենք **թուրքերի առաջխաղացումը կանխելու հնարավորություններ չունենք**: Խոստումներ միք տա (հայերին— Գ. Գ.) եթե համոզված չեք, որ մենք կարող ենք դրանք կատարել: Մատնանշեք մեր անկեղծ բարյացակամությունը հայ մասսաների նկատմամբ և նրանց օգնելու մեր ցանկությունը»:

1920 թ. հոկտեմբերի 5-ին Սովետական Ռուսաստանի արտաքին գործերի ժողկոմի տեղակալ Լ. Կարախանը ընդունում է դաշնակցական կառավարության ներկայացուցիչ Մ. Եղիազարյանին և նրան հայտնում, որ Քեմալը «ձեռնարկել է լուրջ կամպանիա Հայաստանի դեմ և նպատակ է դրել գրավել Սարիղամիշը: Սովետական կառավարությունը ձգտում է կասեցնել թուրքերի առաջխաղացումը, առանց ակնկալելու վարձահատույց լինելու այդ լավ ծառայության համար»: Հայտնելով այդ մասին իր կառավարությանը՝ Մ. Եղիազարյանն ավելացնում է. «Կարախանն այն կարծիքին է, որ եթե հայերը ժամանակավորապես կարողանան կասեցնել թուրքերի առաջխաղացումը, գուցե նույնիսկ հնարավոր կլինի հասնել Թուրքիայում Հայաստանի տերիտորիայի մի մասի ազատագրման»: Դաշնակցական կառավարությունը, փոխանակ օգտվելու հայ ժողովրդի ազգային արմատական շահերն արտահայտող այս առաջարկից, անմիջապես այդ մասին տեղյակ է պահում Ստոքսին, որի Լոնդոն ուղարկած հաղորդումից էլ մեզ հայտնի է դառնում այս փաստը[1]:

Սովետական կառավարությունն **այդ առաջարկը** կրկնում է մի քանի անգամ, սակայն Անգլիայի կառավարության դրդմամբ դաշնակցականները հրաժարվում են թույլ տալ սովետական զորքերին անցնելու Հայաստանի տերիտորիայով: Նոյեմբերի 30-ին Ստոքսը հայտնում է Լոնդոն, որ «Հայաստանի կառավարությունը մերժեց թույլ տալ բոլշևիկյան զորքերին մտնել Հայաստան, որը այն պայմանն էր, ըստ որի նրանք (բոլշևիկները— Գ. Գ.) միջնորդություն էին առաջարկում Հայաստանի և Թուրքիայի միջև»[2]:

Պաշտպանվելով իր այն համախոհների հարձակումներից, որոնք ետին թվով քննադատում էին Սովետական Ռուսաստանի օգնությունը մերժող դաշնակցականների քաղաքականությունը, Ս. Վրացյանը գրում է. «Ես չէի կարող համաձայնել Լեգրանի հետ, որովհետև ռուս զորքերի մուտքը Հայաստանի մեջ առիթ կարող էր դառնալ, որ Քյազիմ Կարաբեքիրն իր զորքն առաջ շարժեր Հայաստանի սահմաններեն անդին՝ դեպի հյուսիս»: Սնանկ դատողություն:

Սովետական կառավարությանն այդ ժամանակ հայտնի չէր Անտանտի իմպերիալիստների և քեմալական Թուրքիայի դավադրական քայլերի ողջ էությունը: Լոնդոնի «Public Record office» արխիվում պահպանվող նյութերի ուսումնասիրությունը որոշ չափով բացեցին խնամքով մինչև այժմ քողարկված այդ դավադրության ծալքերը: 1920 թ. աշնանը Սովետական Ռուսաստանում և Անդրկովկասում գտնվող անգլիական ներկայացուցիչների Լոնդոն ուղարկած հաղորդագրություններից պարզվում է, որ Մուստաֆա Քեմալը, որը «վախենում էր բոլշևիզմից Անատոլիայում», ձգտում էր «համաձայնության գալ կենտրոնական (սուլթանի— Գ. Գ.) կառավարության հետ» և պատրաստվում էր սեպարատ պայմանագիր կնքել Անգլիայի հետ՝ Անդրկովկասում համագործակցված գործողություններ ծավալելու համար[1]:

[1] Public Record office (London), F. O. 371/4964, p. 111.

[2] *Նույն տեղը*, F. O. 371/4965, p.p. 15, 93.



Նպատակ հետապնդելով բարդ հանգույց ստեղծել Անդրկովկասում և Սովետական Ռուսաստանը ներքաշել քեմալական Թուրքիայի հետ պատերազմի մեջ, Անգլիան իր գործակալների միջոցով 1920 թ. աշնանը նախապատրաստում էր հակասովետական ելույթներ Դաղստանում և Անդրկովկասի այլ վայրերում, որպեսզի դրանով իսկ նպաստեր թուրքերի առաջխաղացմանը Անդրկովկաս: Միաժամանակ նա «հրահրում էր Հայաստանի կառավարությանը մոբիլիզացնել բոլորին»՝ թուրքերին դիմադրելու համար: Այսպիսով, Անգլիան ձգտում էր փակել հայ-թուրքական կոնֆլիկտը լուծելու հնարավոր բոլոր խաղաղ ճանապարհները: Այդ մասին է վկայում Թիֆլիսում գործող անգլիական գնդապետ Ստոքսի 1920 թ. հոկտեմբերի 13-ի հեռագիրն իր կառավարությանը՝ ուղարկված Կ. Պոլսի անգլիական ներկայացուցչության միջոցով[2]:

Անգլիական կառավարությունը ջանքեր չէր խնայում խոչընդոտելու Մոսկվայում Սովետական Ռուսաստանի կառավարության և դաշնակցական կառավարության ներկայացուցիչների միջև վարվող բանակցություններին: «Իմ կառավարությունը,— հայտարարել է Հ. Օհանջանյանը 1920 թ. նոյեմբերի 11-ին Ստոքսի հետ ունեցած զրույցի ժամանակ,— ինչպես դուք գիտեք, մերժել է միանալ բոլշևիկներին, հուսալով դաշնակիցների անմիջական օգնությունը»[3]:

Հայաստանում սովետական իշխանության համար աշխատավորների մղած պայքարը ճնշելու նպատակով, դաշնակցական կառավարությունն ուղղակի պահանջ էր դնում Անգլիայի կառավարության առջև՝ ռազմական ինտերվենցիա կազմակերպելու Հայաստան: «Այժմ հայերի միակ հույսը,— հայտարարել է Ա. Ահարոնյանը Փարիզում անգլիական ներկայացուցչի հետ 1920 թ. նոյեմբերի 12-ին ունեցած զրույցի ժամանակ,— Մեծ Բրիտանիայի կողմից ռազմական ինտերվենցիայի կազմակերպումն է Հայաստան»: Անգլիական ներկայացուցիչը հայտարարել է Ա. Ահարոնյանին, թե ինտերվենցիայի կազմակերպումը «անհնար է»[4]:

Անգլիան այդ ժամանակ չէր կարող ռազմական ինտերվենցիա կազմակերպել Հայաստան, քանի որ նա դաշինք էր փնտրում քեմալականների հետ և նպատակ ուներ Հայաստանը Թուրքիային զոհաբերելու միջոցով վերջինիս օգնությամբ իր ձեռքը գցել Բաքուն: 1920 թ. նոյեմբերի վերջերին Լոնդոնում հաղորդագրություն է ստացվում, որ կնքվել է «անգլո-թուրքական պայմանագիր Բաքվի և Հայաստանի վերաբերյալ»[5]:

Մեզ դեռևս չի հաջողվել հայտնաբերել այդ պայմանագրի տեքստը: Սակայն մի շարք այլ փաստաթղթեր ո՛չ միայն վկայում են, որ իրոք այդպիսի պայմանագիր կնքվել է, այլև բացահայտում են այդ պայմանագրի բովանդակությունը: Այսպես, 1920 թ. նոյեմբերի 21-ին Մոսկվայում հավատարմագրված ֆրանսիական լրագրող Լուի Բրիանը հաղորդում է իր կառավարությանը, թե «պաշտոնական անձանց հետ ունեցած զրույցներից Ձեր թղթակցին հայտնի է դարձել, որ անգլիացիները համաձայնության են եկել Մուստաֆա Քեմալի հետ, որպեսզի նա օկուպացնի Բաքուն, հետագայում այն Բրիտանական կառավարությանը հանձնելու համար: Որպես փոխհատուցում՝ Անգլիան զոհաբերելու է Հայաստանը»[6]:

Անգլիայի կառավարության հայտոյաց այս քաղաքականությունն անհասկանալի էր նույնիսկ Անդրկովկասում գործող անգլիական գործակալների համար: Հարոլդ Բուքստոնը, որը, ինչպես երևում է ղեկավարել է Անդրկովկասում անգլիական հետախուզության կազմակերպման գործերը, 1920 թ. դեկտեմբերի 16-ին Անգլիայի արտաքին գործերի մինիստրություն է ուղարկում Երևանում իրենց գործակալներից մեկի՝ Հ. Հարկուրտի նոյեմբերի 15-ին ստորագրած նամակը, որտեղ ևս խոսվում է այդ պայմանագրի մասին: Նշելով, որ այդ պայմանագրով որդեգրված քաղաքականության գլխավոր նպատակն է թուրքերի միջոցով «ռուսներին Բաքվից դուրս քշելը», ավելացնում է. «Ես հույս ունեմ, որ այսպիսի անբարոյական քաղաքականությունն իրոք մերը չէ, որովհետև այդ կնշանակեր ամբողջ Անդրկովկասը հանձնել վայրենության, իսկ Հայաստանը՝ ոչնչացման»[7]:

Որ անգլո-թուրքական «առևտուրը» հայտնի էր դաշնակցական կառավարությանը, կասկածից վեր է: 1920 թ. նոյեմբերի 23-ին Լոն-

[1] *Նույն տեղը*, F. O. 371/4948, p. 130.

[2] *Նույն տեղը*, F. O. 371/4962, p. 23.

[3] *Նույն տեղը*, F. O. 371/4963, p. 33.

[4] *Նույն տեղը*, p. 36.

[5] *Նույն տեղը*, F. O. 371/4966, p. 73.

[6] *Նույն տեղը*, F. O. 371/4964, p. 87.

[7] *Նույն տեղը*, F. O. 371/4966, p. 73.

դոնում ստացված «Իրադրություններ» հ. 638 հաղորդագրությունից հայտնի է դառնում, որ «Հայկական պառլամենտում հրապարակվել է դեկլարացիա, ըստ որի քեմալականների առաջխաղացումը Անդրկովկաս կատարվել է Բրիտանիայի հետ կնքված պայմանագրի համաձայն, որի նպատակն է օգնել մահմեդական մուսավաթական հակահեղափոխությանը՝ Անդրկովկասից կոմունիստներին դուրս մղելու նրա ջանքերում: Այս նպատակով Բրիտանիան վաճառել է Հայաստանը և Վրաստանը Թուրքիային: Հայաստանում բրիտանական կոմիսար գնդապետ Ստոքսը հայտարարել է, որ նա միանալու է քեմալականների հետ»[1]:

Այս փաստաթղթերը մերկացնում են անգլիական իմպերիալիստների և քեմալականների հակահայկական և հակասովետական մերձեցումների ամբողջ խոհանոցը: «Հատկապես այժմ,— գրում էր այդ օրերին Չիչերինը Լեգրանին,— երբ Անտանտի քաղաքականության մեջ ակնհայտ է շրջադարձը դեպի Թուրքիան և թուրքական նացիոնալիստների քաղաքականության մեջ՝ դեպի Անտանտը, անհրաժեշտ է հատկապես զգույշ կշռադատել մեր յուրաքանչյուր քայլն այդ ուղղությամբ»:

Քեմալականների քաղաքական այդ շրջադարձը և նրանց անդրկուլիսյան համաձայնությունները Անտանտի հետ Չիչերինը բացատրում էր նրանով, որ քեմալականները նպատակ էին դրել «1918 թվականի օրինակով զավթողական քաղաքականության դիմել Անդրկովկասում՝ Արևմուտքում կորցրածը փոխհատուցելու համար»: «Այդ վտանգը,— գրում էր Չիչերինը Լեգրանին,— ստիպում է մեզ, որպեսզի լրջորեն հաշվի նստենք Հայաստանի ու Վրաստանի հնարավոր դերի հետ՝ որպես թուրքական հարձակողական քաղաքականության վերսկսման պատնեշի»:

Այսպիսով, այն ժամանակ, երբ Անտանտի իմպերիալիստները Թուրքիայի հետ համագործակցած նոր դավեր էին լարում հայ ժողովրդի դեմ, դաշնակցության լիդերները երկիրը Թուրքիային վաճառելու գնով փորձում էին մնալ իշխանության գլուխ:

Նոյեմբերի վերջերին դրությունն Անդրկովկասում ավելի բարդացավ դաշնակցականների նոր դավաճանության հետևանքով: Վերջիններս ավարտել էին Ալեքսանդրապոլում թուրքերի հետ անջատ հաշտություն կնքելու բանակցությունները և համաձայնել էին ստորագրել մի պայմանագիր, ըստ որի դաշնակցականները թուրքերից երաշխիք էին ստանում մնալ իշխանության գլուխ, որի դիմաց նրանք էին զիջում Հայաստանի տերիտորիայի մեծագույն մասը: Ավելին, դաշնակցականները ընտրություն էին դնում մի պայմանագրի տակ, որտեղ սևով սպիտակի վրա գրված էր, թե Թուրքիային անցնող բուն հայկական տերիտորիաները «անվիճելի, պատմական, էթնիկական և իրավական կապ ունեն Թուրքիայի հետ»:

Այսպիսով, ըստ էության Հայաստանի հանրապետությունը որպես այդպիսին դադարում էր գոյություն ունենալուց, իսկ հայ ժողովրդի ֆիզիկական գոյության հնարավորությունը պայմանավորվում էր քեմալականների քմահաճույքով: Թուրքիան, ինչպես նշում էր Գ. Վ. Չիչերինը, թելադրել էր «Հայաստանի համար անասելի ծանր հաշտություն, ըստ որի նույնիսկ ձևականորեն անկախ մնացած նրա մասը փաստորեն ընկնում էր Թուրքիայից լրիվ կախվածության մեջ»[2]: Գրավելով Հայաստանը, Թուրքիան մշտնջենական սպառնալիքի տակ էր պահելու Ադրբեջանը և պատվար էր հանդիսանալու մուսավաթական խռովարարների, ինչպես նաև լեռնական հրոսակախմբերի համար:

Սակայն Հայաստանի հեղափոխական բանվորներն ու գյուղացիները այլ կերպ լուծեցին հարցը: Նոյեմբերի 29-ին նրանք տապալեցին դաշնակցականների կառավարությունը և երկրում հռչակեցին սովետական իշխանություն: Այս ճգնաժամային պահին հայ ժողովրդին կրկին օգնության ձեռք մեկնեց ռուս մեծ ժողովուրդը:

Սովետական իշխանության հաստատումն արմատապես փոխեց նաև Հայաստանի նկատմամբ Անտանտի իմպերիալիստների և քեմալական Թուրքիայի վերաբերմունքը: Հայաստանը դադարեց նրանց առուծախի առարկան լինելուց: Այդ երկրների կառավարող շրջանները հասկացան, որ Հայաստանն այլևս անպաշտպան չէ, որ «Հայկական հարցը,— ինչպես գրում էր այդ օրերին անգլիական «The Times»-ը,— այժմ արդեն ռուսական հարց է»[3]: Անգլիական պառլամենտում ամբողջ դեկտեմբեր ամսվա ընթացքում չէին դադարում վիճաբանությունները Անդրկովկասում ստեղծված դրության շուրջը: Պառլամենտում հայտարարություններ արվեցին, թե իբր ռուսները Հայաստան են մտցրել 10 հազարանոց զորք, մի շարք հարցապնդումներ արվեցին

[1] Public Record office (London), F. O. 371/4964, p. 80.

[2] *Նշված պայմանագրի տեքստը տե՛ս «Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ ռևոլյուցիան և սովետական իշխանության հաղթանակը Հայաստանում», էջ 408—411։*

[3] «The Times», December 4, 1920.



կառավարությանը՝ Հայաստանը բոլշևիկներից «փրկելու» միջոցառումների մասին[1]:

Ինչպե՞ս և ինչու ստորագրվեց Ալեքսանդրապոլի դեկտեմբերի 2-ի պայմանագիրը: Պայմանագրի ստորագրումը դաշնակցականների կողմից հարկադրաբար կատարված քայլ չէր, ինչպես նրա գաղափարախոսները փորձում են այժմ ներկայացնել այն: Այդ պայմանագրի ստորագրումը կատարվեց Անտանտի իմպերիալիստների թելադրանքով, որը նպատակ էր հետապնդում իրավական ուժ հաղորդել քեմալականների զավթողական քաղաքականությանը և նպաստել նրանց միջոցով Անդրկովկասը Ռուսաստանից անջատելու իրենց վաղեմի ձգտումների իրագործմանը:

Դարձյալ դիմենք նորահայտ փաստերին:

1920 թ. նոյեմբերի 18-ին Ստոքսը հայտնում է իր կառավարությանը. «Խատիսյանը, որն իր կառավարության կողմից լիազորված է հաշտության բանակցություններ վարելու քեմալականների հետ, այսօր այցելեց ինձ: Նա հայտարարեց, թե իր կառավարությունը կարծում է, որ ստիպված է հաշտություն կնքել կամ թուրքերի կամ բոլշևիկների հետ: Գերադասելի է հաշտություն կնքել թուրքերի հետ և... հակված է հավատալ, որ Նորին Մեծության կառավարությունը նույնպես այդ է գերադասում»: Այնուհետև Խատիսյանը հարցրել է, թե Անգլիայի կառավարությունը կստորագրի՞ նման պայմանագիրը, թե ոչ: Խատիսյանը հայտարարել է նաև, որ լուրեր են պտտվում այն մասին, թե «Դաշնակիցները և մասնավորապես Անգլիան օգնում են քեմալականներին, քանի որ վերջիններս հետագայում ցանկանում են կռվել բոլշևիկների դեմ... Հայաստանի կառավարությունը հաշտություն է ուզում, բայց այնպիսի հաշտության է նա ուզում հասնել, որը, որքանով դա հնարավոր է, արժանանա Նորին Մեծության կառավարության հավանությանը... Հայաստանի կառավարությունը երազում է որդեգրել Նորին Մեծության կառավարությանը առավել ընդունելի կուրս»:

Հաղորդելով այս մասին, Ստոքսը իր կառավարությանը խնդրում է հայտնել, թե ինչ պատասխան տա ինքը դաշնակցական կառավարությանը: Նոյեմբերի 28-ին Անգլիայի արտաքին գործերի մինիստրությունը հետևյալ հեռագիրն է ուղարկում Ստոքսին (որը Թիֆլիսում ստացվել է նոյեմբերի 30-ին) «Պարզ է, որ մենք չենք մասնակցի նացիոնալիստների (քեմալականների— Գ. Գ.) հետ կնքվող պայմանագրին*, բայց մենք պարզորոշ հասկանում ենք, որ հայերը այլ ընտրության իրավունք չունեն, քանի որ Սովետների հետ պայմանագրի այլընտրանքը անկասկած վատթարագույնն է»[2]:

Դեկտեմբերի 1-ին Ստոքսը այս մասին տեղյակ է պահում Խատիսյանին, որը և հաջորդ օրը ստորագրում է Ալեքսանդրապոլի խայտառակ հաշտությունը:

Սովետական Ռուսաստանի արտաքին քաղաքականության առջև ծառացած էր խնդիր պաշտպանել Հայաստանը քեմալականների ագրեսիվ նկրտումներից և միաժամանակ ծայրահեղորեն չլարել սովետա-թուրքական հարաբերությունները, թույլ չտալ Անտանտի իմպերիալիստներին ռազմական ընդհարում առաջ բերելու Թուրքիայի և Սովետական Ռուսաստանի միջև: Քաղաքական այս կուրսը օբյեկտիվորեն բխում էր նաև Թուրքիայի ազգային շահերից, մի բան, որ չէր կարողանում ըմբռնել քեմալականների աջ թևը, որը համառորեն ձգտում էր Թուրքիան վերջնականապես գլորել Անտանտի գիրկը և խզել հարաբերությունները Սովետական Ռուսաստանի հետ:

Գնահատելով սովետա-թուրքական հարաբերությունների վիճակն այս շրջանում, Գ. Վ. Չիչերինը 1920 թ. դեկտեմբերի 9-ին Վրաստանում ՌՍՖՍՀ ներկայացուցիչ Ա. Շեյնմանին գրում էր. «Մեր հեղինակությունը Թուրքիայի մասսաների մեջ այնքան մեծ է, որ քեմալականների աջ թևը ներկա պահին չի կարող կտրուկ կերպով մեր դեմ ուղղել քաղաքականությունը և միայն խարդավանքներով ու մեզ համար վնասակար դիվանագիտական գործողություններով կարող է մեզ խանգարել:

Դա մեզ չի ազատում այս առումով ապագայում առավել լուրջ վտանգի հնարավորությունից...»[3]:

Այդ վտանգը գնալով խորանում էր, որը հիմք տվեց Վ. Ի. Լենինին որոշակիորեն գնահատելու քեմալականների քաղաքականությունը Անդրկովկասում որպես Անտանտի թելադրանքով վարվող հակահեղափոխական, ագրեսիվ քաղաքականություն: Հետադարձ հայացք ձգելով Հայաստանի վրա թուրքերի կատարած հարձակման փաստին, Վ. Ի. Լե-

[1] *Տե՛ս* Public Record office, F. O. 371/4966, p.p. 33, 37, 165, 166.

* *Դա հասկանալի է, քանի որ, ինչպես տեսանք վերևում, Անգլիան այլ պայմանագիր էր կնքել Թուրքիայի հետ։*

[2] Public Record office, F. O. 371/4964, p.p. 83, 84, 85.

[3] *ՍՄԿԿ Կենտկոմին կից ՄԼԻ-ի հայկական մասնաճյուղի արխիվ, ֆ. 4033/11։*

նինը սովետների 8-րդ համագումարի ՌԿ(բ)Կ ֆրակցիայի փակ նիստում 1920 թ. դեկտեմբերի 21-ին ունեցած ելույթում շեշտեց, որ «Թուրքական հարձակումը մեր դեմ էր ուղղված, Անտանտը մեզ համար փոս էր փորում և ինքն էլ ընկավ այնտեղ, որովհետև մենք ձեռք բերեցինք Սովետական Հայաստան:

Թուրքիան ղեկավարում են կադետները, օկտյաբրիստները, նացիոնալիստները, որոնք պատրաստ են մեզ Անտանտին ծախել»[1]:

Լենինի այս գնահատականն ունի բացառիկ կարևոր նշանակություն Անդրկովկասում քեմալականների վարած ագրեսիվ քաղաքականության բուն էությունն ըմբռնելու համար: Այս առումով առնվազն արտառոց է հնչում լորդ Կինրոսի պնդումը, թե, ի տարբերություն Հիտլերի և Մուսոլինիի դիկտատուրայի, քեմալական դիկտատուրան «խորապես խաղաղասիրական էր և որևէ երկրի չի ներկայացրել ո՛չ քաղաքական և ոչ էլ տերիտորիալ պահանջներ»[2]: Թուրքական ժամանակակից բուրժուական պատմագրությունից փոխառնըված այս կոնցեպցիան լայնորեն տարածվել է անգլո-ամերիկյան բուրժուական գրականության մեջ և ոչինչ ընդհանուր չունի պատմական փաստերի հետ: Այն նպատակ է հետապնդում արդարացնելու քեմալականների ու նրանց հովանավորող Անտանտի իմպերիալիստների ;արագործությունները Անդրկովկասում: Դժբախտաբար, սովետական որոշ թուրքագետներ ևս անտեղյակություն են դրսևորում Հայաստանի վրա թուրքերի կատարած հարձակմանը տված լենինյան գնահատականին, որն ըստ էության հանգեցնում է թուրքական ագրեսիայի արդարացմանը[3]:

Վ. Ի. Լենինին խիստ անհանգստացնում էր թուրքերի կողմից հայերին սպառնացող նոր ջարդի վտանգը: Այս առիթով, 1920 թ. դեկտեմբերի 14-ին Գ. Վ. Չիչերինին նա գրում է. «Ընկեր Չիչերին. երեկ ինձ մոտ էր Տեր-Գաբրիելյանը, որը նույնպես խոսում էր ջարդի ահավոր վտանգի մասին... Կարծում եմ անհրաժեշտ է... ամեն կերպ օգնել»[4] Հայաստանին: Լենինը հանձնարարում է Չիչերինին տեղեկանք պատրաստել թուրքերի կողմից հայերին սպառնացող ջարդի և հայ գաղթականների վիճակի մասին ու առաջարկներ ներկայացնել Հայաստանին օգնություն ցույց տալու հարցի վերաբերյալ: «Քանի որ խոսքը վերաբերում է հայ բնակչությանն ընդհանրապես,— պատասխանում է Չիչերինը Լենինին,— ապա մեր ամբողջ գործունեությունն այդ ուղղությամբ, ինչպես Ձեզ հայտնի է, նպատակ ունի կասեցնել թուրքերի հետագա հարձակումը և ստիպել նրանց ետ քաշվել Արփաչայի այն կողմը... Դուք գիտեք, որ թուրքերին զենք տալը մենք կապել ենք թուրքերի՝ Արփաչայի այն կողմը նահանջելու պահանջի հետ: Մենք կարող էինք անել ավելին, եթե հնարավոր լիներ Հայաստան ուղարկել ավելի շատ զորք»[5]:

Այս փաստաթղթերը խիստ կարևոր վկայություն են հայկական հարցում Սովետական Ռուսաստանի կառավարության բռնած դիրքի վերաբերյալ: Դրանք պատասխան են տալիս սկզբունքային նշանակություն ունեցող բազմաթիվ հարցերի, որոնք ծուռ հայելու մեջ են պատկերվում բուրժուական պատմագրության, հատկապես դաշնակցական գաղափարախոսների գրվածքներում և, աղավաղելով պատմական ճշմարտությունը, հեռու գնացող քաղաքական կեղտոտ նպատակներ են հետապնդում:

Մեր գաղափարական հակառակորդները քիչ ջանքեր չեն գործադրել աղավաղելու սովետա-թուրքական 1921 թ. մարտի 16-ի պայմանագիրը կնքելու հանգամանքները և արդարացնելու դաշնակցականների փետրվարյան ավանտյուրան:

1921 թ. փետրվարյան ավանտյուրան Անտանտի իմպերիալիստների և քեմալական Թուրքիայի խնամքով նախապատրաստված հակասովետական պլանների մի մասն էր: Այժմ այդ մասին երկու կարծիք լինել չի կարող: Այդ ավանտյուրան բարձրացվեց՝ դաշնակցականների օգնությամբ Հայաստանը քեմալական Թուրքիայի զոհասեղանին դնելու համար:

Դեռևս Երևանը չգրաված, Ս. Վրացյանի «Հայրենիքի փրկության կոմիտեն» 1921 թ. մարտի 12-ին հեռագրով Չիչերինից պահանջում էր, որ «Մոսկվայի կոնֆերանսը իրավասու չէ քննության առնելու Հայաստանի խնդիրը»: Իսկ երբ արդեն ստորագրված էր սովետա-թուրքական պայմանագիրը, որով ըստ էության չեղյալ էր հայտարարվել Ալեքսանդրապոլի պայմանագիրը, մարտի 25-ին Ս. Վրացյանը հետևյալ հեռագիրն ուղարկեց Անկարա. «Իմ կառավարությունը Տաճկաստանի և Հայաստանի միջև ազգային նորմալ և բարեկամական հարաբերություններ սկսելու բանալի է համարում այն պայմանները, որոնք ձևակերպված են անցյալ տարվա դեկտեմբերի 2-ին Ալեքսանդրապոլում կնքած հայ-տաճկական դաշնագրի մեջ և հետագային ստեղծված իրական պայմանները»:

Դա թև տվեց Քեմալի կառավարությանը, որն այդ ժամանակ բանակցություններ էր վարում Սովետական Ռուսաստանի հետ և ամեն կերպ խուսափում էր ընդունելու վերջինիս պահանջը Ալեքսանդրապոլի պայմանագրից հրաժարվելու մասին:

Ս. Վրացյանին շատ լավ էր հայտնի, որ եթե Սովետական Ռուսաստանի օգնությունն ընդունվեր, թուրքերը չէին համարձակվի առաջ շարժվել: Բայց դա չէր մտնում Վրացյանի և նրա համախոհների հաշիվների մեջ. չէ՛ որ նա թուրքական օրիենտացիա էր ընդունել և ձգտում էր այն պարտադրել նաև ամբողջ հայ ժողովրդին: Եվ երբ, կրախի մատնվելով Հայաստանում, նա փախավ արտասահման, անշնորհք փորձ արեց կրկին հավաստելու իր «պետական հեռատեսությունը», իր գրվածքներից մեկում քարոզելով, թե «հայ ժողովուրդն իր բախտը պիտի կապե թուրքերու հետ. այսպիսով կստանա նա ազատություն»:

Սովետական կառավարությունը Թուրքիայի հետ պայմանագիրը կնքելիս արեց ամեն անչ Անդրկովկասի ժողովուրդների ազգային շահերի պաշտպանության համար: Սակայն դաշնակցականների ազգադավ քաղաքականության հետևանքով Արևելյան Հայաստանի տերիտորիայի մի զգալի մասը ևս, այդ թվում Կարսը և Արդահանը, մնացին Թուրքիայի սահմաններում: «Տաճիկների հետ,— նշում է այդ առթիվ Ալ. Մյասնիկյանը,— ավելի հաջող պայմաններ կարող էինք կապել: Բայց չարագործները խանգարեցին: Եթե չլիներ դաշնակների վերջին ավանտյուրան, մենք այժմ ավելի լայն սահմաններ կունենայինք»[1]:

Ծանր զոհաբերությունների գնով Սովետական Ռուսաստանին հաջողվեց պաշտպանել Հայաստանի նորաստեղծ սովետական հանրապետության անկախությունը:

Այս փաստերն են, որ իրենց ամբողջությամբ մեզ իրավունք են տալիս եզրակացնելու, որ **Հայաստանի նկատմամբ Անտանտի և ԱՄՆ-ի իմպերիալիստական պլանների ձախողման գործում վճռական դերը պատկանում է Սովետական Ռուսաստանին:**

---

1 В. И. Ленин, ПСС, т. 42, стр. 125.

2 Lord Kinros. Ataturk, The Riborth of nation. London, 1964, p.p. 231, 458.

3 *Տե՛ս* А. Д. Новичев. Турция. Краткая история. М., «Наука», 1965, стр. 153.

4 В. И. Ленин, ПСС, т. 52, стр. 33.

5 *Տե՛ս «Լենինյան ուղիով», 1967, № 7, էջ 76:*

1 *Ալ. Մյասնիկյան,* Ընտիր երկեր, *Երևան, 1957, էջ 336:*

# ԱՆՁՆՈՒՐԱՑ ՀԵՂԱՓՈԽԱԿԱՆԸ

## (Հ. Ս. ՍԱՐՈՒԽԱՆՅԱՆԻ ԾՆՆԴՅԱՆ 100-ԱՄՅԱ ՏԱՐԵԼԻՑԻ ԱՌԹԻՎ)

Պետք է կարենալ
իրերն ու իրերը զոհաբերել հանուն սիրելի հայրենիքի:

Ֆ. ԷՆԳԵԼՍ



1970 թվականի նոյեմբերի 29-ին, Հայաստանում սովետական իշխանության հաստատման և Հայաստանի կոմունիստական կուսակցության կազմավորման 50-ամյակին նվիրված հանդիսավոր նիստում, ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար Լ. Ի. Բրեժնևը իր ճառում ասաց. «Ռուսաստանում պրոլետարական շարժման առաջին իսկ քայլերից հայ ժողովրդի լավագույն զավակները ամենայն ակտիվությամբ մասնակցեցին դրան: Երևան եկավ ինտերնացիոնալիստ-հեղափոխականների մի հոյակապ համաստեղություն, որն ըմբռնում էր Ռուսաստանի բոլոր ժողովուրդների աշխատավորական զանգվածների շահերի հետ Հայաստանի աշխատավոր ժողովրդի շահերի անքակտելի կապը: Իրենց ժողովրդի բախտը կապելով Ռուսաստանի ամբողջ պրոլետարիատի պատմական միսիայի, Ռուսաստանում սոցիալիստական հեղափոխության հաղթանակի հետ, նրանք առանց տատանվելու բռնեցին Լենինի նշած ուղին, դարձան նրա աշակերտները, բարեկամները ու զինակիցները...

Նրանք արժանավայել ավանդ ներդրեցին համառուսաստանյան հեղափոխական շարժման զարգացման, նոր տիպի մարքսիստական կուսակցության ստեղծման մեջ, մեր ամբողջ երկրի կոմունիստների հետ միասին ակտիվորեն մասնակցեցին հին աշխարհի վրա կատարվող գրոհին, նոր աշխարհի՝ սոցիալիստական աշխարհի կառուցմանը» (**Լենինյան կուրսով**, հ. 3, էջ 224):

Այս լեգենդար սերնդին է պատկանում նաև պրոֆեսիոնալ հեղափոխական, մարքսիստ մանկավարժ, հետևողական ինտերնացիոնալիստ Հովհաննես Սարգսի Սարուխանյանը, որի ծննդյան 100-ամյակը լրացավ այս տարվա սեպտեմբերի 5-ին (օգոստոսի 24-ին): Նա քաղաքական հորձանուտի մեջ մտավ XX դարի արշալույսին, երբ ցարական Ռուսաստանում իշխող դեսպոտիզմի պայմաններում Վ. Ի. Լենինի ստեղծած կոմունիստական կուսակցությունը համառ պայքար էր սկսել հին կարգերը կործանելու համար:



«Պրոլետարական շարժումը միանգամից բարձրագույն աստիճանի հասավ,— 1905 թ. փետրվարին գրում էր Վ. Ի. Լենինը,— գործադուլն ու ցույցը մեր աչքերի առաջ սկսեցին **ապստամբության վերածվել**» (ԵԼԺ, հ. 9, էջ 307): Բնորոշն այն էր, ինչպես նշում էր Լենինը, որ այդ շարժումը տարածվում էր նաև կայսրության ամենահեռավոր ծայրամասերում: «Հուզմունքն ու դժգոհությունն ընդգրկում են հասարակության ամենաբազմազան և ամենահետամնաց խավերը»,— ասում էր նա (նույն տեղը, էջ 303):

Այսպիսի հեռավոր ու հետամնաց ծայրամասերից էր արդյունաբերական կենտրոններից հեռու գտնվող այն ժամանակվա Նոր Բայազետ գյուղաքաղաքը (այժմ Կամո), որտեղ նույնպես լսվեց պրոլետարական շարժման հուժկու ձայնը: Հենց այդ ժամանակ էլ, Նոր Բայազետում երիտասարդ ուսուցիչ Հովհաննես Սարուխանյանը զինվորագրվեց բոլշևիկների կուսակցությանը, անմնացորդ նվիրաբերելով իր ողջ կյանքը: Նրա անունն ու գործը ապրում են և ընդմիշտ կապրեն սերունդների սրտում:

Հովհաննես Սարուխանյանը նախնական կրթությունն ստանում է Ղազախի գավառի Դաշքյասաման գյուղի երկդասյան պետական ռուսական դպրոցում, ապա գերազանց գնահատականներով ավարտում է իր ծննդավայր Նոր Բայազետի քաղաքային ուսումնարանը: Հետո ուսումը շարունակում է Երևանի ուսուցչական սեմինարիայում:

1901 թ. հունիսին, ավարտելով սեմինարիան, երիտասարդ ուսուցիչը նույն թվականի սեպտեմբերի 1-ից մանկավարժական աշխատանքի նշանակվեց Բասարգեչարի շրջանի Մեծ Մազրա գյուղի մեկդասյա ռուսական պետական ուսումնարանում որպես վերակացու: Այդ ժամանակվանից Սարուխանյանների ընտանիքից միաժամանակ չորս հոգի՝ Գևորգը, Խաչատուրը և Հովհաննեսը, ինչպես նաև Խաչատուրի կինը՝ Արտաշամը, մանկավարժական աշխատանք էին կատարում Անդրկովկասի տարբեր վայրերում, ուսուցչի ծանր աշխատանքով վաստակում իրենց ապրուստը:

Մեծ Մազրայի դպրոցն ուներ երկու ուսուցիչ՝ մեկը գյուղի մոլլա Մուստաֆա Հաջին էր, որն ադրբեջաներեն լեզվի ու իսլամի դասեր էր տալիս, մյուսը՝ վերակացու Հովհաննես Սարուխանյանը, որը դասավանդում էր մնացած բոլոր առարկաները: Ուսուցիչ Հովհաննես Սարուխանյանն այստեղ աշխատեց չորս տարի: Նա աշխատանքի հենց հաջորդ տարում սկսեց Մազրայի դպրոցի համար սեփական շենքի կառուցումը և 1904 թ. դեկտեմբերի 1-ին Երևանի նահանգի ժողովրդական ուսումնարանների վարչություն ուղարկեց իր զեկուցագիրը՝ «Պատիվ ունեմ հաղորդելու ձեզ, որ այս տարվա նոյեմբերի 17-ին Մազրայի դպրոցը վարձակալված շենքից տեղափոխեցի Մազրայի հասարակության և գանձարանի միջոցներով նորակառույց շենքը... Շրջապատը կանաչապատելու համար պատրաստված է 1000 ծառ տնկելու տեղ»[1]:

Աշակերտներն ու ծնողները գոհ էին նրանից: Հ. Սարուխանյանը ականատես եղավ գյուղում իշխող սոցիալական անհավասարությանը և օգնեց աղքատներին՝ ինչով կարող էր:

Ոտք դնելով լուսավորության բնագավառ և մտնելով ծանոթանալով դպրոցում թագավորող ծանր վիճակին, դասավանդման հին սխոլաստիկ մեթոդներին, Հովհաննես Սարուխանյանը փորձեց նորամուծություններ կատարել, բայց դրանով իր դեմ հանեց ռեակցիոն ուժերին, որոնց կազմակերպում ու գլխավորում էին գավառի պետերը: Հենց այդ ժամանակներից էլ Հ. Սարուխանյանը դասվեց վտանգավոր մարդկանց շարքը, առնվեց հսկողության տակ և զրկվեց պաշտոն վարելու, ինքնուրույն աշխատանք կատարելու հնարավորությունից:

Ծուտով, աշխատանքի բերումով Սարուխանյանը ծանոթացավ Նոր Բայազետի դպրոցներում աշխատող առանձին ուսուցիչների հետ: Նրանցից ոմանք (Ա. Աբրահամյանը, Ի. Ճեյշվիլին, Ա. Սոքանկարը, Պ. Լեժավան և ուրիշներ) աքսորականներ էին:

Հենց այդ մարդկանց միջոցով էլ Հովհաննեսը ծանոթացավ սոցիալ-դեմոկրատական անլեգալ գրականությանը: Առաջին անգամ նա այստեղ ձեռքն է առնում Կ. Մարքսի **Կապիտալի** առաջին հատորը, որի ուսումնասիրման համար, ինչպես վկայում է հուշերի հեղինակներից մեկը, «գիշերները լուսացնում էր նավթի ճրագի առաջ»: Համախոհ լինելով նոր ծանոթների հայացքներին, նրանց հետ միասին 1903—1904 թթ. Նոր Բայազետում Հովհաննես Սարուխանյանը հիմնադրում է առաջին մարքսիստական խմբակը:

1905 թ. հոկտեմբերի 1-ից Սարուխանյանը փոխադրվեց Նոր-Բայազետի երեքդասյան քաղաքային ուսումնարան, որպես երգեցողության դասատու[1]: Այն ժամանակ էլ նրա ղեկավարությամբ կազմավորվեց ՌՍԴԲԿ Նոր Բայազետի կազմակերպությունը, որն իր պատմության ընթացքում կարևոր դեր է կատարել Սևանի ավազանում ապրող բազմազգ աշխատավորների հեղափոխական շարժում-

[1] *ՀՍՍՀ ՊԿՊԱ, ֆ. 19, ց. 1, գ. 1122, թ. 10—11:*

ները կազմակերպելու և գլխավորելու գործում:

Պրակտիկ աշխատանքի հետ միասին Հովհաննես Սարուխանյանը լրջորեն զբաղվում էր իր մանկավարժական ու քաղաքական գիտելիքների հարստացմամբ: Տարիների քրտնաջան աշխատանքի արդյունքը եղավ այն, որ 1907 թ. հունիսին նա ավարտեց Թիֆլիսի Ալեքսանդրյան ուսուցչական ինստիտուտը և Նոր Բայազետի ուսումնարանում նշանակվեց հաստիքային ուսուցիչ:

Հայտնի է, թե 1905—1907 թթ. ռուսական առաջին հեղափոխության ժամանակավոր պարտությունից հետո Ռուսաստանում ինչպիսի կատաղությամբ էր մոլեգնում ռեակցիան: Տարիներ հետո, 1918 թվականին, Վ. Ի. Լենինը, վերհիշելով այդ շրջանը, գրել է. «Կալվածատիրական ամենավայրենի ռեակցիայի տասներկու երկար, տանջալից տարիներ բզկտում էին Ռուսաստանի բոլոր ժողովուրդների բոլոր բանվորներին ու գյուղացիներին» (**ԵԼԺ**, հ. 37, էջ 481):

Արխիվային նորահայտ փաստաթղթերը շատ մանրամասնություններ են հաղորդում ռեակցիայի հենց այդ ծանր տարիներին Հովհաննես Սարուխանյանի ծավալած հեղափոխական-մանկավարժական գործունեության մասին: Այն ժամանակ, երբ հեղափոխության պարտությունից հետո նրան հարած ինտելիգենտական տարրերից շատերը, երկչոտություն ցուցաբերելով, լքում, հեռանում էին բանվոր դասակարգի ավանգարդի շարքերից, գավառական ուսուցիչ Սարուխանյանը պահեց իր հոգու արիությունը: Նա խիզախորեն շարունակեց մնալ հեղափոխական պայքարի դիրքերում: Հ. Սարուխանյանի անընկճելի կամքը և հեղափոխական գործունեությունը խոշոր դեր խաղացին Նոր Բայազետի սոցիալ-դեմոկրատական կազմակերպության մեջ նոր անդամների ներգրավման գործում: 1907 թ. վերջերին և 1908 թ. սկզբներին կազմակերպության մեջ ընդունվեցին Հովհաննես Սարուխանյանի սաներից Բատիկ Բատիկյանը, Վանո Սիրունյանը և ուրիշներ: Հենց այդ ժամանակ էլ նրա գլխավորությամբ Նոր Բայազետի լենինյանները տարանջատվեցին հեղափոխությանը դավաճանող մենշևիկներից և 1908 թ. ստեղծեցին ինքնուրույն բոլշևիկյան կազմակերպություն: Վերջացան Սարուխանյանի ուսուցչական աշխատանքի համեմատաբար խաղաղ տարիները: Սկսվեց ուսուցիչ-

[1] *ՀՍՍՀ ՊԿՊԱ, ֆ. 20, ց. 2, գ. 297, թ. 1:*

հեղափոխականի ասպետական կյանքի ու գործունեության փոթորիկներով լի նոր շրջանը: Շուտով նա անբաստանվեց: Երևանի նահանգի ու Նոր Բայազետի գավառի ցարական սատրապների շրջանում Սարուխանյանը ճանաչվեց որպես «վտանգավոր մարդ»: Նա, որ իր ծննդավայրում բնակչության մեջ մեծ հեղինակություն էր վայելում և սիրված էր ուսումնարանի սաների կողմից, պետք է հեռացվեր Նոր Բայազետից: Այդ նպատակին հասնելու համար գործի դրվեցին ցարական ոստիկանական լեգալ և անլեգալ պրովոկացիայի բոլոր միջոցները: Այսպես, 1909 թ. մայիսին Երևանի նահանգի ուսումնարանների դիրեկտորը հատուկ միջնորդություն հարուցեց վերադասի առաջ՝ ուսուցիչ Հովհաննես Սարուխանյանին իր տնօրինության տակ եղած ուսումնարաններից տեղափոխելու մասին:

Շուտով Հովհաննես Սարուխանյանի մասին Կովկասի ուսումնական օկրուգում անանուն նամակ է ստացվում: Այդ փաստաթուղթը ևս հասել է մեզ և գտնվում է պետական արխիվում, Սարուխանյանի անձնական գործում: Այդ անանուն նամակում ասված է. «Հենց միայն այն հանգամանքը, որ այդ ուսուցիչ Սարուխանովը բազմիցս հայտարարել է, որ ինքը պատկանում է հեղափոխականների կուսակցությանը, բնական է, որ նա այդ ոգով էլ պիտի դաստիարակի աշակերտներին և փչացնի նրանց»: «Համոզված ենք, որ աշակերտները ուրիշ լավ բան չեն սովորի իրենց շատ հարգելի ուսուցչից»[2]:

Այս երկու գրությունն էլ պատրաստված էին միևնույն խոհանոցում՝ ցարական ոստիկանների և նրանց կամակատարների կողմից, մի նպատակով՝ հեռացնել Հովհաննես Սարուխանյանին իր ծննդավայրից, որպեսզի կազմալուծեն ՌՍԴԲԿ գործունեությունը Սևանի ավազանում:

Զավեշտականն այն է, որ անանուն նամակի գաղտնի ստուգումը հանձնարարվեց նրա հեղինակներից մեկին՝ Երևանի նահանգի ուսումնարանների դիրեկտոր Սմիռնովին, որը, ինչպես հայտնի է, վաղուց էր երազում Հովհաննես Սարուխանյանից ազատվելու մասին: Պարոն Սմիռնովը նոր զրպարտանքներ հորինեց, և Կովկասի ուսումնական օկրուգի հոգաբարձությանն իր պատասխան գրության մեջ ավելացրեց. «Կից վերադարձնելով անանուն նամակը, պատիվ ունեմ տեղեկացնելու ձերդ

[2] *ՀՍՍՀ ՊԿՊԱ, ֆ. 20, ց. 2, գ. 297, թ. 18:*



գերազանցությանը հետևյալի մասին. «Ուսուցիչ Սարուխանովը... իր բնավորության անհնազանդությամբ առաջ է բերում անբարյացակամություն: Դա բավարար հիմք է հանդիսանում նրան ուրիշ քաղաքային դպրոց տեղափոխելու համար, որի մասին ես խնդրել եմ անցյալ տարի»[1]:

1910 թվականին Հովհաննես Սարուխանյանը հեռացվեց Նոր Բայազետից և արտաքսվեց Իգդիր: Այստեղ, քաղաքային ուսումնարանում նա նշանակվեց ռուսաց լեզվի դասատու: Կարճատև եղավ նրա ծառայությունը Իգդիրում, ընդամենը մեկ տարի: Հակառակորդները այստեղ էլ նրան հանգիստ չտվին:

Ոստիկանական հսկողության տակ գտնվող Սարուխանյանի գործունեությունը, բնական է, աննկատ չմնաց: Նրա դեմ նետվեցին գաղտնի ոստիկանության ամենազոր ուժերը: Այդ աշխատանքներում ներգրավվեցին նաև Իգդիրի քաղաքային ուսումնարանի տեսուչ, սև-հարյուրակային Կոնստանդին Ոստուրգաուրին, նույն դպրոցի նախկին շրջանավարտ, ուրյադնիկի որդի Յակով Սերեդան և ուրիշներ: Նրանք քայլ առ քայլ, դպրոցում, թե դրսում, հետևում էին Սարուխանյանին, արգելքներ հարուցում նրա դեմ: Պայքարի ամենասուր ձևեր կիրառելով՝ նրանք ջանում էին չեզոքացնել Սարուխանյանի օրավուր աճող ազդեցությունը, փորձում նույնիսկ նրա դեմ գրգռել աշակերտներին: Սակայն զուր ջանքեր էին դրանք: Սարուխանյանը համբերատար էր, նրա հեղինակությունը հետզհետե ավելի էր բարձրանում, աշակերտները ավելի էին կապվում իրենց սիրելի ուսուցչի հետ:

Ցարական ոստիկանները լավ տեղյակ էին ուսուցիչ Սարուխանյանի քաղաքական հայացքներին, հետևապես, նրանց հաճելի չէր բարձր դասարանի աշակերտների հետ նրա ստեղծած մտերիմ, բարեկամական մթնոլորտը: Իր հերթին Սարուխանյանի համար գաղտնիք չէր, որ ոստիկանությունը քայլ առ քայլ հետևում է իրեն: Բայց ըմբոստ հեղափոխականը չէր վհատվում, շարունակում էր գործել վստահ, միաժամանակ զգույշ: Բայց նա լավ գիտեր, որ հակառակորդները չեն դադարեցնելու իրենց հալածանքները, ուստի նա պատրաստվում էր դիմադրելու նրանց:

Հանգամանքների բերումով ընդհարման օրը վրա հասավ: Հ. Սարուխանյանը որոշեց նախահարձակ լինել: Բացահայտ, հրապարակային ելույթի համար նա ընտրեց մայիսի 14-ը՝ «Նորին մեծություն» Նիկոլայ Ռոմանովի թագադրության օրը: Մայիսի 13-ին աշակերտները 3-օրյա արձակուրդ ստացան ի պատիվ «մեծ տոնի». ուսումնարանի դռները փակվեցին: Բայց Սարուխանյանը նրանց հանձնարարեց դպրոց գալ: Ուսումնարանի տեսուչը, իմանալով այդ մասին, որոշեց ձեռնարկել բոլոր միջոցները, որպեսզի աշակերտների հանդիպումը Սարուխանյանի հետ տեղի չունենա:

[1] *Նույն տեղը, թ. 25—26:*

Բայց դեպքերն ընթացան պարոն տեսչի կամքին հակառակ: Մայիսի 15-ի առավոտյան դպրոց եկան ավարտական բաժանմունքի աշակերտները և Սարուխանյանի հետ մտան ուսումնարան: Տեսուչն աշակերտներին առաջարկում է թողնել ուսումնարանի շենքը: Սարուխանյանը վճռական տոնով պատասխանում է. **«Ո՛չ, նրանք չեն գնա, դուք չհամարձակվեք վռնդել նրանց այստեղից. սա ուսումնարան է և ոչ ձեր տունը. աշակերտներ, մի լսե՛ք այդ ժանդարմին, մի գնացեք այստեղից»**[2]:

Ուսումնարանի տեսուչը սպառնում է, որ այդ ամենի մասին կհաղորդի Երևանի նահանգի ուսումնարանների դիրեկտորին: Հովհաննես Սարուխանյանն այդ սպառնալիքին պատասխանում է. **«Հաղորդեցեք ոչ միայն դիրեկտորին, հոգաբարձությանը, ժանդարմերիային, այլև թեկուզ և հենց իրեն՝ Նիկոլայ երկրորդին»**[3]:

Բոլշևիկ Սարուխանյանը կայսեր թագադրության «մեծ տոնի» օրը իր 19 կողմնակիցների հետ ուսումնարանի պատերից դուրս, փողոցում հրապարակային բողոքի հաջող ցույց է կազմակերպում ի տես ամենքի: Այդ ցույցը նշանակալի երևույթ էր: Դա բոլշևիկների ղեկավարությամբ 1910 թվականից Ռուսաստանում սկսված բանվորական հեղափոխական շարժումների վերելքի առաջին արձագանքներից ու դրսևորումներից էր հայ իրականության մեջ: Այդ ցույցը ջերմությամբ ընդունվեց Իգդիրի դեմոկրատական խավերի, մասնավորապես սովորող երիտասարդության և առաջադեմ ուսուցչության կողմից:

Իգդիրի երկրագործական դպրոցի ուսուցիչները, ի նշան Հ. Սարուխանյանի հետ իրենց համերաշխության, հանդիսություն են կազմակերպում, որտեղ, ինչպես նշված է Երևան ուղարկված մատնագրերից մեկում, «Հ. Սարուխանյանը հեղափոխական ճառ է արտասանել և բռնակալությունը տապալելու կոչ է արել»[4]:

Հովհաննես Սարուխանյանի համարձակ ելույթները ոգևորիչ էին, բայց դրանք ծնեցին նաև նոր բարդություններ: Ցարական չինով-

[2] *Նույն տեղը, թ. 34:*

[3] *Նույն տեղը:*

[4] *ՀՍՍՀ ՊԿՊԱ, ֆ. 19, ց. 1, գ. 318, թ. 101—102:*

նիկները և Իգդիրի քաղաքային ուսումնարանի ռեակցիոն-միապետական հովերով տարված առանձին ուսուցիչներ տեսուչ Ուտուրգաուրու գլխավորությամբ նոր հալածանքներ սկսեցին նրա դեմ։ Խիստ կասկածանքի տակ առնվեցին նրա բոլոր գործերն ու գործակիցները։

Հովհաննես Սարուխանյանի հարցը շատ արագ լուծվեց։ Կովկասի ուսումնական օկրուգի պետի 1911 թ. հուլիսի 19-ի հրամանով սեպտեմբերի 1-ից ուսուցիչ Հովհաննես Սարուխանյանին «տեղափոխում են» Կաղզվանի քաղաքային բարձրագույն տարրական ուսումնարան՝ որպես ռուսաց լեզվի և պատմության դասատու։ Այսպիսով, նա հեռացվեց Երևանի նահանգի ուսումնարանների վարչության սահմաններից։

Հովհաննես Սարուխանյանն ուսուցչի պաշտոնով Կաղզվանում աշխատեց չորս տարի։ Մանկավարժական գործունեության հենց սկզբից նա կապ է ստեղծում տեղի ընդհատակյա մարքսիստական խմբակի գործիչների՝ Արսեն Մուսայելյանի, Լևոն Ղազարյանի և մյուսների հետ։ Նրանք համատեղ միջոցներ են ձեռնարկում խմբակի աշխատանքներն աշխուժացնելու համար. սիստեմատիկ են դարձնում անլեգալ, խմորատիպ «Հոունգք» թերթի հրատարակումը։ Հովհաննես Սարուխանյանի նախաձեռնությամբ Կաղզվանի քաղաքային ուսումնարանի բարձր դասարանների սովորողներից ստեղծվում է մարքսիստական առանձին խմբակ և հիմնադրվում այդ խմբակի օրգան՝ «Զանգակ» ձեռագիր թերթը[1]։

Հեղափոխական աշխատանքի երկար տարիների փորձ ունեցող և գաղափարական խոր գիտելիքների տեր Հովհաննես Սարուխանյանը Կաղզվանում շուտով ընդհանուր ճանաչում է գտնում։ Քաղաքային ուսումնարանի աշակերտները ևս ջերմորեն մտերմանում են իրենց նոր ուսուցչին, բարեկամանում նրա հետ։ Դրա ամենափայլուն ապացույցը եղավ այն, որ կաղզվանցիները 1911 թ. հոկտեմբերին նրան միաձայն ընտրեցին ցարական պետական IV դումայի դեպուտատի ընտրող՝ լիազոր։ Դա բանվոր դասակարգի ու նրա ավանգարդի՝ բոլշևիկների կուսակցության համար, այն ժամանակվա դժվարին իրադրության պայմաններում, Կաղզվանի երիտասարդ կոմունիստների և իրեն՝ Հովհաննես Սարուխանյանի ընտրական պայքարում տարած վճռական հաղթանակն էր։ Կաղզվանում Հովհաննես Սարուխանյանի ունեցած հաջողությունները, մասնավորապես ընտրական պայքարում տարած հաղթանակն ավելի կատաղեցրին նրա հակառակորդներին, որոնք նոր դավեր լարեցին, նույնիսկ դատական գործ հարուցվեց նրա դեմ։ 1912 թ. հունիսին, դպրոցական արձակուրդների ժամանակ Հ. Սարուխանյանն ընտանիքով եկել էր Նոր Բայազետ՝ ծնողների մոտ։ Նրա երևալը այս քաղաքում բոլորովին էլ ցանկալի չէր տեղական իշխանություններին, և նրանք վաղուց միջոցներ էին փնտրում զրկելու նրան Նոր Բայազետի հետ ընդհանրապես կապ ունենալու հնարավորությունից։ Ոստիկանության ջանքերով դատարանը Հ. Սարուխանյանին դատապարտեց կալանքի։

Կարսի մարզի ժողովրդական ուսումնարանների տեսչի հրամանով Հովհաննես Սարուխանյանը 1915 թ. սեպտեմբերից տեղափոխվեց Կարս և նշանակվեց քաղաքային բարձրագույն տարրական չորսդասյա ուսումնարանի ուսուցիչ։ Ծուրջ մեկ տարի էր, ինչ սկսվել էր առաջին համաշխարհային պատերազմը։ Կովկասյան ռազմաճակատում ևս հոսում էր աշխատավոր ժողովրդի զավակների արյունը։

Բոլշևիկների կուսակցությունը դեռ պատերազմից շատ առաջ կանխատեսում էր վրա հասնող իմպերիալիստական պատերազմի անխուսափելիությունը և զգուշացնում ժողովուրդներին։ Այժմ սոցիալ-դեմոկրատիայի պարտքն է,— գրում էր Վ. Ի. Լենինը,— նախ և առաջ երևան հանել պատերազմի բուն նշանակությունը և անխնա մերկացնել այն սուտը, սոփեստությունները ու «հայրենասիրական» ֆրազները, որ տիրող դասակարգերը, կալվածատերերն ու բուրժուազիան տարածում են ի պաշտպանություն պատերազմի։ ...Ժամանակակից իմպերիալիստական պատերազմը քաղաքացիական պատերազմի վերածելը՝ պրոլետարական միակ ճիշտ լոզունգն է... (տե՛ս ԵԼԺ, հ. 26, էջ 17, 26)։ Անդրկովկասի բոլշևիկներն իրենց առաջնահերթ խնդիրն էին համարում մասսաներին հաղորդել առաջնորդի ցուցումները։ Հենց այդ մեծ առաջադրանքով էլ Կարս է ուղարկվում նաև բոլշևիկ Հովհաննես Սարուխանյանը։

Այն ժամանակ Կարսում, մասնավորապես զորամասերում, ընդհատակում գործում էին բոլշևիկներ Յա. Լավրենտը (Լ. Քարթվելիշվիլին), Ա. Միտելևը, Ս. Սակրյուկինը, Վ. Ղազանչյանը, Ա. Հովհաննիսյանը, Պ. Ցավրակովը, Վ. Տեր-Գրիգորյանը և ուրիշներ։ Հովհաննես Սարուխանյանը նրանց օգնությամբ կարգավորում է քաղաքի ընդհատակյա սոցիալ-դեմոկրատական կազմակերպության աշխատանքը, գլխավորում բնակչության լայն շրջաններում կուսակցության լոզունգների պրոպագանդան.

Այստեղ էլ շուտով ուսուցիչ Հովհաննես Սարուխանյանն արժանանում է աշակերտների, նրանց ծնողների ու շրջապատի հարգանքին, շահում նրանց վստահությունը։ Դրա ամենափայլուն վկայությունը եղավ այն, որ 1917 թ. փետրվարին, ցարական անարգ կարգերի տապալումից հետո, Կարսի բարձրագույն տարրական ուսումնարանի ծնողական ժողովը և մանկավարժական խորհուրդը միաձայն որոշում են՝ պահանջել իրենց ուսումնարանի տեսուչ նշանակել Հովհաննես Սարուխանյանին, որը և կատարվում է։

Ցարական ինքնակալության տապալումից հետո ինչպես երկրի մյուս մասերում, նույնպես և Կարսում սոցիալ-դեմոկրատական կազմակերպությունը լեգալ գործելու հնարավորություն է ստանում։ Հովհաննես Սարուխանյանն այդ կազմակերպության ղեկավարն էր։ Նա, ղեկավարվելով Ռուսաստանի սոցիալ-դեմոկրատական բանվորական կուսակցության (բոլշևիկների) կովկասյան երկրային նորաստեղծ կոմիտեի ցուցումներով, բոլշևիկյան մյուս գործիչների հետ միասին տարանջատվում են մենշևիկներից և 1917 թվականի հոկտեմբերի 10-ից ստեղծում Կարսի բոլշևիկյան ինքնուրույն կազմակերպությունը ու նախապատրաստում նրան գալիք մարտերի համար։

Կարսի աշխատավորներն ու զինվորները ջերմորեն ողջունեցին Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխության հաղթանակը։ Բայց հակահեղափոխական կուսակցությունների (մենշևիկների, դաշնակների, մուսավաթականների, էսէռների և ուրիշների) վարած կործանարար քաղաքականության հետևանքով երկրամասում ստեղծվեց բարդ իրավիճակ, որի պատճառով էլ սովետական կարգերի հաղթանակն այստեղ հետաձգվեց։ 1918 թ. ապրիլից, թուրքական զորքերի կողմից Կարսն օկուպացնելուց հետո, Հ. Սարուխանյանն աշխատանքը շարունակում է Երևանում և Թիֆլիսում։

Այս բոլոր տարիներին, որտեղ էլ աշխատել է Սարուխանյանը, երբեք կապերը չի խզել Նոր Բայազետից և Կարսի նահանգի ժողովրդական դպրոցների տեսուչ Ա. Օլթեցյանի միջնորդությամբ նա 1919 թվականի հոկտեմբերին տեղափոխվում է հայրենի քաղաք։ Այստեղ, Բատիկ Բատիկյանի հետ, նա գլխավորում է Սևանի ավազանի բոլշևիկների գործունեությունը, աշխատավորներին նախապատրաստում Հայաստանում իրականացնելու Հոկտեմբերի սկսած գործը։

1919 թվականի վերջերին Արմենկոմի անդամ Ղուկաս Ղուկասյանի օգնությամբ Նոր Բայազետում ձևավորվեց տեղի «Սպարտակ» երիտասարդական կոմունիստական կազմակերպությունը։ Տեղի ունեցավ բոլշևիկյան կազմակերպությունների առաջին կոնֆերանսը, որտեղ Հ. Սարուխանյանն ընտրվեց ՌԿ(բ)Կ Նոր Բայազետի գավառային կոմիտեի քարտուղար և Հայաստանի բոլշևիկյան կազմակերպությունների 1920 թ. հունվարի առաջին կոնֆերանսի պատգամավոր։

1920 թվականին կոմունիստները ձգտում են տապալել դաշնակցականների իշխանությունը և Հայաստանը դուրս բերել օրհասական վիճակից։ Արմենկոմի հանձնարարությամբ Նոր Բայազետի գավառում ապստամբության ղեկավարությունն ստանձնում է Հ. Սարուխանյանը։ Ապստամբները հռչակում են սովետական իշխանություն։ Ստեղծվում է գավառի ռազմահեղափոխական կոմիտե՝ Հ. Սարուխանյանի գլխավորությամբ։ Մայիսի 17-ին ապստամբները գրավում են Նոր Բայազետ քաղաքը։ Երկու օր անց ապստամբների և դեպի քաղաք շարժվող դաշնակցական զորամասերի միջև տեղի է ունենում վճռական ճակատամարտ։ Ուժերի անհավասարության պայմաններում հերոս ապստամբները պարտվում են։ Սկսվում է դաժան հաշվեհարդարը ապստամբության մասնակիցների հետ։ Փաշաքյանդ (այժմ Սարուխան) գյուղում Հ. Սարուխանյանին կալանավորում են դաշնակցական մաուզերիստները և ենթարկում աներևակայելի տառապանքների։

Սարուխանյանն իր վերջին խոսքում ասում է. «Ինձ գնդակահարելով կամ կախաղան բարձրացնելով դուք չեք գնդակահարի հեղափոխությունը։ Հայաստանը սովետական կդառնա, և դուք իմ թափած յուրաքանչյուր կաթիլ արյան համար հազարապատիկ կհատուցեք...

Ես հանգիստ եմ մեռնում, որովհետև բարեբեր սերմերը ցանված են և համոզված եմ, որ շուտով կծաղկի իմ Հայաստանը...»։

Ապստամբության պարտությունից հետո դաշնակցականները հաշվեհարդար տեսան, ինչպես Հայաստանի այլ վայրերի, այնպես էլ Նոր Բայազետի շրջանի կոմունիստների, աշխատավորների հետ։

Նոր հասարակարգի համար մղվող պայքարի առաջամարտիկները դժվարին մարտերում իրենց կյանքի գնով ուղի հարթեցին մեր առաջընթացի համար։

Փառք նրանց հիշատակին։

**Հ. Ն. ԽԱՉԱՏՐՅԱՆ**

[1] *Տե՛ս ՄԼԻ հայկական ֆիլիալի արխիվ, ֆ. 4063, ց. 12, գ. 2, 259, թ. 16—21։*

# ԶՈՐԱՊԵՏԸ



ՊԱՏԵՐԱԶՄՆ ԻՐ խելահեղ հորձանուտն էր առել ամբողջ աշխարհը, նրա անողոք բոցերում կործանվում էին բազում քաղաքներ ու գյուղեր: Աշխարհը բաժանելու և վերաբաժանելու մոլուցքով բռնված իրենց կառավարողների կամայականության զոհ էին դառնում զինվորի համազգեստ հագած բյուրավոր անմեղ մարդիկ: Այդ դժոխային իրադարձություններից տակավին հեռու էր Հակոբ Աթոյանը. տկարության պատճառով նա դեռ չէր զորակոչվել ցարական բանակ:

Իգդիրի ծխական դպրոցն ու երկդասյան երկրագործական ուսումնարանն ավարտած Հակոբին տեղացիները գրքասեր էին անվանում: Եվ իրավացի էին: Հաճախ, ընտանեկան հոգսերից ազատ ժամերին, գիրքը ձեռքն առած, քաշվում էր մի անկյուն կամ գնում առվակի ափը, նստում ծառի տակ ու կարդում, կարդում... Ավելի ուշ նա ավարտեց Երևանի երկամյա ուսուցչական դասընթացները: Երիտասարդ Հակոբին հետաքրքրում էր հայ ժողովրդի հերոսական անցյալին վերաբերող գրականությունը— վեպեր, բանաստեղծություններ... Կարդում էր նաև պատերազմի ընթացքը նկարագրող լրագրային նյութեր:

Մի անգամ, երբ Հակոբը սիրած գիրքը ձեռքին նստած էր գյուղի ծայրին գտնվող ծառի տակ, տեսավ դեպի Իգդիր շարժվող մարդկանց մի հոծ զանգված: Գիրքը թողած՝ նա ակնդետ հետևեց նրանց... Հայ գաղթականների քարավան էր այդ, որ Հայկական պարի հարավային լանջերից, Օրգոփի լեռնանցքով անցել էր հյուսիսային կողմը և շարունակում էր ճամփան դեպի Էջմիածին: Թուրք դահիճների յաթաղանից մազապուրծ կանայք, մանուկներ ու պատանիներ էին՝ քաղցած, ոտաբոբիկ, կիսամերկ և ուժասպառ: Տեղացիները հարազատի պես տեր կանգնեցին տարագիրներին, օթևան տվին: Մի խմբի էլ Հակոբը տարավ իրենց տուն: Այդ տարիներից մինչև իր կյանքի վերջը նա երբեք չկարողացավ մոռանալ ափսոսանքից արնելք չվող անտուն, անօթևան, իրենց ամեն ինչը ետևում թողած հայ տանջահար գաղթականների այդ քարավանը:

...Կովի դաշտից հասած վշտալի լուրերը հուզում էին Հակոբին: Ու մի օր նա ևս զորակոչվեց. ուսապարկը շալակն առավ և հասավ Ալեքսանդրապոլում տեղակայված 222-րդ հետևակային գունդը: 1916 թվականի կեսերին էր: Ընտելացավ զինվորական կյանքին, մերվեց համազորայինների հետ և շատ շուտով արժանացավ նրանց համակրանքին: Երբեք չթողեց գիրքը. պարապմունքներից ազատ ժամերին քաշվում էր մի անկյուն, կարդում ձեռքն ընկած գրքերը կամ լրագրերը:

Անցել էին ամիսներ: Մի կիրակի օր, երբ Հակոբը ազատ էր ու դուրս էր եկել քաղաք, փողոցում հանկարծ տեսավ Իգդիրի իր ուսուցչին՝ Բագրատ Ղարիբջանյանին, մեկի հետ զրուցելիս: Հաղթահարելով ամաչկոտությունը և անհարմարության զգացումը՝ մոտեցավ նրան,

— Բարև Ձեզ...

— Օ՜, Հակոբ, այդ երբվանի՞ց ես զինվոր դարձել:

— Արդեն վեց-յոթ ամիս է:

— Ո՞ր զորամասում ես:

Պատասխանն ստանալուց հետո Ղարիբջանյանը ներկայացրեց զրուցակցին.

— Ընկեր Արվելաձեն է: Եթե ձեր զորամասում լինի, մոտեցիր նրան և ազատ խոսիր հետը:

Այդ օրվանից, ինչպես հետագայում իր հուշերում գրում է Աթոյանը, սերտ կապ հաստատվեց նախկին ուսուցչի և աշակերտի միջև: Քաղաքի բոլշևիկները հաճախ իրենց համակրող Հ. Աթոյանի և ուրիշների միջոցով զինվորների շրջանում տարածում էին «Кавказский рабочий» և «Պայքար» թերթերը: Շուտով զինվորները նրան ընտրեցին վաշտային կոմիտեի կազմում:

Ամիսներ անց, զորամասի հրամանատարությունը Վլադիկավկազի պարուչիկների դպրոցը սովորելու ուղարկեց Հ. Աթոյանին, հույս ունենալով, որ ապագայում նա լավ սպա կդառնա:

Դպրոցում պարապմունքներն անցնում էին լարված: Բայց կուրսանտ Աթոյանը ժամանակ էր գտնում ո՛չ միայն ընթերցանության համար, այլև, կապ հաստատելով դպրոցում կիսալեգալ գործող բոլշևիկների հետ, սկսեց ակտիվ մասնակցել անձնակազմի շրջանում տարվող ագիտացիոն աշխատանքներին: Այստեղ նա ոդեգրվեց լենինյան կուսակցությանը, որին հավատարիմ մնաց մինչև կյանքի վերջը: Դպրոցի ուսանողներն ընտրեցին նրան զորամասի կոմիտեի անդամ:

Հրամանատարական դպրոցն ավարտելուց հետո պորուչիկ Հ. Աթոյանը նշանակվեց զորամասերից մեկում դասակապետ: Բայց մինչև գունդ գնալը կարճատև արձակուրդով մեկնեց ծննդավայր, հարազատների մոտ: Ցրտաշունչ ձմեռ էր, և երկաթուղու անկանոն աշխատանքի հետևանքով երիտասարդ սպան Իգդիր հասավ մեծ դժվարությամբ: Կույր հայրը հիվանդ էր: Որդու այցը խիստ հուզել էր նրան. շոշափում էր համազգեստը, ուսադիրները, տարբերանշանները, տեղեկանում աշխարհի անցուդարձին:

ԱՐՁԱԿՈՒՐԴԸ ԴԵՌ ՉԷՐ ԼՐԱՑԵԼ, երբ տեղի ունեցավ աշխարհացունց իրադարձությունը՝ Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխությունը: Հայաստանում ստեղծվեցին ազգային միավորումներ: Անիմաստ էր այլևս նշանակում ստացած գունդ գնալը: Սպա Աթոյանը դասակապետ նշանակվեց հայկական նորաստեղծ զորամասերից մեկում:

Տասնութ թվականի սկզբներին էր: Հայկական բարձրավանդակը ծածկված էր սպիտակ սավանով: Երկիրը ներխուժած թուրքական հրոսակախմբերը ասպատակում էին Հայաստանը և Արփաչայի ձախ ափով ու Արագածի հարավային փեշերով շարժվում դեպի Երևան: Ռոխն արդեն գրավել էր Ղարաքուռուն և Արաքս կայարանները, Սարդարապատն ու Ղամշլուն, մոտեցել Էջմիածնին: Թուրք դահիճներն իրենց գրաված վայրերում սրի էին քաշում բնակչությանը՝ առանց սեռի ու տարիքի խտրության: Նրանց նպատակն էր՝ բնաջնջել հայ ժողովրդին, մոխրակույտերի վերածել հայկական շեները:

Թշնամու գերակշռող ուժերի ճնշմամբ, Արաքսի ձախ ափը՝ Մարգարա գյուղը հասավ նաև այն զորամասը, ուր դասակապետ էր Հ. Աթոյանը:

Հայ ժողովրդի համար այդ օրհասական պահին նրա հայրենանվեր զավակները ոտքի ելան սրբազան պատերազմի: Թուրքական բանդաների վրա գրոհողների հետ էր Հ. Աթոյանի դասակը, որը հարձակվում էր Արաքսի ձախ ափով դեպի Ջանֆիդա գյուղը: Հրամանատարը միշտ զինվորների կողքին էր, ոգևորում նրանց.

— Եթե վիճակված է մեզ նահատակվել, եկեք զենքը ձեռքներիս զոհվենք մարտի դաշտում, բայց երբեք ստրուկ չլինենք թուրք հրեշներին:

Թշնամու արձակած գնդակների ու արկերի տարափը չէր սարսափեցնում հայ դյուցազուններին: Մահն աչքի առաջ ունենալով, նրանք գրոհում էին հակառակորդի վրա՝ հաղթանակի հավատը սրտներում: Այդ անսասան հավատն էլ օգնեց նրանց՝ պարտության մատնելու թշնամուն:

Սարդարապատի ճակատամարտից հետո 3-րդ գունդը, որի կազմում էր Աթոյանը, փոխադրվեց նախ Էջմիածին, ապա Երևան և Ղամարլու:

Աթոյանը, ինչպես ինքն է հիշում մի առիթով, կապ հաստատելով Երևանի բոլշևիկների ու երիտասարդ հեղափոխականների հետ, շարունակում է ագիտացիոն գործունեությունը, տարածում լենինյան գաղափարները զինվորների շրջանում:

— Անդունդի եզրին կանգնած հայ ժող-

վըրդի փրկության միակ ելքը Սովետական Ռուսաստանի օգնական ձեռքն է, երկրում սովետական կարգերի հաստատումը...

Հայ ժողովրդի համար դաժան ու ողբերգական օրեր էին: Ամենուրեք սով էր, համաճարակ, հալածվում էին փրկության ճիշտ ելք ցույց տվողները... Վերջապես Հայաստանի վրա ևս ծածանվեց Լենինի փրկարար դրոշը: Երկրում հաստատվեց բանվորների ու գյուղացիների իշխանություն, ստեղծվեց հայկական կարմիր բանակ, որի 3-րդ գնդի կոմիսար նշանակվեց մեծ վստահություն և հեղինակություն վայելող երիտասարդ Հ. Աթոյանը: Քսանմեկ թվականի հունվարին նրան տրված մանդատում ասված է.

...Տրվում է սույնը ընկ. Հ. Աթոյանին առ այն, որ նա նշանակված է 3-րդ հետևակային գնդի ռազմկոմիսար և նրան տրվում են արտոնություններ՝ արտահերթ օգտվելու փոստ հեռագրատներից, երկաթուղային կայարաններից, գնացքով ուղևորվելու...

Սրտամոտ ու ջերմ էր կոմիսար Հ. Աթոյանի վերաբերմունքը իր ենթակաների՝ կարմիրբանակայինների նկատմամբ, որոնք ավելի ու ավելի էին վստահում նրան, համակվում նրա դավանած լենինյան գաղափարներով:

Հայ ժողովուրդը նոր էր կոմունիստական կուսակցության ղեկավարությամբ ձեռնամուխ եղել շենացնելու ավերակների վերածված երկիրը, երբ դաշնակցական պարագլուխները սկսեցին փետրվարյան ավանտյուրան: Ղամարլուի շրջանը դարձել էր քաղաքացիական կռիվների թատերաբեմ: Այստեղ հակառակորդի դեմ կռվում էր նաև հայկական կարմիր բանակի 3-րդ գունդը: Կոմիսար Աթոյանը մերթ կրակային դիրքերում էր՝ կարմիրբանակայինների շրջապատում, մերթ՝ գյուղերում, պարտիզանների մոտ, քաջալերում էր մարդկանց, կոչում կրծքով պաշտպանելու սովետական իշխանությունը: Կարմիր զորամասերը, կտրված լինելով կենտրոնից, հերոսաբար կռվում էին բախտախնդիր խմբապետների հրոսակների դեմ: Նրանց ոգևորում, մարտերի էր տանում անսասան հավատը վերջնական հաղթանակի նկատմամբ, այն գիտակցությունը, որ իրենք մենակ չեն, որ իրենց հետ են ողջ աշխատավորական Հայաստանը, սովետական երկրի եղբայր ժողովուրդները:

...Միտինգ էր: Գյուղամիջի խճուղում հավաքվել էին կարմիրբանակայիններ, գեղջուկներ: Ծածանվում էր գնդի դրոշը: Խոսել սկըսեց գնդի կոմիսարը— հաստ, մարտի կոչող:

— Իրենց հետևից տանելով մոլորվածներին՝ խռովարարները դավեր են նյութում ընդդեմ նորաստեղծ խորհուրդների: Մենք կրակե օղակում ենք: Բայց կճեղքենք մեզ շրջապատող շղթան, քանզի մեր ձեռքում է աշխատանքի խորհրդանիշ մուրճն ու մանգաղը, պողպատի պես ամուր է բանվորի ու գյուղացու դաշինքը: Մենք կհաղթենք, քանի որ մեզ հետ են ռուսական ազատարար կարմիր բանակի զորամասերը, մեզ հովանի է Լենինի ամենահաղթ դրոշը: Գրոհի՜ հանուն խորհուրդների...

Միտինգին մասնակցում էր և կրակոտ ելույթ ունեցավ Մեծ հոկտեմբերի փոթորիկներում մկրտված, լայնորեն ճանաչված հեղափոխության երգիչը՝ Եղիշե Չարենցը. Ղամարլուի ճակատում, զենքը ձեռքին նա կռվում էր ավանտյուրիստների դեմ: Մի քանի խոսք ասելուց հետո սկսեց արտասանել.

*...Ու կռվում են հիմա էլ, որ ետ չտան էլ երբեք*
*Իրավունքը բանվորի, որ անսասան է արդեն.*
*Բարձրացել են նրանց դեմ ունևորներն ահարեկ,*
*Բայց կռվում են նրանք դեռ— ու կհաղթե՛ն, կհաղթե՛ն։*
*Չե՛ն տա նրանք էլ իրենց ձեռքից զենքերը իրենց,*
*Չե՛ն տա թշվառ գյուղացու հողը նորից ավարի.*
*Ինքն իրեն տե՛ր կմնա էդ ժողովուրդը էդպես—*
*Մինչև երկիրը սառի, մինչև արևը մարի։*
*Չկա կյանքում էնպես ուժ, որ կարենա պայքարել*
*Աշխատավոր բանվորի էդ կուտակված ուժի դեմ։—*
*— Փա՛ռք բանակին նրանց կուռ, նրանց կամքին պողպատե,*
*Ժողովրդին, որ կյանքում իր բախտի տերն է արդեն։*

Եվ կարմիր զորամասերի ու հայ պարտիզանների «ուռա» միացավ թնդանոթների որոտին, գնդացիրների համազարկերին, լուսաբացին կարմիր սվիններով նրանք ելան թշնամու դեմ, կրնկակոխ հետապնդեցին նըրան մինչև Երևան: Խռովարարների դեմ տարած հաղթանակի ճամփին մահացու վիրավորվեց պոետի մանկության ընկերը՝ բրիգադի կոմիսար Լիպարիտ Մխչյանը: Քաջարի ընկերոջ կորստից ցնցված պոետը նրան նըվիրեց իր **Իմ ընկեր Լիպոն** բանաստեղծությունը: Նահատակվեցին շատ ռազմիկներ, նրանց հետ և գնդի հրամանատար Անդրեյ Ֆիլշինը:

Մի առիթով անդրադառնալով Ղամարլուի ճակատամարտին՝ Հ. Աթոյանը գրել է. ազատագրված գյուղերում ամենուրեք աշխատավորները բուռն խանդավառությամբ էին դիմավորում իրենց փրկարարներին և կարմիր կտավ կախում դռներին:



Դաշնակ ավանտյուրիստների դեմ մղված կռիվներում 3-րդ գնդի մարտիկների ցուցաբերած քաջագործությունների առթիվ հայկական կարմիր բանակի կոմիսար Ի. Սվիրիդովը Հ. Աթոյանին հղեց հետևյալ հեռագիրը. «...Փետրվարի 25-ից մինչև մարտի 1-ը տեվող կռիվներում 3-րդ հրաձգային գունդը ցուցաբերեց աներեր տոկունություն և հեղափոխական կոփվածություն: Նա միշտ հաղթանակներ տարավ թշնամու դեմ... Իմանշալուի (Մխչյանի) համար մղված կռվում, առանց ուրիշների օգնության, 3-րդ գունդը հաղթանակ տարավ հակահեղափոխականների դեմ: Բանակի հրամանատարությունը ձեզ, փառապանծ 3-րդ գնդին և նրա հրամանատար Բաղդասարյանին /Արմենակ/, նրա օգնական Գևորգյանին և բոլոր մարտիկներին առանձին-առանձին ջերմ ողջույն է հղում»:

ԵՐԵՎԱՆԻ ՎՐԱ ԿՐԿԻՆ փողփողաց ազատարար Հոկտեմբերի կարմիր դրոշը: Բայց կռիվը շարունակվում էր Վայոց ձորում: Կարմիր բանակի զորամասերը հետապնդում էին թշնամուն Արփա գետի միջին հոսանքի երկու կողմերում՝ ազատագրելով նորանոր գյուղեր: Այդ օրերի մասին իր օրագրում զինկոմ Աթոյանը նշել է.

...Գրավեցինք Մալիշկա գյուղը: Թշնամին խուճապահար նահանջում էր, չկարողանալով այլևս լուրջ դիմադրություն ցույց տալ:

Մալիշկան Դարալագյազի օազիսներից մեկն է, հարուստ բնությամբ, հանքային ջրերով, բուսականությամբ, մրգերով... Գյուղացիներից ոմանք փախել էին դաշնակների հետ... Առաջին օրերին փողոցներում քիչ մարդիկ էին երևում, մեզ դեռևս խեթ աչքով էին նայում: Միտինգներին գալիս էին միայն ծերեր, չքավոր գյուղացիներ: Բայց մի քանի օրից հետո միտինգներին խանդավառությամբ սկսեցին մասնակցել բոլոր գյուղացիները... Կարմիրբանակայինների օգնությամբ կառուցվեց գյուղի ջրաղացը, որն ուրախացրեց բընակիչներին... Գյուղացիք տարիներ շարունակ երազել են ճեղքել ժայռերը, առու բացել այգիները ոռոգելու համար: Օգնեցինք նրանց պայթուցիկ նյութերով, գործիքներով, մասամբ մարդկանցով, և նվագախմբի երաժշտության հնչյունների տակ սկսվեց գործը.. առուն պատրաստվեց, գյուղացիները գոհ մնացին մեր օգնությունից: Ամենուր դատողություններ էին լսվում հին և նոր կարգերի վերաբերյալ...

Դաշնակցության ղեկավարների մի մասը ճողոպրեց Սյունիք: Բայց այստեղ էլ նրանց ոտքի տակի հողն այրվում էր: Նժդեհն իր համախոհներով արյունալի դատաստան տեսնելով տեղի հեղափոխականների և նրանց համակիրների հետ, քսանմեկ թվականի ամռան սկզբներին հարձակվեց Վայոց ձորում տեղակայված կարմիր բանակի զորամասերի վրա: Քաղաքացիական կռիվները բորբոքվեցին լեռներում ու կիրճերում: Օտարերկրյա իմպերիալիստների կողմից հավաքագրված բանդաներն սպառնում էին Հայաստանում սովետական կարգերի գոյությանը:

Հայաստանի կոմունիստական կուսակցության կոչով կարմիր բանակի զորամասերը, աշխատավորական լայն զանգվածների աջակցությամբ, անցան վերջին ու վճռական գրոհի: Առաջ շարժվելով Արփայի հոսանքն ի վեր, կոտրելով հակառակորդի դիմադրությունը՝ կարմիր զորագնդերն անցան Կեչուտի լեռները: Նրանց առջև բացվեց Որոտանի սառնակունքների սարահարթը: Ծաղկափթիթ մարգագետինները ներկվում էին ազատության համար մարտնչողների արյունով: Խորհրդային Հայաստանի կառավարությունը քանիցս դիմեց հակառակորդին՝ առանց արյունահեղության զենքը վայր դնելու կոչով: Ապարդյուն: Եվ ահա մի կողմից հայկական կարմիր բանակի, մյուս կողմից Ա. Տոդորսկու գլխավորած զորագնդերը սլանում են դեպի Գորիս, Ղարաքիլիսա ու Գանձասար: Ամենուրեք կոմունիստները գրոհում էին առջևից, նրանց օգնում են տեղացիները: Գնդի ռազմիկների առջևից սլանում էր կոմիսար Աթոյանը: Նրա օրինակին հետևող ռազմիկներն արիաբար կռվում էին թշնամու դեմ: Նրանց ոգևորում էին գնդի ռազմկոմի մարտակոչերը:

— Ընկերնե՛ր, թշնամին ահաբեկված փախչում է, հետապնդե՛նք նրան, ապահովենք վերջնական հաղթանակը...

Հակառակորդը ջախջախվեց և դուրս շըպրտվեց երկրի սահմաններից: ՀԽՍՀ ժողկոմխորհի նախագահ և ռազմական գործերի ժողկոմ Ալ. Մյասնիկյանը, խոսելով Հայաստանում սովետական կարգերի հաստատման, հայ ժողովրդին կործանումից փրկելու համար քաջաբար կռված մարտիկների մասին, գըրում է. «...Զորամասերի կարմիր զինվորները կարողացան հեռավոր Կովկասի լեռներում ամրացնել ու ծածանել նրանց վստահված պրոլետարական հեղափոխության դրոշը: Կոմունիզմի պատմական ոսկե գրքում հաղթության մի էջ էլ ավելացավ, ուր մտցված են Երևանի զորամասի զինվորների փառավոր անունները...»:

Հայաստանում մղված քաղաքացիական կռիվներում ցուցաբերած արիության և անձ-

նական քաջության համար Հակոբ Թադևոսի Աթոյանը, Ալեքսանդր Իվանովիչ Տոդորսկին և շատ ուրիշներ պարգևատրվեցին ՀԽՍՀ կարմիր դրոշի շքանշանով:

Քաղաքացիական կռիվներն ավարտվեցին կարմիր բանակի հաղթանակով: Երկրում ծավալվեց խաղաղ, ստեղծագործ աշխատանքը: Բանվորն ու գյուղացին վայր դրին զենքը, ձեռքերն առան մուրճն ու մանգաղը:

Կոմունիստական կուսակցության ուշադրության կենտրոնում էր մնում սովետական իշխանության պաշտպանությունը օտար նվաճողներից ու ներքին թշնամիների մնացորդներից: Քաղաքացիական կռիվների բովով անցած, կուսակցական ու քաղաքական աշխատանքի մեծ փորձ ունեցող Հ. Աթոյանն ամբողջովին նվիրվեց սոցիալիստական հայրենիքի պաշտպանության սրբազան գործին: Հատուկ նշանակության զորամասի շտաբի պետն էր նա, ապա՝ հրամանատարը: Նրա ղեկավարությամբ էին կազմվում զորամասի մարտիկների ուսուցման, հակահեղափոխական թափթփուկների դեմ մղվող պայքարի օպերատիվ պլանները:

ԱՇՆԱՆԱՅԻՆ ԵՐԵԿՈ ԷՐ: Դուրս գալով շտաբից՝ Աթոյանը քայլում էր Աբովյան փողոցով ու հանկարծ պատահեց տակավին Իգդիրից ծանոթ օրիորդ Ասյային (Աստղիկին)՝ եղբոր հետ: Ասյան առաջին անգամ էր Հակոբին տեսնում զորականի համազգեստով, որ այնպես սազում էր նրան... Սիրեցին իրար, սկսեցին աշխատել միասին ու շուտով ամուսնացան՝ առանց նշանդրեքի, հարսանիքի և օժիտի, իսկ սերը, սերը նրանց ընտանիքում թևածել է միշտ:

Երկրում սոցիալիստական շինարարության ծավալման զուգընթաց, կոմունիստական կուսակցությունը մեծ ուշադրություն էր նվիրում հայրենիքի պաշտպանության ամրապնդմանը, այդ բնագավառը վստահելով անձնվեր, հմուտ հրամանատարների ու փորձված, լենինյան գաղափարներին հավատարիմ քաղաքական աշխատողների: Հ. Աթոյանը նշանակվեց հայկական լեռնահրաձգային դիվիզիայի 3-րդ գնդի հրամանատար և կոմիսար: Նա խորապես գիտակցում էր, որ անհրաժեշտ է մարտերում ձեռք բերած փորձառությունը հարստացնել ժամանակակից ռազմական գիտության տեսությամբ, որը խարսխվում էր հայրենիքի պաշտպանության, բանակի ու պատերազմի վերաբերյալ մարքս-լենինյան դրույթների վրա:

Ուսումնառության նրա փափագն իրականացավ: Վերադաս հրամանատարությունը հարգեց Աթոյանի խնդրանքը և ուղարկեց Մոսկվա՝ սովորելու Ֆրունզեի անվան ռազմական ակադեմիայում: Շատ շուտով նա աչքի ընկավ իր ջանասիրությամբ, հետաքրքրասիրությամբ և ուսումնատենչությամբ: Նրան սիրում, հարգում էին ինչպես իր հետ սովորող ընկերները, նույնպես և դասախոսական կազմը:

Կյանքի փորձը հարստացնելով տեսությամբ, 1928 թվականին Հ. Աթոյանը վերադարձավ իր նախկին զորամիավորումը, նշանակվեց գնդի հրամանատար և ռազմկոմ: Զորամիավորումում նա առաջիններից մեկն էր, որ ուներ զինվորական բարձրագույն կրթություն և իր ողջ գիտելիքները գործադրեց զորամասի մարտունակությունը բարձրացնելու, ռազմիկների քաղաքական պատրաստությունը լավ հիմքերի վրա դնելու համար: Համեստ էր Աթոյանը և վայելում էր անձնակազմի սերն ու համակրանքը, արժանանում վերադաս հրամանատարների քաջալերանքին: 1930 թվականին նրան վստահվում է հայկական հրաձգային դիվիզիայի շտաբի պետի պաշտոնը, իսկ մեկ տարի չանցած նշանակվում դիվիզիայի հրամանատար-կոմիսար:

ՆՈՐ ՆՇԱՆԱԿՈՒՄՆ ԱՎԵԼԻ բարձրացրեց հայրենիքի հանդեպ Հ. Աթոյանի պատասխանատվության զգացումը: Նա գիտակցում էր, որ ժամանակակից առաջնակարգ տեխնիկայով զինված զորքերի ուսուցումը, դրանց մարտունակության բարձրացումը անդուլ աշխատանք է պահանջում: Տակտիկական պարապմունքների օրերին դիվիզիայի պետը լինում էր ստորաբաժանումներում, ռազմիկների կողքին, հաճախ զինվորի ձեռքից վերցնում էր թիակը, ցույց տալիս, թե ինչպես պետք է անխոցելի դիրք պատրաստել և լավ քողարկվել: Զորավարժության ժամանակ Հ. Աթոյանն ուշադիր հետևում էր զինվորների գործողություններին, հիանում նրանց ճկունությամբ ու տոկունությամբ, ոգևորում, խրախուսում:

Դիվիզիայի ռազմիկները սովորում էին անվրեպ կրակել, լավ յուրացնել մասնագիտական առարկաները, ձեռք էին բերում քաղաքական խոր գիտելիքներ: Եվ միշտ էլ տեսչական ստուգումների ժամանակ զորամիավորման ողջ անձնակազմն արժանանում էր բարձր գնահատականի:

Ահա թե ինչ է գրել Կովկասյան կարմրադրոշ բանակի հրամանատար Լևանդովսկին Աթոյանին հղած ողջույնի հեռագրում. «...Սրտանց շնորհավորում եմ դիվիզիայի մարտական պատրաստության մի շարք փայլուն արդյունքների առթիվ: Այն վկայում է, որ հայկական դիվիզիայի բոլշևիկները, կոմերիտականներն ու հարվածայինները կարող են լարված պայքարով նվաճել սքանչելի բարձունքներ...»:

Սոցիալիստական ինդուստրիայի արագ առաջընթացի շնորհիվ կարմիր բանակը հագեցվում էր նորագույն հզոր զենքերով: Բարդանում էին ժամանակակից մարտեր վարելու ձևերն ու եղանակները: Այդ առիթով Հ. Աթոյանը հաճախ էր հանդես գալիս պարբերական մամուլում, կուսակցական ու կոմերիտական ժողովներում, կարմիրբանակայինների միտինգներում, զրուցում զինվորների հետ, ամեն անգամ շեշտում, թե որքան անհրաժեշտ է արդի պայմաններում ժամանակակից տեխնիկային խորապես տիրապետելը:

— Մենք պետք է հմտանանք, կատարելագործվենք իբրև ռազմիկներ,— ասում էր դիվիզիայի հրամանատարը,— լինենք նախաձեռնող, հնարամիտ, տիրապետենք նորագույն ռազմական տեխնիկային, որպեսզի պատվով կատարենք հայրենիքի պաշտպանության մեզ վստահված գործը:

Հ. Աթոյանը ԽՍՀՄ Կենտգործկոմի, ՀԿ(բ)Կ Կենտկոմի և ՀԽՍՀ Կենտգործկոմի անդամ էր, հաճախ հանդես էր գալիս բանվորական կոլեկտիվներում, գյուղացիների ժողովներում՝ պատմում զորամիավորման գործերի մասին: Ակտիվ հասարակական աշխատող էր և Աթոյանի կինը՝ Ասյան. քաղաքական-մասսայական լայն գործունեություն էր ծավալում հրամանատարների կանանց շրջանում, անձնական օրինակով ցույց տալիս, թե որքան մեծ է կնոջ դերը ընտանիքի ամրության, երեխաների դաստիարակության, զինվոր ամուսինների ոգին կորովի պահելու գործում: Հայրենանվիրության ոգով էր դաստիարակում և իր երկու զավակներին՝ Մուրճին ու Լիլիային:

ՀԱՅԱՍՏԱՆԻ ԱՇԽԱՏԱՎՈՐՆԵՐԸ սրտանց ուրախանում էին դիվիզիայի հաջողություններով: Տասնհինգամյա դիվիզիան 1935 թ. պարգևատրվեց Կարմիր դրոշի շքանշանով և կոչվեց Կ. Ե. Վորոշիլովի անունով: Զորամասերում ցնծություն էր: Ռազմիկների տոնը մեծ շուքով նշում էին նաև Հայաստանի աշխատավորները: ՀԿ(բ)Կ Կենտկոմի առաջին քարտուղար Ա. Խանջյանը, ՀԽՍՀ ժողկոմխորհի նախագահ Ա. Գուլոյանը, ողջունելով զորամիավորման անձնակազմին, նշում են. «Ավելի հաստատակամորեն տիրապետեք ռազմական նոր տեխնիկային, է՛լ ավելի կատարելագործեք ձեր մարտական-քաղաքական գիտելիքները: Յուրաքանչյուր մարտիկի հոգում ավելի խոր պատվաստեք անձնվիրության զգացումը մեր սոցիալիստական հայրենիքի նկատմամբ... եղեք պատրաստ ամեն պահի հերոսաբար և անձնազոհ պաշտպանելու մեր գեղեցիկ հայրենիքը...»:

Շնորհավորանքներ էին ստացվում գործարանների կոլեկտիվներից, կոլտնտեսություններից, որոնք սերտորեն կապված էին ստորաբաժանումների ու զորամասերի հետ: Կուսակցական մարմինների, վերադաս հրամանատարության, աշխատավորական կոլեկտիվների ողջույնները, բարի ցանկությունները քաջալերում էին կարմիրբանակայիններին ու հրամանատարներին մարտական ու քաղաքական ուսման բնագավառում հասնելու նորանոր բարձունքների:

1936 թվականի մայիսի վերջին ԽՍՀՄ Կենտգործկոմի նախագահ Մ. Ի. Կալինինն ընդունեց Կ. Ե. Վորոշիլովի անվան 76-րդ հայկական դիվիզիայի պատվիրակությանը՝ հրամանատար Հ. Աթոյանի գլխավորությամբ: Ներկա էին ԽՍՀՄ պաշտպանության ժողկոմ Կ. Ե. Վորոշիլովը, ԲԳԿԲ քաղաքական վարչության պետի առաջին տեղակալ Հայկ Հովսեփյանը: Հայաստանն ուներ իր հայկական դիվիզիան, որի պատվիրակությունն այդպիսի մեծ պատվի էր արժանանում մեր Միության մայրաքաղաք Մոսկվայում: Հուզված էին պատվիրակության անդամները, հուզված էին և հյուրընկալողները: Համամիութենական ավագը շնորհավորական խոսք ասելուց հետո Կարմիր աստղի շքանշան հանձնեց Հ. Աթոյանին, դիվիզիայի քաղբաժնի պետ Խորեն Աբրահամյանին և ուրիշների, Պատվո նշան շքանշան՝ Նվեր Սաֆարյանին, Վահան Վարդանյանին, Սանասար Ոպանյանին, Երվանդ Մելքոնյանին և ուրիշների:

Այդ նշանավոր օրվանից մի քանի տարի հետո, երբ սկսվեց Հայրենական մեծ պատերազմը, դիվիզիան արդեն զրկված էր իր տաղանդավոր զորապետից: Բայց նրա ղեկավարած ու դաստիարակած զորամիավորման մարտիկները փայլուն հաղթանակներ տարան արյունարբու թշնամու դեմ: Զորամիավորումն արժանացավ գվարդիականի կոչման, պարգևատրվեց մի քանի շքանշաններով:

Ֆաշիստական զավթիչների դեմ մղվող դաժան մարտերում միլիոնների հետ հերոսաբար կռվում էր և Մուրճ Աթոյանը: Սրբազան հայրենիքի նկատմամբ իր պարտքը կատարելիս նրան ոգևորում, թև էր տալիս սրտաբուխ մի մղում. պետք էր ապացուցել, որ հայրենանվեր հոր արժանավոր զավակն է ինքը: Նա սովորել էր ռազմական դպրոցում, այն ավարտելուց հետո նշանակվել դասակապետ: Կոմիսար հայրը մատնչել էր հանուն սովետական իշխանության հաստատման, լեյտենանտ որդին կռվում էր հանուն սովետական կարգերի պաշտպանության: Մ. Աթոյանի դասակում կային մեր երկրի մի քանի ազգությունների զավակներ: Տարբեր էր նրանց լեզուն, բայց նույնն էր դավանանքը— հավատարիմ մնալ սովետական ժողովուրդների անխախտ դաշինքին, գլխովին ջախջախել ֆաշիստական

զավթիչներին: Այդ համոզմունքով, կրակի ու բոցերի միջով Դոնի ոլորաններից եկել, հասել էին Դնեպրի ափերը, մոտեցել Կիևին: Ուկրաինան նրանք համարում էին իրենց հայրենիքը, ֆաշիստական ստրկությունից ուկրաինական ժողովրդի ազատագրումը՝ իրենց սրբազան պարտքը:

Երեկո էր: Արևն արդեն մայր էր մտել: Կռիվը գրեթե դադարել էր: Դասակապետ Մ. Աթոյանն իր զինվորների հետ կարճատև դադարի պահին հանգստանում էր գրաված դիրքերում: Կատակում էին, սրամտում, պատմում... Զինվորներից մեկը հրամանատարին խնդրեց մի բան նվագել: Աթոյանը սայլակից վերցրեց կիթառը: Սկսեց մեղմ նըվագել այն ժամանակ զինվորների ամենասիրած երգերից մեկը՝ «Մութ գիշերը»... Սպասումը, հավատը քո՝ թշնամու գնդակից ինձ կփրկեն...

Մութ գիշեր էր արդեն. զինվորների մի մասը, ուսապարկերը գլխների տակ, հրացանները գրկած, ննջում էր, իսկ մի մասն էլ դիրքերն էր հսկում: Լեյտենանտը տարված էր խոհերով: Ով գիտե, գուցե վերհիշում էր հոր պատմածները քաղաքացիական կռիվների օրերից, թե ինչպես են ռուս, ուկրաինացի, բելոռուս կարմիրբանակայինները կռվել հայկական լեռնաշխարհում, օգնել հայ ժողովրդի փրկության գործին...

Լուսաբացին կրկին որոտացին հրանոթները, վերսկսվեց կռիվը: Ծատ ստորաբաժանումների հետ լեյտենանտ Աթոյանը ևս իր դասակով անցավ գրոհի... Ռումբերի, արկերի պայթյուններին, գնդացիրների համազարկերին միախառնվեց զինվորների որոտաձայն «ուռա՜ն»: Երկինք-գետին ցնցող դղրդյունի տակ դեպի Կիև էին գրոհում սովետական դյուցազունները...

Անցան ամիսներ, Այսան որդուց նամակ չուներ: Մի օր էլ փոստատարի բերած նամակը եռանկյունի չէր, այլ սովորական ծրարով: Այսան անհամբեր բացեց ծրարը և սարսռաց, աչքերը մթնեցին, ասես աշխարհը փլվեց գլխին... Ծանուցվում էր. Ձեր որդի Մուրճ Հակոբի Աթոյանը հերոսաբար զոհվեց ֆաշիստական զավթիչների դեմ մղված կըռվում՝ հանուն սոցիալիստական հայրենիքի անկախության, սովետական ժողովրդի ազատության... Նրա աճյունը թաղված է Զապորոժիեի մարզի Վայգաու գյուղում:

Անցել են տասնյակ տարիներ: Հակոբ Աթոյանի կյանքին ու գործունեությանը վերաբերող բազմաթիվ նյութերին ավելացել է ևս մեկը՝ նրան հետմահու գեներալ-մայորի կոչում շնորհելու վերաբերյալ ՍՍՀՄ կառավարության որոշումը: Այդ ամենին մայրը միացրել է նաև հայրենիքի համար զոհված որդու նամակները, նրան վերաբերող այլ նյութեր: Ընտանեկան մատյանում ամփոփված մասունքները հոր և որդու մեծ հայրենասիրությունը վավերացնող մի-մի փաստաթուղթ են:

**ՍԻՄՈՆ ՆԱԼԲԱՆԴՅԱՆ**
**ՀՍՍՀ վաստակավոր ժուռնալիստ,**
**պաշտոնաթող փոխգնդապետ**



# ՈՒՇԱԳՐԱՎ ԺՈՂՈՎԱԾՈՒ

*ԱԶԳԱՅԻՆ ՀԱՐՑԻ լուծման ասպարեզում սովետական բազմազգ պետության փորձի միջազգային նշանակության մասին բազմիցս նշել են ամենատարբեր երկրների առաջադեմ քաղաքական գործիչները: Այն վիթխարի կարևորություն ունի հատկապես զարգացող երկրներում սոցիալ-տնտեսական վերափոխումների, հասարակական առաջընթացի հաջող իրականացման համար: Այս առումով ուշագրավ է ՀՍՍՀ ԳԱ հրատարակած* Ազգային հարցի լուծման սովետական փորձը և նրա նշանակությունը Աֆրիկայի և Ասիայի ժողովուրդների համար *ժողովածուն*, որի պատասխանատու խմբագիրն է ՍՍՀՄ ԳԱ Աֆրիկայի ինստիտուտի դիրեկտոր, ՍՍՀՄ ԳԱ թղթակից-անդամ Ան. Ա. Գրոմիկոն: Գրքի առաջաբանը գրել է Հայաստանի ԳԱ պրեզիդենտ, ակադեմիկոս Վիկտոր Համբարձումյանը:*

*Ժողովածուն ամփոփում է գիտական հոդվածներ՝ նվիրված ազգային հարցին Ասիայի և Աֆրիկայի երկրներում, ազգային հարցի լուծմանը Սովետական Միությունում, ազգային հարցի լուծման սովետական փորձի միջազգային նշանակությանը: Հոդվածներում քննարկվում են այն կարևոր դրույթները, որոնք արծարծվեցին 1980 թ. հոկտեմբերին Երևանում կայացած «Ազգային հարցի լուծումը ՍՍՀՄ-ում և նրա նշանակությունը Աֆրիկայի ու Ասիայի զարգացող երկըրների համար» համամիութենական սիմպոզիումի ժամանակ: Նրա աշխատանքներին մասնակցում էին նաև Հարավային Աֆրիկայի աֆրիկյան ազգային կոնգրեսի, Բենինի ազգային հեղափոխության կուսակցության, խաղաղության և համերաշխության համահնդկական կազմակերպության, ամբողջ աշխարհում խաղաղության համերաշխության զամբիական կոմիտեի պատվիրակությունները:*

*Սովետական Հայաստանի պատմական նվաճումներին է նվիրված ՀՍՍՀ ԳԱ ակադեմիկոս Գ. Բ. Ղարիբջանյանի «Հայկական ՍՍՀ-ն սովետական ժողովուրդների եղբայրական ընտանիքում» հոդվածը: Հեղինակը փաստական հարուստ օրինակներով ներկայացնում է այն պատմական ժամանակահատվածները, որոնք կարևոր և բախտորոշ եղան հազարամյակներ տեսած, բազմաչարչար հայ ժողովրդի կյանքում: «Հայ ժողովուրդը,— գրում է հեղինակը,— գիտե, որ սովետական ազգերի եղբայրական համագործակցությունը, ազգային մշակույթների փոխհարըստացումը, ողջ երկրի համաժողովրդական, համապետական հարցերի հաջող լուծումը իր հետագա ծաղկման գրավականն է» (էջ 140):*

*Պրոֆեսոր Մ. Ի. Կուլիչենկոյի «Հոկտեմբերյան հեղափոխության հաղթանակը և ՍՍՀՄ-ում ազգային հարցի լուծումը» հոդվածում առանձին հանրապետությունների օրինակներով ցույց են տրված անցյալից եկող խոչընդոտների հաղթահարումը և նորի հաստատումը: Ուշագրավ են Ուզբեկական ՍՍՀ ԳԱ թղթակից անդամ Խ. Տ. Թուրսունովի «Լենինյան ազգային քաղաքականության հաղթանակը Ուզբեկստանում» և Ուզբեկստանի ԳԱ պատմության ինստիտուտի գիտաշխատող Զ. Խ. Արիֆխանովայի «Միջին Ասիայի ժողովուրդների մշակութային հետամնացության հաղթահարման փորձի նշանակությունը Ասիայի և Աֆրիկայի զարգացող երկրների համար» հոդվածները:*

*Պատմական գիտությունների դոկտոր Ռ. Ն. Իսմանգիլովան «Ազգային հարցը Աֆրիկայում» հոդվածում նշում է, որ չնայած Աֆրիկայում դեռևս չձևավորված ազգերի առկայությանը, այնուամենայնիվ, այստեղ ևս դրսևորվում են ազգային հարցին հատուկ բոլոր ձևերն ու երևույթները: Հեղինակը մարքս-լենինյան ուսմունքի դիրքերից իր քննադատական խոսքն է ուղղում այն բուրժուական տեսաբաններին, ովքեր, նկատի ունենալով ազգային հարցի մարքսիստական տեսության նկատմամբ ողջ աշխարհում աճող հետաքրքրությունը, փորձում են աղավաղել մարքսիզմը:*

*«Ազգային հարցի լուծման սովետական փորձի նշանակությունը զարգացող երկրների համար» ընդարձակ հոդվածով հանդես է եկել պրոֆեսոր Ան. Ա. Գրոմիկոն: Հոդվածում նշված է, որ «Հասարակական զարգացման արդի ժամանակահատվածում, երբ ամբողջ աշխարհում սո-*

* «Советский опыт решения национального вопроса и его значение для народов Африки и Азии», Ереван, 1982 г., Изд. АН Арм. ССР, 299 стр. Отв. редактор Ан. А. Громыко.

*ցիալական վերափոխումների ընթացքն՝ զգալի արագացել է, ազգային հարցը սոցիալիզմի և կապիտալիզմի միջև գաղափարախոսական անհաշտ պայքարի ամենահրատապ հարցերից մեկն է» (էջ 209)։ Հեղինակը մեկ անգամ ևս անդրադառնում է մարքսիզմ-լենինիզմի հույժ կարևոր մեթոդաբանական սկզբունքին, այն է՝ կոնկրետ պատմական մոտեցում քննարկվող ազգային հարցին և ազգային շարժումներին, որոնք միաժամանակ ընդգրկում են նաև միջազգային դրության, հեղափոխության տվյալ շրջանի, պատմական ժամանակահատվածի հարցերը։*

*Առանձին հոդվածներով հանդես են եկել Հարավային Աֆրիկայի աֆրիկյան ազգային կոնգրեսի ազգային գործկոմի անդամ Է. Դիլինգան («Ազգային հարցը Հարավային Աֆրիկայում և սովետական փորձի նշանակությունը», Նյու-Դելիի Ջավահարլալ Նեռուի անվան համալսարանի պրոֆեսոր Կ. Սեշադրին («Սովետական փորձը և Հնդկաստանի ժողովուրդները»)։*

*Ժողովածուն ամփոփում է նաև Հայաստանի արևելագետների հոդվածները՝ պատմական գիտությունների դոկտոր Ծ. Խ. Մհոյի «Ազգային ավտոնոմիան և զարգացող երկրներում նրա կենսագործման հնարավորությունները», պատմական գիտությունների թեկնածու Կ. Խ. Սամվելյանի «Համերաշխությունը և ինտերնացիոնալիզմը արաբական երկրների բանվորական շարժումներում»։ Պատմական գիտությունների դոկտոր, պրոֆեսոր Ն. Հ. Հովհաննիսյանի «Լիբանանյան կոնֆլիկտը և Լիբանանի հայկական համայնքը» հոդվածում օգտագործված են հետաքրքիր աղբյուրներ, որոնք վկայում են հայկական համայնքի միավորող դերը Լիբանանի ազգային ու քաղաքական կյանքում և միաժամանակ այդ համայնքի կայունացնող դերը երկրի տնտեսական և հասարակական հարաբերություններում։*

Ազգային հարցի լուծման սովետական փորձը և նրա նշանակությունը Աֆրիկայի և Ասիայի ժողովուրդների համար *ժողովածուն գրված է գիտական բարձր մակարդակով։ Ամփոփելով ժողովածուն, Ան. Ա. Գրոմիկոն հանգամանորեն ներկայացնում է այն հիմնական գծերն ու ուղղությունները, որոնք կարևոր են ու որոշիչ ներկայացված հարցի գիտական ու տեսական, ինչպես նաև գործնական տեսանկյունից։*

*Անդրադառնալով սովետական փորձի միջազգային նշանակությանը, պրոֆ. Ան. Ա. Գրոմիկոն գրում է. «Անկասկած, այդ փորձը ավելի լայնորեն կօգտագործվի գաղութային լուծը թոթափած պետությունների կողմից, քանի որ նրանք մոտիկից համոզվում են, որ միայն ազգային հարցի լուծման հիմքի վրա է հնարավոր ինտերնացիոնալիստական արտաքին քաղաքականություն վարելը» (էջ 297)։*

*Ժողովածուն, որը լավ նվեր է ՍՍՀՄ կազմավորման 60-ամյա հոբելյանին, արժեքավոր ներդրում է մեր երկրում ազգային հարցի լուծման և նրա միջազգային նշանակության գիտական մեկնաբանման ասպարեզում։*

КԱՐԻՆԵ ՍԱՄՎԵԼՅԱՆ

---




**Վերստուգող սրբագրիչ՝ Մ. Բ. ՑԱՅԼՈՅԱՆ**

**Թողարկիչ՝ Մ. Գ. ԲԱՅՆԻԿՅԱՆ**

Адрес редакции: 375023, Ереван—23, пр. Орджоникидзе 2.

Խմբագրության հասցեն՝ **375023, Երևան—23, Օրջոնիկիձեի պողոտա № 2:** Հեռախոսներ՝ գլխավոր խմբագրի տեղակալ՝ 52—99—06, պատասխանատու քարտուղար՝ 52—99—22, մարքս-լենինյան տեսության պրոպագանդայի բաժին՝ 52—05—58, կուսակցական կյանք բաժին՝ 52—25—43, էկոնոմիկայի բաժին՝ 52—57—56, գիտության և կուլտուրայի բաժին՝ 52—99—34, խմբագրության վարիչ՝ 52—99—36:

*Հանձնված է շարվածքի՝ 20.09.82 թ.։ Ստորագրված է տպագրության՝ 21.10.82 թ.։ ՎՖ 06267։ Ֆորմատ՝ 70×108 1/16։ Տպագրություն՝ բարձր։ 8,4 պայմանական տպ. մամ., 9,8 հրատ. մամ.։ Տպաքանակ՝ 15.232։ Պատվեր՝ 21/53։*

*ՀԿԿ Կենտկոմի հրատարակչության տպարան, Երևան—23, Օրջոնիկիձեի պող. № 2։*

Типография издательства ЦК КП Армении.
Ереван-23, пр. Орджоникидзе, 2.